ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺԹ.

# ՏՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ

ԵՒ

# ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

ՅԱԿՈԲ ՄԱՆԱՆԴԵԱՆ

ՊՐՈՖ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ

ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1928

# ՅՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ

ԵՒ

# ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ճժթ.

# ՑՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ
ԵՒ
# ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ


ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1928

# ՅՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ

ԵՒ

# ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

---

ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ
**ՅԱԿՈԲ ՄԱՆԱՆԴԵԱՆ**
ՊՐՈՖ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1928

# ՅՈՒՆԱԲԱՆ ԴՊՐՈՑԸ

ԵՒ

# ՆՐԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

---

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

§ 1. **Յունաբան դպրոցի ու լեզուի խնդիրը մութ ու խրթին մի առեղծուած է։** — Մեր հին մատենագրութեան մութ ու խրթին առեղծուածն է կազմում յունաբան դպրոցի ու լեզուի ծագման եւ զարգացման խնդիրը։

Մինչեւ այժմ, չնայած բանասէրների գործ դրած բոլոր ջանքերին, անհնար է եղել գէթ մօտաւորապէս որոշել, թէ երբ, որտեղ եւ ինչպիսի պայմաններում ծնունդ է առել ու հետզհետէ կազմակերպուել յունաբան ուղղութիւնը եւ լեզուն, որն իր յատուկ ու բնորոշ տեղն ունի հայոց հին մատենագրութեան մէջ։

Հայ մատենագրական աւանդութիւնը, որին երկար ժամանակ անվերապահօրէն հետեւում էր հայ բանասիրութիւնը, արտաքին գրոց յունաբան թարգմանութիւններն ու մեկնութիւնները վերագրում էր Դաւիթ Անյաղթ հայ փի-

լիսոփային, մասամբ նրա ընկերակիցներին, ընդունելով նրանց հինգերորդ դարի հեղինակներ, Սահակ-Մեսրոպի աշակերտներ։

Այդ աւանդութիւնը, ինչպէս ցոյց ենք տուել «Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ» մեր աշխատութեան մէջ[1], անհիմն ու անվաւեր մի առասպել է, յետագայ դարերում յերիւրուած։

«Արտաքին գրոց», այն է՝ իմաստասիրական, քերականական, ճարտասանական եւ այլ նման երկերի բովանդակութիւնը հայագէտ հմուտ բանասէրներն անգամ դժուար կարող են հասկանալ առանց այդ ուսմունքների մօտ ծանօթութեան, յունարէն լեզուի օգնութեան եւ մասնագիտական յարատեւ հետախուզման։ Այդ երկերի յունաբան խրթին լեզուն այնքան արուեստական ու արտասովոր է, որ անմատչելի ու անհասկանալի է անգամ վարժ ու հմուտ գրաբարագէտների համար։ Այդ է գուցէ գլխաւոր պատճառը, որ շատ քիչերն են ձեռնամուխ եղել հետազօտելու այս երկերը եւ սրանց վերաբերեալ բանասիրական ու լեզուական մթին հարցերը։ Հայ բանասիրութիւնը զբաղուել է գրեթէ բացառապէս ոսկեդարեան անուանուած մատենագրական երկերի քննութեամբ եւ միանգամայն աչքաթող արել յունաբան ուղղութեան, լեզուի եւ «արտաքին գրոց» ուսումնասիրութիւնը։

Այդ ուսումնասիրութիւնը սակայն նախա-

1 Վաղարշապատ 1904, արտատպ. «Արարատ» ամսագրից, 1904, Փետր., Յունիս, Յուլիս։

պայմանն է կազմում մեր հին մատենագրութեան ամենահիմնական խնդիրների պարզաբանման։ Բացի այդ՝ յունաբան ուղղութիւնն ու "արտաքին գրոց„ ուսմունքը կարօտ են ամենալուրջ ուշադրութեան նաեւ իրանց ուրոյն բովանդակութեան տեսակէտից, որովհետեւ նրանք, լինելով առանձնայատուկ մի երեւոյթ մեր հնագոյն մատենագրութեան, այնուհետեւ դարեր շարունակ մեծապէս ազդել են թէ հայ մտքի եւ թէ ոգեկան մշակոյթի վրայ։

§ 2. **Յունաբան ուղղութեան ընդհանուր բնորոշումը։** — Արդ՝ տեսնենք, թէ որոնք են յունաբան ուղղութեան առանձնայատկութիւնները, նրա դերն եւ նշանակութիւնը հայոց մատենագրութեան մէջ։

Յունաբան ուղղութիւնը, նախ եւ առաջ, այն մեծ յեղաշրջումն է հին հայոց մատենագրութեան մէջ, որը հիմնայատակ է անում ու յեղափոխում թէ հայ գրական լեզուն, ոճը, գրելու եղանակն ու սովորութիւնը, եւ թէ հեղինակների գաղափարական ու գիտական պաշարն ու աշխարհահայեացքը։ Վեցերորդ դարից սկսած՝ հայ մատենագիրներից շատերը, հմուտ ու քաջ ծանօթ լինելով քերդողական, քերականական, ճարտասանական եւ իմաստասիրական "արուեստներին„՝ կոչւում են հռետոր, փիլիսոփայ կամ քերդող, որ յունարէն ποιήτης բառի թարգմանութիւնն է։

"Քերդող„ մակդիրը հանդիպում է արդէն վեցերորդ դարի վերջում։ "Փառաւորելոց տե-

րանց Վրթանիսի տերանց Նուիրակի եւ վարդապետի Քչկան որդւոյ, ի Սորմենայ սարատելառէ եւ Հայոց զաւրավարէ„ Թղթում կաթողիկոսական տեղապահ Վրթանէսն անուանում է "քերթող„: "Զի եթէ չէր իշխան, որպէս դրեցէքն, տեղապահդ ձեր եկեղեցւոյդ առանց աթոռակցաց իւրոց ասել ընդ մեզ եւ կամ լսել, եւ կամ որ ասէքդ քերթող, Նստեալ ի Դունայ, աւերածին Հաւատոյդ Նոր կարապետդ, եւ յառաջընթաց Նեռին, պաճուճեալ սնափառութեամբ ի մէջ տխմար եւ մոլամոլար մարդկան, եւ ցուցանէ զանձն իւր թէ են իսկ իմ վարդապետութիւն, ապա պարտ է....„ եւն (Գիրք Թղթոց, էջ 90):

Ղազար Փարպեցին յիշում է Մովսէս "փիլիսոփոս„ին: Ստեփանոս Ասողիկը "փիլիսոփայ„ է անուանում Քրիստափոր կաթողիկոսին, իսկ Եզրաս Անգեղացուն համարում է "աշակերտ ճարտասանին Մովսիսի եպիսկոպոսի Բագրեւանդ գաւառի„ եւ ասում, որ նա "զդասս ճարտասանից բազմացուցանէր„ (Պատմ. տիեզեր., Ս. Պետերբուրգ 1885, էջ 81, 82):

Քերթողները եւ իմաստասէրներն են եղել, ինչպէս յայտնի է, այդ ժամանակուայ հեղինակաւոր գիտնականները: Վեցերորդ դարի կրօնական վէճերի ժամանակ սրանք են, գլխաւորապէս, հիմնաւորել ու պատճառաբանել վիճելի հարցերը եւ հանդէս եկել եկեղեցական ժողովներում հակառակորդների դէմ: Սմբատ Վրկան մարզպանը վրաց Կիւրիոն կաթողիկոսին ուղղուած իր թղթում գրում է.

«Կամէաք եպիսկոպոսունս հանդերձ քերդողաւք արձակել, զկիրթսն գիտել զչարութիւն հերձուածոց, որ զձեզ ի վերայ հասուցանէին։ Բայց ապա առ ժամս բաւական համարեցաք ի ձեռն աշատ արանցդ, նախ թղթով զկամս ձեր գիտել» (Գիրք Թղթոց, էջ 169)։

Եւ յիրաւի, քրիստոնէութեան հելլենացման պատճառով՝ անկարելի էր հասկանալ կրօնա-դաւանաբանական խնդիրների ու վէճերի իմաստն ու նրբութիւնները առանց ժամանակակից հելլէն գիտութեան ու իմաստասիրութեան վարժ ծանօթութեան։

Յունաբան հայ դպրոցն էր, որ այդ հմտութիւնը պատրաստում ու տարածում էր հայ երկրում։

§ 3. «Արտաքին Գրոց» Թարգմանութիւնները եւ նրանց ազդեցութիւնը հայոց հին մատենագրութեան, լեզուի, ինչ եւ քաղաքակրթութեան վրայ։ — Բովանդակութեան կողմից հայ մատենագրութիւնը յունաբան շրջանում հարստանում է բազմաթիւ թարգմանութիւններով յունարէնից՝ ոչ միայն կրօնական երկերի, այլ եւ ոչ կրօնական, որոնց մեծագոյն մասը յայտնի են «արտաքինք», «արտաքին գրեանք» եւ «գիրք արտաքնոց իմաստասիրաց» անունների տակ։ Յունաբան այս շրջանում միայն հայ միտքը ծանօթանում է հելլենական — հեթանոս գիտութիւնների զանազան ճիւղերի հետ եւ Արիստոտելի տրամաբանական երկերի ու նորպղատոնական փիլիսոփայութեան ուսումնասիրութեամբ վարժւում է

վերացողական մտածողութեան։ Բացի Արիստոտելի երկերից ու մեկնութիւններից՝ նոյն այս շրջանում թարգմանուած են "Պիտոյից գիրքը", Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը, Նոննոսի "Ժողովարանք պատմութեանց առասպելացն" եւ ուրիշ երկեր հելլենական աշխարհիկ գրականութիւնից։

Թարգմանութիւնների մի մասը կատարուած է տառացի բառ առ բառ փոխադրութեան միջոցով, որը վեցերորդ դարում գործածական է եղել Բիւզանդիայում։ Ինչպէս յայտնի է, նոյն այդ եղանակով թարգմանուած է յունարէնի Յուստինիան կայսր օրէնքների ժողովածուն։ Ըստ երեւոյթին, նիւթական տառացի փոխադրութեան եղանակը յատուկ պահանջ է եղել այնպիսի հռչակաւոր երկերի համար, որոնք բառ առ բառ քննութեան են ենթարկուել եւ մեկնուել ու աւանդուել դպրոցներում։

Հայոց մատենագրութեան մէջ թարգմանութեանց այդ շարքին պատկանում են ամէնից առաջ "Պիտոյից գրքի" ասութիւնները, Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը, Պորփիւրի Ներածութիւնը եւ Արիստոտելի Ստորոգութիւնքն ու Յաղագս մեկնութեան գրուածքը։

Սոյն երկերի տառացի փոխադրութեամբ կազմուում են մեքենայօրէն ու արուեստաբար բազմաթիւ նոր բառեր ու նորաձեւ բառակազմութիւններ, գլխաւորապէս, վերացական գաղափարների եւ իմաստասիրական ու գիտական եզրերի համար, ինչպէս օրինակ՝ ապացոյց

= ἀπόδειξις, ենթակայ = ὑποκείμενον, ներհական = ἐνάντιος, շարունակ = συνεχής, առասութիւն = προσηγορία, բաղկացական = συστατικός, բացատրութիւն = ἀπόδοσις, ընդունակ = διεκτικός եւն։

Բացի այդ ուրոյն բառակազմութիւններից, որոնցից շատերը հետզհետէ գործածական են դառնում հայերէնում, յունաբան շրջանի գրական լեզուն ունի նաեւ որոշ քերականական առանձնայատկութիւններ, միանգամայն խորթ ու օտար ոսկեդարեան մատենագրութեան, որ պէտք է վերագրել մասամբ յունարէնի ազդեցութեան, մասամբ լեզուի բնական զարգացման։

Վեցերորդ դարից սկսած հայ գրականութեան ոճի վրայ եւս մեծ ազդեցութիւն են ունեցել քերականական ու հռետորական դասագրքերը։ Որոշ հեղինակների նկատմամբ այդ ազդեցութիւնը պարզ երեւում է նրանց երկասիրութիւնների շարահիւսման եղանակի ու ձեւի վրայ։ Մ. Աբեղեանը իւր “Հայ ժողովրդական առասպելները„ (Վաղարշապատ 1901) աշխատութեան մէջ մատնացոյց է անում, որ Մովսէս Խորենացին Տիգրան Ա-ի ներբողը գրել է, հետեւելով “Հիւսումն Պիտոյից„ աղբիւրի ճարտասանական պահանջներին։ Նոյն “Պիտոյից գրքի„ հռետորական կանոններին հետեւել է նաեւ Խոսրովիկ Թարգմանիչն իր կրօնա-դաւանաբանական հակաճառութիւններում[1]։

---

[1] Տե՛ս Գ. Վարդ. Յովսէփեան, Դաւիթ Հարքացին եւ Պիտոյից Գիրքը. “Արարատ„ 1908, Փետր., էջ 209—210։

§ 4. Հելլենասէր ուղղութիւնը, որպէս հին աշխարհահայեցութեան ընդլայնման եւ աշխարհիկ գրականութեան զարգացման։ — Հելլենասէր ու յունաբան ուղղութիւնը Հայոց մատենագրութեան մէջ, ինչպէս շատ ուղիղ նկատել է ուսուցչապետ Ն. Մառը[1], ընդլայնելով Հայերի մտաւոր հորիզոնը, առաջ է բերել հետաքրքրութիւն ոչ միայն դէպի հին հեթանոսական աշխարհը, այլ եւ դէպի իրանց հնութիւնները, ժողովրդական առասպելները, եւ մեծ չափով նպաստել է նրանց ազգային գիտակցութեան ու քաղաքակրթութեան զարգացմանը։ Սակայն ստեղծագործական այս բեղմնաւոր աշխատանքի խաղաղ առաջադիմութեանն արգելք են հանդիսացել արաբական արշաւանքներն ու արհաւիրքները։

Թէեւ եօթներորդ դարի արաբական աւերիչ շրջանում անգամ Հայ մատենագրութիւնը յունաբան ուղղութեամբ շարունակւում էր, սակայն նա չէր ստանում այն թափն ու ոյժը, որ կարող էր ստանալ այլ խաղաղ պայմաններում։

Հելլենասէր ուղղութիւնը Հայ մատենագրութեան վրայ ունեցել է մեծ ազդեցութիւն նաեւ այն տեսակէտից, որ նա, ընդլայնելով Հայոց հնագոյն մատենագրութեան կրօնա-եկեղեցական շրջանակները, մեծ զարկ է տուել աշխարհիկ բանաստեղծական գրականութեան ծագման։ Թէեւ արաբական արհաւիրքների ու արտաքին աննպաստ պայմանների պատճառով

---

[1] Н. Марръ, Іоаннъ Петрицскій, грузинскій неоплатоникъ XI—XII вѣка, С.-Петербургъ 1909, էջ 12—18.

գեղարուեստական գրականութիւնը մեծ ծաւալ ու զարգացում չէ ստացել, սակայն հելլենասէր հին հայ մատենագրութեան մէջ գեղարուեստական թարգմանական ու ինքնուրոյն երկերի գոյութիւնն անտարակուսելի ու ակներեւ է։ Գրիգոր Մագիստրոսը “Առ վարդապետն Սարգիս„ գրած իր Նամակում[1] յիշում է “զկալիմաքոսի եւ զԱնդրօնիկեայն„ բանաստեղծական երկերի հայերէն թարգմանութիւնը։ “Գտեալ եմ, — գրում է Մագիստրոսը, — եւ զկալիմաքոսի եւ զԱնդրօնիկեայն ի հայ լեզու„։ Քերականի Անանուն մեկնիչը, որը, ինչպէս կը տեսնենք, Մովսէսի ու Դաւթի Հարցմունքներում յիշատակուած նրանց ընկերակից համարուած Պօղոսն է, ոչ միայն իր մեկնութեան մէջ յիշում է Դաւթի “քերթութիւնը„ Տիգրանի մասին, այլ եւ առաջ է բերում նրանից մի հատուած։ Մեկնաբանելով “զատաղն քաջոլորակի„, նա Դաւթի քերթութեան մասին հաղորդում է հետեւեալը. “Իսկ քաջոլորակի տաղ ասի Դաւթեան քերթութիւն (եւ) որ յաղագս Տիգրանայ, յորժամ երկար բառիւք եւ ոլորակաւք ի սկսմանէ մինչեւ յաւարտումն զմիտս առեալ բերիցէ, որպէս յորժամ ասէ.

“Եւ արդ ներգործող ի միտս երեւիւր առ
խորհուրդս փողարին
Մեծոգւոյ Տիգրանայ գեղանին Տիգրանուհի

---

1 Տե՛ս Կ. Կոստանեանց, Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Ալէքսանդրապօլ 1910, էջ 66։

իւր ներածեալ կողմաբաղ նաեւ ողջամիտ
աշխարհածուհի"[1],

§ 5. "Արտաքին կերպը բառագործութիւնը ու-
խորհուրդ հայերէնի մէջ եւ նրա ազդեցութիւն
յունաբանութիւնը հայոց լեզուի պատմական զարգացման
թեան համար։ — Յունաբան դպրոցի արտադրու-
թիւնների շարքում առանձնայատուկ տեղ են
բռնում Արիստոտելի իմաստասիրական երկերի
եւ նրանց մեկնութիւնների, նաեւ "Պիտոյից
գրքի„ ու Դիոնիսիոս Թրակացու քերականու-
թեան հայերէն թարգմանութիւնները։ Այս
երկերը դարեր շարունակ եղել են Հայաստա-
նում դպրոցական դասաւանդման առարկաներ
եւ սրանց լուսաբանութեանը, ինչպէս յայտնի
է, նուիրուած են բազմաթիւ մեկնութիւններ ու
լուծմունքներ, որոնք զանազան ժամանակներում
յօրինուած են եղել, իբրեւ դպրոցական ձեռ-
նարկներ։ Քերականական, ճարտասանական ու
Արիստոտելի իմաստասիրական երկերի յարա-
տեւ ու խոր ազդեցութիւնը համաշխարհային
մաքի, լեզուի ու մատենագրութեան վրայ հա-
մատարած մի երեւոյթ է եղել թէ Արեւմուտ-
քում եւ թէ Առաջաւոր Ասիայում։

Այն գիտական ու վերացական բառերի
պաշարը, որ գործածական է ու սովորական
այժմեան աշխարհաբար հայերէնում, ինչպէս եւ

---

1 Տես Ն. Ադոնց, Արուեստ Դիոնիսեայ քերականի,
Պետրոգ. 1915, էջ 128—129։

եւրոպական լեզուներում, ծագել է մասամբ վերոյիշեալ երկերի թարգմանութիւններից։

Յունաբան գրաբարը, համարելով ոսկեդարեանի համեմատութեամբ “ցեխադարեան„, չպէտք է այնու ամենայնիւ մոռանալ, որ այդ լեզուի գիտական քննութեամբ միայն կարող են պարզուել լեզուական մի շարք խնդիրներ, որ վերաբերւում են նրանից ծնունդ առած միջնադարեան եւ աշխարհաբար հայերէնին։ Յունաբան այդ լեզուի ուսումնասիրութեամբ է, որ հնարաւոր պիտի լինի լուսաբանել մեր լեզուի յաջորդական զարգացումը։ Գիտական այդպիսի ուսումնասիրութիւններ, դժբախտաբար, շատ քիչ կան, մինչդեռ դրանք են հիմք ծառայելու հայոց լեզուի պատմական քերականութեան՝ հայ լեզուագիտութեան յատուկ մի ճիւղի, որ դեռեւս գոյութիւն իսկ չունի։

Թէ որքան հետաքրքիր կարող են լինել եւ կարեւոր լեզուագիտական այդ աշխատութիւնները՝ ցոյց տանք մի օրինակով։

Հայերէնում կան բարդ բառեր, որոնք տարբեր եղանակով են բարդուած, ինչպէս՝ մայրաքաղաք եւ քաղաքամայր, բանաստեղծութիւն եւ ստեղծաբանութիւն, սիրագործ եւ գործասէր, սիրաբան եւ բանասէր, բանագովութիւն եւ գովաբանութիւն, վաճառաշահութիւն եւ շահավաճառութիւն եւն։ Մեծագոյն մասն այս բառերի յունաբան ծագում ունին։

Արդ՝ հարց է առաջ գալիս, թէ այդ բարդութիւններից որոնք են աւելի հարազատ հայոց

լեզուի քերականութեանն ու ոգուն։ Ահա մի հարց, որը հայոց լեզուի պատմական քերականութեան խնդիրներից մէկն է լինելու, բայց ուշադրութեան գրեթէ չէ առնուած։

Վերոյիշեալ օրինակներից “սիրագործ„ բարդութիւնը, որ գործ է ածուած Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ (էջ 325), ամենայն հաւանութեամբ, թարգմանութիւն է յունարէն φίλεργος բառի։ Յունաբան ուրիշ երկերում նոյն բառը, սովորաբար, թարգմանուած է “գործասէր„։ Շատ պարզ է, որ “գործասէր„-ն աւելի է համապատասխանում հայերէն լեզուի ոգուն, քան “սիրագործ„-ը։ Սակայն կան դէպքեր, երբ յունաբան բարդ բառերի հարազատութիւնն ու խորթութիւնն աւելի դժուար է լուծւում, քան վերեւ մատնանշուած դէպքում։ Օրինակ, “մայրաքաղաք„ բառը, որ թարգմանութիւն է յունարէն μητρόπολις բառի, այժմ միանգամայն հարազատ է հնչում մեր ականջին։ Բայց ուղիղ է արդեօք մեր այդ ներքին զգացումը եւ վստահութիւնը։ Քերականական ու լեզուաբանական տեսակէտից, ինձ թւում է, որ հայոց լեզուի ոգուն աւելի է համապատասխանում ոչ թէ սովորական դարձած “մայրաքաղաք„-ը, որն արդիւնք է յունաբան տառացի թարգմանութեան, այլ “քաղաքամայր„ բառը։

Յատուկ ուսումնասիրութեան նիւթ կարող է ծառայել յունաբան բարդ բառերի հենց այս կարեւոր խնդիրը, մանաւանդ, եթէ ի նկատի առնուեն Եւագր Պոնտացու երկերի հնագոյն

հայ թարգմանութիւնները, որ ունեն այդ տեսակէտից հետաքրքիր առանձնայատկութիւններ։

Թէ այս եւ թէ ուրիշ նման լեզուական խնդիրներ կարող են եւ պէտք է պարզուեն յունաբան հայերէնի ուսումնասիրութեամբ։

§ 6. **Յունաբան լեզուի առանձնայատկութիւնը, որպէս միջոց մատենագրական երկերի ժամանակագրական ու խմբային դասաւորման։** — Յայտնի է արդէն, որ յունաբան եւ ոսկեդարեան երկերը լեզուական ու քերականական տեսակէտից այնքան միմեանցից տարբեր են, որ առանց դժուարութեան զանազանւում ու բաժանւում են իրարից։

Այս հանգամանքը վաղուց ի վեր օգտագործուել է իբրեւ կարեւոր մի միջոց բանասիրական ու ժամանակագրական որոշ հետախուզումների ու հետեւութիւնների համար։

Ոսկեդարեան գրաբարի մանրազնին ուսումնասիրութիւնը ցոյց է տուել, որ այդ լեզուն, լինելով ըստ էութեան նոյնը, ըստ իր ոճի ու կերպի բաժանւում է այլ եւ այլ դասերի[1]։ Որքան եւ առանձին դէպքերում դժուար ու վիճելի լինի այդ խմբերի ու նրանց առանձնայատկութիւնների որոշումը, սակայն դասերի ու խմբաւորումների ընդհանուր փաստը միանգամայն հիմնաւոր է ու անժխտելի։

Յունական գրաբարը մինչեւ այժմ դեռ

---

[1] Տե՛ս Հ. Ա. Այտընեան, Քնն. քեր., Հ. Թ. Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք եւ Ն. Բիւզանդացի, Կորիւն վարդապետ։

ուսումնասիրուած չէ եղել համեմատական ու նոյն մանրազնին եղանակով, ինչպէս ոսկեդարեանը։ Մինչդեռ, ինչպէս կը տեսնենք, այդ ուսումնասիրութիւնը կարեւոր է ոչ միայն լեզուական, այլ եւ բանասիրական եւ մատենագրական-պատմական տեսակէտից։

Քննութեան առնելով յունաբան հնագոյն երկերի լեզուն, քերականութիւնը եւ բովանդակութիւնը, կարելի է ոչ միայն բաժանել այդ լեզուն տարբեր խմբերի եւ պարզել նրա զարգացման ընթացքը, այլ եւ որոշել “արտաքին գրոց„ առանձին խմբերի թարգմանման ժամանակաշրջանները եւ նոյն իսկ առանձին երկերի թարգմանման ժամանակագրական յաջորդականութիւնը։

Յունաբան լեզուն իր բառամթերքով ու քերականական առանձնայատկութիւններով, ինչպէս կը տեսնենք, մի եւ նոյնը չէ եղել “արտաքին գրոց„ զանազան խմբերում, այլ նա կազմուել է աստիճանաբար ու յաջորդաբար, հետզհետէ կրել է զգալի փոփոխութիւններ եւ ունեցել իր զարգացման յատուկ ընթացքը։

Յունաբան հնագոյն թարգմանութիւններում լեզուական խմբաւորումները շատ աւելի որոշ ու ակներեւ են, քան ոսկեդարեան գրաբարում, որովհետեւ հիմնուած են ոչ թէ “ոճի ու կերպի„, այլ, գլխաւորապէս, քերականութեան ու արուեստական բառակազմութեան բացայայտ տարբերութիւնների վրայ։

Համեմատական ուսումնասիրութեան եղա-

նակով երեւան են գալիս միանգամայն անյայտ նոր փաստեր, որոնք հիմնովին յեղաշրջում են աւանդական հին կարծիքները յունաբան թարգմանութիւնների մասին։ Պարզւում է, օրինակ, որ Դաւիթ Անյաղթին վերագրուած իմաստասիրական մեկնութիւնները ոչ միայն բոլորն էլ թարգմանութիւն են յունարէնից, այլ եւ տարբեր ուղղութեան եւ տարբեր հեղինակների ու թարգմանների գործ են եւ ծագել են դաւանաբանական վէճերի ժամանակ կրօնական տարբեր միջավայրերում։ Մի մասը նրանցից թարգմանուած են միաբնակ հայերի, իսկ միւս մասը՝ երկաբնակ հայերի միջավայրում։

Լուսաբանւում են ուրեմն թէ յունաբան դպրոցի ծագման ու զարգացման մութ ու խրթին խնդիրը եւ թէ վեցերորդ ու եօթերորդ դարերի գրական երկերի ժամանակագրութիւնը, որ մինչեւ այժմ եղել են անլուծելի մի առեղծուած։ Եթէ նոյն այս ուղղութեամբ, որին հետեւել ենք մենք, լինեն նոր հետազօտութիւններ, թւում է ինձ, որ վերջնականապէս կը պարզուի նաեւ վեցերորդ ու եօթերորդ դարերի կրօնա-եկեղեցական մատենագրութեան զարգացման ընթացքը եւ մեր մատենագրութեան պատմութիւնը կը դրուի վերջապէս հաստատուն հիմքերի վրայ։

§ 7. “Արտաքին գրոց„ վերաբերեալ առաջինկայ ուսումնասիրութեան բովանդակութիւնը եւ նպատակը։ — “Արտաքին գրոց„ վերաբերեալ առաջինկայ իմ ուսումնասիրութիւնը, որ լոյս տեսաւ

նախ "Հանդէս Ամսօրեայ„ի էջերում, բաժանուած է լինելու երկու գլխաւոր մասերի՝

ա. Դաւիթ Անյաղթին ու Էլիասին վերագրուած մեկնութիւնների հեղինակները եւ

բ. Յունաբան հնագոյն թարգմանութիւնների երեք տարբեր շրջանները։

Աշխատութեանս կցուած է լինելու իբրեւ յաւելուած՝

գ. Էջմիածնի մատենադարանի իմաստասիրական հնագոյն ձեռագիրների ցուցակը։

Ցուցակի հրատարակութիւնը կարեւոր համարեցի, որովհետեւ ուսումնասիրութեանս հիմք են ծառայել յաճախ ոչ թէ Դաւթի Երկերի Վենետիկում լոյս տեսած բնագիրը, այլ Էջմիածնի մատենադարանի հնագոյն ձեռագիրները։ Վենետիկի հրատարակութիւնը հնագոյն այդ ձեռագիրների համեմատութեամբ ունի պակաս մասեր եւ որոշ տարբերութիւններ։

Ուսումնասիրութեանս առաջին մասը, որ վերաբերւում է իմաստասիրական մեկնութիւնների հեղինակների որոշմանը, կարեւոր է, գլխաւորապէս, բիւզանդական մատենագրութեան պատմութեան համար։ Հեղինակների որոշման խնդրում հայերէն մեկնութիւնների ուսումնասիրութեամբ ստացւում են եզրակացութիւններ, որոնք հիմնական մի քանի կէտերում տարբերւում են տիրող կարծիքներից, որ ընդունելութիւն են գտած փիլիսոփայութեան պատմութեան մէջ։

Ուսումնասիրութեանս երկրորդ՝ աւելի ընդարձակ ու հիմնական մասը՝ վերաբերւում է

թէ այդ մեկնութիւնների եւ թէ յունաբան հնագոյն այլ թարգմանութիւնների ժամանակագրութեանը եւ կարեւոր է առանձնապէս հայոց մատենագրութեան պատմութեան համար։ Այս մասը, յոյս ունեմ, որ իւր ուրոյն բովանդակութեամբ եւ իւր բազմաթիւ ուշագրաւ ու անակնկալ եզրակացութիւններով՝ նոր ընթացք ու նոր ուղղութիւն պիտի տայ յունաբան մատենագրութեանը վերաբերեալ լեզուագիտական ու բանասիրական յետագայ ուսումնասիրութիւններին։

Ուսումնասիրութեանս այս երկրորդ մասի մէջ բացի Արիստոտելի երկերի ու նրանց վերաբերեալ հնագոյն մեկնութիւնների թարգմանութիւններից, քննութեան են առնուած նաեւ „արտաքին գրոց" միւս թարգմանութիւնների ու երկերի մեծագոյն մասը՝ Դիոնիսիոս Թրակացու քերականութեան թարգմանութիւնը, նոյն քերականութեան հնագոյն մեկնութիւնները, Փիլոնը, Պիտոյից Գիրքը եւ Նոննոսը, իսկ կրօնական բովանդակութեամբ երկերից՝ Իրենէոսը, Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը եւ Գիրք Թղթոցի յունաբան հնագոյն թղթերը։

Եթէ աշխատութեանս հիմնական սկզբունքները եւ եզրակացութիւնները հաւանութիւն գտնեն, թւում է ինձ, որ դժուար չպիտի լինի որոշել այնուհետեւ նաեւ կրօնական եւ այլ բովանդակութեամբ յունաբան միւս հնագոյն թարգմանութիւնների խմբակցութիւնը եւ ժամանակը։ Դրանք եւս, իմ կարծիքով, ինչպէս

Իրենէոսի ու Տիմոթէոս Կուզի թարգմանութիւնները եւ Մովսէս քերթողահօր ու Յովհաննու Եպիսկոպոսապետին վերագրուած թղթերը, լեզուական իրանց առանձնայատկութիւններով միանալու են, հաւանաբար, մեր մատնացոյց արած յունաբան երեք խմբերից որեւէ մէկի հետ, որոնց ժամանակը որոշուած է սոյն ուսումնասիրութեան մէջ։

Ուսումնասիրութեանս մէջ կան կէտեր, որոնց լուսաբանութեան համար հարկաւոր էր ձեռքի տակ ունենալ գրքեր եւ հրատարակութիւններ, որ, դժբախտաբար, ինձ մատչելի չեն եղել։ Այդ կէտերը, յոյս ունեմ, կ'աշխատեն պարզել Եւրոպայում գտնուող բանասէրները, որոնք հնարաւորութիւն ունեն օգտուելու եւրոպական հարուստ գրադարաններից։

## Դաւիթ Անյաղթին ու Եղիասին վերագրուած մեկնութիւնների հեղինակները։

§ 8. Արիստոտէլի Իմաստասիրական երկերի, Պորփիւրի Ներածութեան եւ նրանց վերաբերեալ մեկնութիւնների հայերէն թարգմանութիւնները։ — Արիստոտէլի կամ նրան ընծայուած երկերից թարգմանուած են հայերէն եւ հրատարակուած են Վենետիկում[1].

---

1 Կորիւն վարդապետի, Մամբրէի վերծանողի եւ Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք, Վենետիկ 1833։

ա. Ստորոգութիւնք (κατηγορίαι), էջ 359—408։

բ. Յաղագս մեկնութեան (περὶ ἑρμηνείας), էջ 461—486։

գ. Պատմութիւն յաղագս աշխարհի (περὶ κόσμου), էջ 603—628։

դ. Յաղագս առաքինութեանց (περὶ ἀρετῶν καὶ κακιῶν), էջ 629—635։

Պորփիւրի երկերից թարգմանուած է՝

ե. Ներածութիւն (εἰσαγωγή), էջ 227—250, որը նորպղատոնական դպրոցներում կազմում էր Ὄργανονի անհրաժեշտ ու անանջատ մասը, իբրեւ "Ներածութիւն ի Ստորոգութիւնսն Արիստոտելի"[1]։

Բացի այս բնագրերից թարգմանուած են նաեւ վերոյիշեալ երկերին վերաբերուող հետեւեալ մեկնութիւնները։

ա. Վերլուծութիւն Ներածութեան Պորփիւրի՝ Դաւթի փիլիսոփայի Ներգինացւոյ (Վենետիկ 1833, էջ 251—356)։

Այս թարգմանութեան յունարէն բնագիրը պահպանուել է եւ հրատարակուած է՝ տես Davidis Prolegomena et in Porphyrii Isagogen commentarium, edidit Adolfus Busse, Berlin 1904, էջ 80—219. յունարէն

---

[1] Վերոյիշեալ հինգ երկերի հայերէն թարգմանութիւնները Ֆր. Կոնիբերը համեմատել է յունարէն բնագրերի հետ։ Բացի այդ նա Ստորոգութեանց եւ Յաղագս մեկնութեան հայերէն բնագրերը նորից հրատարակել է 8 ձեռագրերի համեմատութեամբ, տես Anecdota Oxoniensia, Oxford 1892:

վերնագիրն է նրա՝ *Προλεγόμενα σὺν θεῷ τῆς Πορφυρίου εἰσαγωγῆς ἀπὸ φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου καὶ θεόφρονος φιλοσόφου*[1].

բ. Ստորոգութիւնք Արիստոտէլի թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ, Վենետիկ 1833, էջ 409—458, յունարէն բնագիրը գտնուած չէ։

գ. Պերիարմենիաս Արիստոտէլի թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ, Վենետիկ 1833, էջ 487—553, յունարէն բնագիրը գտնուած չէ։

դ. Դաւթի Անյաղթ փիլիսոփայի մեկնութիւն չորեքտասան գլխոց Արիստոտէլի ի Վերլուծականն, անդ էջ 557—598, յունարէն բնագիրը գտնուած չէ։

ե. Մեկնութիւն Ստորոգութեանց Արիստոտէլի ընծայեալ Էլիասի իմաստասիրի, Ս. Պետերբուրգ 1911, էջ 1—137։

Այս թարգմանութեան յունարէն բնագիրը պահպանուել է եւ հրատարակուած է՝ տես Eliae in Porphyrii Isagogen et Aristotelis categorias commentaria, edidit A. Busse, Berolini 1900, էջ 107—255. յունարէն վերնագիրն է՝ *Ἐξήγησις σὺν θεῷ τῶν δέκα κατηγοριῶν τῆς φιλοσοφίας ἀπὸ φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου φιλοσόφου*: Յունարէն բոլոր ձեռագրերում Ստորոգութեանց այս մեկնութիւնը վերագրուած է Դաւիթ փիլիսոփային։

---

[1] Էջ 80—94, իսկ էջ 95—218 ունի վերնագիր՝ *Σχόλια σὺν θεῷ εἰς τὴν εἰσαγωγὴν Πορφυρίου ἀπὸ φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου καὶ θεόφρονος φιλοσόφου.*

Սակայն յունարէն բնագրի հրատարակիչն Ադոլֆ Բուսսէն, հիմնուելով որոշ փաստական տուեալների ու դիտողութիւնների վրայ, հաւանական է համարել, որ այս մեկնութեան հեղինակը ոչ թէ Դաւիթն է, այլ նրա ուսուցիչ Էլիասը։

Զ. Հատուած ինչ մեկնութեան Ստորոգութեանցն Արիստոտէլի, տե՛ս Էլիասի Ստորոգութեանց մեկնութեան իմ հրատարակութեան վերջում, Ս. Պետերբուրգ 1911, էջ 140—149. յունարէն բնագիրը գտնուած չէ։

Բացի վերոյիշեալ վեց մեկնութիւններից թարգմանուած է նաեւ՝

Է. Դաւիթ փիլիսոփայի *Προλεγόμενα τῆς φιλοσοφίας* երկը, որի հայերէն վերնագիրն է ըստ Վենետկի հրատարակութեան (1833, էջ 120—216)՝ «Դաւթի եռամեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ առարկութեանցն չորից Պիհռոնի իմաստակի եւ սահմանի եւ տրամատութիւնք իմաստասիրութեան»։ Հնագոյն հայ ձեռագիրների վերնագիրը մօտաւորապէս համապատասխան է յունարէնին՝ «Դաւթի փիլիսոփայի ներգինացւոյ՝ յառաջաբանք սահմանաց իմաստասիրութեան[1]»։

Այն թարգմանութեան յունարէն բնագիրը հրատարակուած է՝ տե՛ս Davidis Prolegomena et in Porphyrii Isagogen commentarium, edidit Adolfus Busse, Berlin 1904, էջ 1—79. յունարէն վերնագիրն է՝ *Τὰ προ-*

[1] Տե՛ս Էջմիածնի մատենադարանի Թ. 1889 եւ 1890 ձեռագրերը (— Կարին. Ցուցակ. Թ. 1847 եւ 1848)։

λεγόμενα τῆς φιλοσοφίας ἀπὸ φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου καὶ θεόφρονος φιλοσόφου։

Դաւիթ Անյաղթին վերագրուած են նաեւ մի քանի իմաստասիրական-մեկնական մանր հատուածներ, ինչպէս՝

ա. Նորին Դաւթի փիլիսոփայի առածք հինգ, Վենետիկ 1833, էջ 217—222։

բ. Նորին վասն բաժանման, անդ, էջ 223—224։

գ. Ընդ այսոսիկ եւ առաջիկայ բան իմաստնոյս, “Ամենայն չար տանջելի„ եւն, անդ, էջ 215—216։

Վերեւ յիշուած բոլոր մեկնութիւնները, ինչպէս ցոյց եմ տուել “Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ„ հետազօտութեանս մէջ[1], թարգմանուած են յունարէնից։ Այդ Մեկնութիւններից Նորպղատոնական Դաւիթ մեկնիչի աշխատութիւններ են “Սահմանքը„ կամ աւելի ճիշտ՝ “Յառաջաբանքը„ եւ Պորփիւրի Ներածութեան վերլուծութիւնը, իսկ միւս մեկնութիւնների հեղինակներն անորոշ են ու վիճելի, ուստի եւ այդ խնդիրը կարօտ է ուսումնասիրութեան։

§ 9. Դաւիթ Անյաղթի — Նրա երկերի մասին եղած նախկին ուսումնասիրութիւնները։ — “Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ„ աշխատութեանս մէջ յաջողուել էր ստանալ հետեւեալ եզրակացութիւնները, որ միանգամայն

---

[1] Վաղարշապատ 1904, տպարան. “Արարատ„ ամսագրից 1904, Փետրուար, Յունիս, Յուլիս։

տարբեր էին տիրող ենթադրութիւններից Դաւիթ Անյաղթի մասին.

ա. Սահմանք իմաստասիրութեան երկը, Պորփիւրի Ներածութեան մեկնութիւնը եւ Արիստոտելի Վերլուծականքի մեկնութեան հատուածը[1] միեւնոյն հեղինակի՝ Դաւիթ փիլիսոփայի գործ են, իսկ Արիստոտելի "Ցաղագս մեկնութեան„ եւ "Ստորոգութեանց„ հայերէն մեկնութիւնները Դաւթինը չեն.

բ. Նորպղատոնական Դաւիթ մեկնիչը հայոց մատենագրութեան մէջ շփոթուած է Դաւիթ Հարքացու հետ, ինչպէս եւ Բիւզանդականում՝ Niketas David Paphlagonի հետ.

գ. Սահմանք իմաստասիրութեան երկը եւ Ներածութեան ու Վերլուծականքի մեկնութիւնները թարգմանուած են յունարէնից.

դ. Նորպղատոնական Դաւիթ մեկնիչը Աղեքսանդրիայում ուսած Զ. դարի մատենագիր է.

ե. Նորպղատոնական Դաւիթ մեկնիչը քրիստոնեայ է.

զ. Նոննոսին վերագրուած առասպելաբանական մեկնութիւնների հեղինակը Դաւիթ մեկնիչը չէ։

Այս եզրակացութիւնները, ինչպէս ինձ համոզել են յետադայ իմ հետազօտութիւնները, ընդհանուր առմամբ, ուղիղ պիտի լինեն, բացի մի քանի կէտերից, որոնց մասին առանձին խօսք կը լինի ներքեւում։

---

1 Վերլուծականքի մեկնութեան հատուածը կարող է Դաւթինը չլինել. տես սոյն աշխատութեան § 22—24։

Դաւիթ Անյաղթի մասին այնուհետեւ լոյս էր տեսել Մ. Խոստիկեանի գերմաներէն աշխատութիւնը[1]։ Բոլոր գրեթէ վերոյիշեալ կէտերում Մ. Խոստիկեանի եզրակացութիւնները նոյնն են, ինչ որ իմ աշխատութեան մէջ։ Նա եւս Դաւթին համարում է կրտսեր Ոլիմպիոդորոսի աշակերտ, վեցերորդ դարի հեղինակ, կարծում է միայն, որ Դաւիթը, հաւանաբար, ոչ թէ քրիստոնեայ մեկնիչ է, այլ հեթանոս։ Ինչպէս յայտնի է, Ադ. Բուսէն Դաւթի քրիստոնեայ լինելը նոյնպէս հաւանական էր համարել, հիմնուելով յունարէն բնագրի որոշ հատուածների վրայ[2]։ Մ. Խոստիկեանը ենթադրում է, որ Դաւթի թէ յունարէն եւ թէ հայերէն բնագրում այդ հատուածները կարող են լինել յետագայ ժամանակների յաւելուածներ։ Դաւթի հեթանոս լինելու հաւանական մի նշանն նա համարում է նրա ներածութեան մեկնութեան մէջ՝ σὺν εὐμενείᾳ τοῦ χρείττονος, դարձուածքը (Busse, էջ 121, 21), որ հայերէնում թարգմանուած է “օգնականութեամբ լաւագունին„ (Վենետիկ 1833, էջ 281)։ Ընդունելով հանդերձ, որ “լաւագունին„ գործ է ածուած այստեղ Աստուծոյ փոխարէն Պղատոնի բարձրագոյն “Իդէայի„ իմաստով, թւում է ինձ այնու ամենայնիւ, որ դրանով ապացուցւում է միայն Դաւթի քրիստոնէու-

---

1 Dr. Missak Khostikian, David der Philosoph, Berner Studien zur Philosophie und ihrer Geschichte, Band LVIII, Bern 1907։

2 Տե՛ս A. Busse, Davidis Prolegomena եւն, էջ VI։

թեան Նորպղատոնական ու գնոստիկեան բնոյթը։ Դաւթի քրիստոնեայ լինելու նշանները, որ մատնացոյց են արուած Ագ. Բուսէի եւ իմ աշխատութիւններում, դժուար է առանց լուրջ հիմքերի մերժել, համարելով բոլորը միայն օտար գրչի յաւելուածներ։ Մ. Խոստիկեանի առարկութիւններն այս կէտում, իմ կարծիքով, համոզիչ չեն։

§ 10. Էջմիածնի մատենադարանի թիւ 1939 ձեռագրում գտնուած Ստորոգութեանց նոր մեկնութիւնները։ — Վերոյիշեալ աշխատութիւնս հրատարակելուց յետոյ, Էջմիածնի մատենադարանի հնագոյն ձեռագիրներն ուսումնասիրելիս՝ անսպասելի կերպով գտնուեց Արիստոտելի Ստորոգութեանց մի նոր մեկնութիւն, որն անծանօթ ու կարեւոր մի երկ էր յունաբան հնագոյն դպրոցի։

Այս մեկնութիւնը պահպանուել է Էջմիածնի թիւ 1939 ձեռագրում (= Կարին. Ցուցակ, թ. 1897)։ Նոյն ձեռագիրը պարունակում է նաեւ հետաքրքիր մի հատուած Արիստոտելի Ստորոգութեանց մի այլ մեկնութեան, որը համառօտ մի ծացուգ է ինչ որ անյայտ հին թարգմանութեան։

Նորագիւտ այս մեկնութիւնների քննութիւնից երեւաց, որ ընդարձակ մեկնութիւնը թարգմանութիւն է Ստորոգութեանց մեկնութեան յունարէն այն բնագրի, որը հրատարակել էր գերմանացի գիտնական Ադոլֆ Բուսէն, իբրեւ Էլիասս իմաստասիրի աշխատութիւն[1]։ Համառօտ

---

[1] Տե՛ս A. Busse, Eliae in Porphyrii Isagogen et Aristoteils Categorias commentaria, Berolini 1900, էջ 108–200։

հատուածի յունարէն բնագիրը, որքան ինձ յայտնի է, չկայ Արիստոտելի Ստորոգութեանց տպագիր մեկնութիւնների մէջ, որ հրատարակել է Բեռլինի կայսերական ակադեմիան։

Հայերէն բնագիրը թէ այդ հատուածի եւ թէ Իլիասին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեան լոյս է տեսել, ինչպէս վերեւ յիշուեց, 1911 թուին Պետրոգրադում գիտութեանց կայսերական ակադեմիայի հրատարակութեամբ[1]։

Իլիասին վերագրուած այդ մեկնութեան հայերէն թարգմանութեան բնագիրը սկզբից եւ վերջից թերի է, ուստի եւ նրա հայերէն վերնագիրը մնում է անորոշ։ Հայերէն հրատարակութեան մէջ վերնագիրը դրուած է յունարէն տպագրի վերնագրի համաձայն, որը սակայն, ինչպէս կը տեսնենք, ոչ թէ յունարէն ձեռագիրներից է քաղուած, այլ ենթադրական մի վերնագիր է, հիմնուած հրատարակչի, Ադոլֆ Բուսէի, բանասիրական հետախուզումների վրայ։

Հայերէն հրատարակութեան առաջաբանում ես արդէն մատնանիշ էի արել, որ Ա. Բուսէի ենթադրութիւնը Ստորոգութեանց մեկնութեան հեղինակի մասին չէ համաձայնում հայ մատենագրութեան մէջ պահպանուած վկայութիւնների հետ, որ, իմ կարծիքով, վերաբերւում են հենց նոյն այս մեկնութեան[2]։ Մատենա-

---

1 Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտելի ընծայեալ Իլիասի իմաստասիրի, էջ 1—140 եւ Հատուած ինչ մեկնութեան Ստորոգութեանցն Արիստոտելի, էջ 141—149։

2 Տես Մեկնութիւն Ստորոգութեանցն, էջ II եւ III։

գրական այդ վկայութիւններից եւ Ստորոգութեանց մեկնութեան հայերէն բնագրի քննութիւնից երեւում է, որ Ա. Բուսէի եզրակացութիւնները դժուար է ընդունել, իբրեւ վերջնական ու անվիճելի։ Այդ եզրակացութիւնները, որ հաւանական են համարուած Բիւզանդական մատենագրութեան, ինչպէս եւ փիլիսոփայութեան պատմութեան մէջ, կարօտ են, իմ կարծիքով, վերաքննութեան հայկական տուեալների օգնութեամբ։ Իսկ այս տուեալները, ինչպէս կը տեսնենք, հիմք կարող են ծառայել նոյն խնդրի մի նոր լուսաբանութեան եւ ուշագրաւ նոր դիտողութիւնների, որ ստորեւ առաջ ենք բերում։

§ 11. **Բուսէի կարծիքով Ստորոգութեանց մեկնութեան հեղինակը Դաւիթ Անյաղթը չէ։** — Բոլոր յունարէն ձեռագիրներ Էլիասին ընծայուած Արիստոտելի Ստորոգութեանց մեկնութեան հեղինակ համարում են Դաւիթ փիլիսոփային, ինչպէս այդ երեւում է ձեռագիրների վերնագրերից՝ «Ἐξήγησις σὺν θεῷ τῶν δεκα κατηγοριῶν τῆς φιλοσοφίας ἀπὸ φωνῆς Δαβὶδ τοῦ θεοφιλεστάτου φιλοσόφου»։

Ադոլֆ Բուսէն Էլիասի յունարէն բնագրի առաջաբանում փորձում է ապացուցանել, որ այդ մեկնութիւնը ոչ թէ Դաւթինն է, այլ Էլիասինն։ Յունարէն ձեռագիրների վերնագրերը սխալ ենթադրելով, Բուսէն ժխտում է Դաւթի հեղինակ լինելը հետեւեալ պատճառներով։

–. Դաւիթ Փիլիսոփան Պորփիւրի Ներածութեան Դ. պրակը վերջացնում է այս խօսքե-

րով՝ “Եւ գիտելի է՝ թէ ի բանական մասն իմաստասիրութեան վերաբերի առաջիկայ շարագրութիւնս. իսկ բանականն՝ եթէ մասն է իմաստասիրութեան եւ եթէ գործի՝ ի Ստորոգութիւնսն Արիստոտէլի ուսցուք„ (Վենետիկ 1833, էջ 263)։

Հակառակ Դաւթի փիլիսոփայի այս խոստման Էլիասին ընծայուած “Մեկնութիւն Ստորոգութեանցն„ երկում չենք գտնում այդ խնդրի քննութիւնը, ինչպէս պէտք էր սպասել ըստ վերոյիշեալ խոստման։

Ա. Բուսէի հրատարակած ու Էլիասին վերագրուած Պորփիւրի Ներածութեան մեկնութեան հեղինակը նոյնպէս խոստանում է ցոյց տալ, որ բանականը գործի է իմաստասիրութեան, բայց ոչ Ստորոգութեանց մեկնութեան մէջ, այլ Արիստոտէլի Վերլուծականքում՝ “δειχθήσεται γὰρ σὺν θεῷ ἐν τοῖς Ἀναλυτικοῖς ὅτι ἡ λογικὴ οὐ μέρος τῆς φιλοσοφίας, ἀλλ' ὄργανον„ (Eliae in Porphyrii Isagogen եւն, էջ 26)։

Բ. Դաւիթ փիլիսոփան Պորփիւրի Ներածութեան մեկնութեան մէջ ճեմականների մասին ասում է՝ “իսկ ճեմական կոչեցաւ Արիստոտէլ, վասն զի Պղատոնի տակաւին եւս կենդանի գոլով՝ ոչ իշխէր նստել եւ ուսուցանել, այլ ճեմէր. այլքն ասեն ոչ, այլ հակառակէր Պղատոնի. զի նա նստեալ գոլով՝ ինքն յոտն կայցէ։ Որ զայդ ասեն, սուտ ասեն. այլ եւ պատուէր զնա եւ պաշտէր. որպէս եւ ուրեմն բագին կանգնեաց, եւ մակագրեաց այսպէս. “Բագինս այս Պղատոնի, զոր կանգնեաց Արիստոտէլ առն՝ զոր չարք եւ

ու գովելոյ զնա արժանի են„ (Վենետիկ 1833, էջ 281)։

Իսկ Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութիւնը ճեմականների անուան ծագման մասին տալիս է բոլորովին տարբեր ու հակառակ բացատրութիւն. “Ճեմականք կոչեցան, ոչ եթէ ի ճեմել ինչ ուսուցանէին եւ ուսանէին, այլ վասն զի յաջորդեցին զպարապարանն Պղատոնի միջնորդութեամբ Սպեւսիպոսի„ (Մեկն. Ստորոգ., էջ 10)։

գ. Որ Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան հեղինակը Դաւիթ փիլիսոփան չէ, այդ ակնյայտնի երեւում է Դաւթի ու Նորագիւտ մեկնութեան նաեւ այն հատուածներից, որոնք նուիրուած են խորթ շարադրածութեանց խնդրի լուսաբանութեանը (տես “Դաւթի Անյաղթի, Վերլուծութիւն Ներածութեան Պորփիւրի„, էջ 252—253 եւ “Մեկնութիւն Ստորոգութեանցն„, էջ 37—38)։ Այս ընդարձակ հատուածների համեմատութիւնը, Բուսէի կարծիքով, պարզ ցոյց է տալիս, որ դրանք չեն կարող համարուել միեւնոյն հեղինակի բացատրութիւններ։

Ա. Բուսէի այս դիտողութիւնները, ինչպէս տեսնում ենք, միանգամայն հիմնաւոր են եւ ապացուցանում են, անտարակոյս, որ Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութիւնը Դաւթի աշխատութիւնը չէ։ Թէեւ յունարէն ձեռագիրների վերնագրերը վերագրում են այդ մեկնութիւնը Դաւիթ փիլիսոփային, սակայն այդ հանգամանքն այնքան էլ կարեւոր չէ, որովհետեւ այդպիսի շփոթումներ յունարէն ձեռագիրներում

*սովորական են եւ ուրիշ շատ դէպքերում, ինչպէս ցոյց է տուել Ա. Բուսէն։*

§ 12. **Ա. Բուսէի կարծիքով, Ներածութեան եւ Ստորոգութեանց վերլուծական մեկնութիւնների հեղինակ Էլիաս մեկնիչն է։** — Ա. Բուսէն "Eliae in Porphyrii Isagogen et Aristotelis Categorias commentaria„ *աշխատութեան առաջաբանում իր հրատարակած թէ Պորփիւրի Ներածութեան եւ թէ Ստորոգութեանց մեկնութիւնները վերագրում է Էլիասին, որին համարում է Ոլիմպիոդորոսի աշակերտ եւ վեցերորդ դարի մեկնիչ։*

*Պորփիւրի Ներածութեան մեկնութիւնն Էլիասին վերագրելու նրա գլխաւոր հիմքը կազմում է Փիլոպոնոսի վկայութիւնը։ Փիլոպոնոսը, յիշատակելով Էլիաս մեկնիչին, որպէս հեղինակ Պորփիւրի Ներածութեան մեկնութեան, քաղում է այդ մեկնութիւնից հետեւեալ հատուածը, որը գտնում է Ա. Բուսէի Էլիասին վերագրուած Ներածութեան մեկնութեան բնագրում.*

| Brand, p. 11ᵇ 37. | Elias, p. 52. |
|---|---|
| *Ἠλίας δὲ ὁ ἐξηγητὴς τῶν ε΄ φωνῶν ἑνὶ καὶ τῷ αὐτῷ ἀρκεῖται παραδείγματι, λέγων τὸν Ἀχιλλέα Πηλείδην μὲν δία τὸν προσεχῆ πατέρα τὸν Πηλέα, Αἰακίδην δὲ δία τὸν πόρρω Αἰακόν, καὶ Φθιώτην μὲν διὰ τὴν προσεχῆ πατρίδα τὴν Φθίαν, Θετταλὸν δὲ δία τὴν πόρρω πατρίδα τὴν Θετταλίαν.* | *ἡμεῖς δὲ ἑνὶ καὶ τῷ αὐτῷ ἀρκεσθῶμεν παραδείγματι ἰδοὺ γὰρ ὁ Ἀχιλλεὺς Πηλείδης μὲν δία τὸν προσεχῆ πατέρα τὸν Πηλέα, Αἰακίδης δὲ δία τὸν πόρρω τὸν Αἰακόν, καὶ Φθιώτης διὰ τὴν προσεχῆ πατρίδα τὴν Φθίαν, καὶ Θετταλὸς διὰ τὴν πόρρω πατρίδα τὴν Θετταλίαν.* |

Նոյն Ներածութեան մեկնութիւնից քա-
ղուած եւ Եղիասին վերագրուած նման հատուած-
ներ գտնւում են նաեւ յունարէն ձեռագիր-
ներում (տե՛ս A. Busse, Eliae in Porphyrii Isagogen եւն, էջ V եւ VI)։ Ա. Բուսէն, հիմ-
նուելով իր այդ ուշագրաւ ու ուղիղ դիտո-
ղութիւնների վրայ, հաստատուն ու անտարա-
կուսելի է համարում, որ Պորփիւրի Ներա-
ծութեան վերոյիշեալ մեկնութեան հեղինակն
Եղիասն է։

Ինչ վերաբերում է իր հրատարակած Ստո-
րոգութեանց մեկնութեանը, Բուսէն այդ մեկ-
նութիւնը եւս վերագրում է Եղիաս մեկնիչին, հա-
մարելով նրա բովանդակութիւնը, մեկնական
եղանակն ու մտքերը նման ու համապատասխան
Ներածութեան մեկնութեանը։ Իր այդ ենթա-
դրութիւնը նա փորձում է հիմնաւորել, մատնա-
ցոյց անելով Ստորոգութեանց մեկնութեան մէջ
Ներածութեան մեկնութիւնից առաջ բերուած
բառացի մի քաղուածք։

"Eundem autem auctorem, — ասում է Բուսէն իր հրատարակութեան առաջաբանում, — et Eliae in Isagogen commentarium et hunc in Categorias librum conscripsisse cum universo librorum consensu ex sententiarum ordine ac ratione dicendi conspicuo docemur tum illo illustri loco (p. 116, 27), qui ad verbum cum eo qui laudatur (p. 33, 3) concinit" (A. Busse, Eliae in Porphyrii Isagogen ect, p. VIII)։

Ա. Բուսէի մատնանիշ արած քաղուածքը հետեւեալն է[1].

Eliae in Porph. 33, 2.

“διὰ δὲ τὸ οἰκονομικὸν γέγραπται αὐτῷ ὁ Οἰκονομικὸς τὸ σύνταγμα, ἐν ᾧ φησιν ἐκ τεσσάρων σχέσεων συγκεκροτῆσθαι τὸν οἶκον, πατρὸς πρὸς τέκνα, ἀνδρὸς πρὸς γυναῖκα, δεσπότου πρὸς δούλους, εἰσιόντων πρὸς ἐξιόντα, ἵνα μήτε πλείονα τὰ εἰσιόντα τῶν ἐξιόντων (φειδωλία γὰρ τοῦτο καὶ ἀνελευθερία) μήτε πλείονα τὰ ἐξιόντα τῶν εἰσιόντων (ἀσωτία γὰρ τοῦτο), ἀλλ' ἐπίσης„.

Eliae in Categ. 116, 23.

“ἀλλὰ μὴν καὶ οἰκονομικὰ εἰσιν αὐτῷ γεγραμμένα βιβλία, ὡς τὸ Οἰκονομικὸν σύνταγμα καὶ Περὶ συμβιώσεως ἀνδρὸς καὶ γυναικός, ἐν ᾧ λέγει ἐκ τεσσάρων σχέσεων συγκεκροτῆσθαι τὸν εὖ ἔχοντα οἶκον, πατρὸς πρὸς τέκνα, ἀνδρὸς πρὸς γυναῖκα, δεσπότου πρὸς δούλους, εἰσιόντων πρὸς ἐξιόντα καὶ ὡς εἴρηται ἡμῖν ἐν τοῖς τῆς Πορφυρίου Εἰσαγωγῆς Προλεγομένοις„.

Ա. Բուսէի մատնանիշ արած Ստորոգութեանց մեկնութեան այս հատուածը Հայերէն թարգմանութեան մէջ չկայ. Հայերէնը չունի ոչ վերոյիշեալ քաղուածքը, ոչ էլ “ὡς ειρηται

---

[1] Համմատէ Նախ. Դաւ. Սահմ., էջ 208. “Վասն զի Արիստոտէլ գրեաց զտնտեսականն, յորում վասն բարուց ճառէ. եւ վասն տան՝ յորում վասն տնտեսականին ճառէ, յորում ասէ, թէ չորք են ընթացակիցք առ ի տան կարգաւորութիւն. Միաւորութիւն առն եւ կնոջ առ միմեանս. եւ տէր յորդւոց վերայ. եւ երկիւղ ի վերայ ծառայից. եւ չափաւորութիւն ելեւմտից. Վասն զի երկաքանչիւրոցն անչափութիւն յանցաւոր է, զի եթէ բազում են մուտք եւ դուզնաքեայ ելք, այնպիսին ընդ ագահս համարի. իսկ եթէ դուզնաքեայ մուտք եւ առաւել ելք, այնպիսին ընդ անառակս է„. Համմատէ նաեւ յունարէն բնագիրը Davidis Prolegomena Philosophiae. ed. A. Busse, էջ 74.

ἡμῖν ἐν τοῖς τῆς Πορφυρίου προλεγομένοις„ վկայութիւնը, այլ ունի միայն սոյն հատուածի առաջին տողերը. "Իսկ անաւրինականքն՝ որպէս ցնաւրինականք նորա գրեալ գիրք յետ անաւրինական շարակարգութեան, յորում վասն կենակցութեան առն եւ կնոջ. յորում ասէ ի չորից ունակութեանց զբարեկարգութիւն տան„ (Ստոր. Մեկն., էջ 16, 18—19)։

Ինչպէս երեւում է ὡς εἴρηται ἡμῖν խօսքերից. այդ հատուածը. հաւանաբար, ուսանող խմբագրողի խօսքերն են։ Հայերէն թարգմանութեան մէջ այդ հատուածի բացակայութիւնը կարելի է թերեւս բացատրել նրանով, որ հայերէնը գրեթէ ամբողջովին գրուած է "ի ձայնէ„ բուն մեկնիչի, նրա խօսքերով, եւ չունի ուսանող ունկնդրի յաւելումները։

Հայերէնի եւ յունարէն բնագրի խմբագրական այդ տարբերութիւնը երեւում է նաեւ հետեւեալ բաղդատութիւններից.

| *Ստորոգ. Մեկնութիւն.* | Eliae in Categor. |
| --- | --- |
| 1. Չ, 16. "Եւ բարւոք ասացաք արանց եւ ոչ առն„. | 108, 23. "*καὶ καλῶς εἶπεν 'ἀνδρῶν' καὶ οὐκ ἀνδρός*„. |
| 2. 2, 22. "Իսկ գիտնոց ասելով եւ զայդ բարւոք առաւելեցաք„։ | 108, 27. "*τὸ δὲ 'ἀστείων' καὶ αὐτὸ καλῶς πρόσκειται*„. |
| 3. 14, 2—3. "Այլ, ով Աղեքսանդրէ, ասեմք առ նա„։ | 115, 6. "*ἀλλ', ὦ 'Αλέξανδρε, ἔστιν εἰπεῖν πρὸς αὐτόν*„. |
| 4. 38, 24. "որպէս ասացաք„։ | 128, 25. "*ὡς εἴρηται*„. |

Ե. 40, 15–16. «Իսկ ես ասեմ, ձեր վարդապետս, մակագրեմ Ստորոգութիւնս»։

133, 24. «ἐγὼ δέ, φησὶν ὁ ἡμέτερος διδάσκαλος, ἐπιγράφω ταῖς κατηγορίαις».

Ստորոգութեանց մեկնութեան վերոյիշեալ յունարէն հատուածը, որ, ըստ երեւոյթին Ներածութեան մեկնութիւնից է քաղուած, ում էլ որ նա վերագրուելու լինի, բուն մեկնիչին թէ խմբագրող ունկնդրին, յամենայն դէպս, կարող էր, յիրաւի, հիմք ծառայել Ա. Բուսէին ենթադրելու, որ Ներածութեան ու Ստորոգութեանց յիշեալ մեկնութիւնները, հաւանաբար, միեւնոյն մեկնիչի գործ են։

Միանգամայն ուղիղ է նաեւ Ա. Բուսէի դիտողութիւնը, որ այդ մեկնութիւնների մէջ կրկնուած են յաճախ միեւնոյն մտքերը գրեթէ միեւնոյն բառերով։ Այդ եւս կարեւոր մի կռուան է յօգուտ Ա. Բուսէի վերոյիշեալ ենթադրութեան։

Արդ՝ տեսնենք, կարելի չէ՞ արդեօք Բուսէի այդ ենթադրութիւնը, որ հաւանական է թւում, հաշտեցնել հայ մատենագրութեան տարաձայն վկայութիւնների հետ։

§ 13. **Հայ մատենագրական աւանդութիւնը Եղիշէին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեան հեղինակ համարել է Ոլիմպիոդորոս մեկնիչին։** — Եղիշէին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեան հայերէն թարգմանութիւնը, ինչպէս վերեւ յիշուեց, սկզբից ու վերջից թերի է։ Էջմիածնի միակ ձեռագրի հայերէն բնագիրը, որ համապատասխան է Ա. Բուսէի հրատարակած

յունարէն բնագրի՝ էջ 108, Ջ. մինչեւ էջ 200, Ց. չունի վերնագիր, ուստի եւ անյայտ է մնում, թէ ում էր վերագրւում այդ երկն ըստ Հայերէն վերնագրի։

Կան սակայն կողմնակի ցուցումներ, որոնցից կարելի է հետեւցնել, որ տասնեւմէկերորդ դարից սկսած նոյն այդ գրուածքը համարուել է Ոլիմպիոդորոս մեկնիչի աշխատութիւն։

Ինչպէս յայտնի է, Յովհաննէս Որոտնեցին եւ նրա աշակերտը Գրիգոր Տաթեւացին ունեն գրած Արիստոտէլի մի քանի երկերի մեկնութիւններ, ի թիւս որոց եւ Արիստոտէլի Ստորոգութեանց մեկնութիւնը։

Էջմիածնի մատենադարանի թիւ 1834 ձեռագրում (= Կարէն. Ցուցակ, թ. 1791) Յովհաննէս Որոտնեցու այդ մեկնութիւնն ունի հետեւեալ վերնագիրը. “Եռամեծի Յովհաննու Հայոց փիլիսոփայի եւ վարդապետի ի հաւաքումն համառօտ վերծանութեան Ստորոգութեանցն Արիստոտէլի ի Գրիգորէ աշակերտէ„։

Յովհաննէս Որոտնեցին իր այդ աշխատութիւնը կազմել է, օգտուելով, գլխաւորապէս, Ստորոգութեանց վերաբերեալ հնագոյն մեկնութիւններից, որո՛նք յայտնի են եղել իրան։ Որոտնեցու Ստորոգութեանց լուծմունքի քննութիւնից երեւում է, որ նրան, իբրեւ գլխաւոր աղբիւր, ծառայել է Եղիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան հայերէն թարգմանութիւնը, որից նա քաղել է բազմաթիւ հատուածներ ու վկայութիւններ։ Այդ քաղուածքները

սակայն մէջ են բերուած ՚չ թէ իբրեւ Էլիասի, այլ իբրեւ Ողիմպիոդորոս մեկնիչի կարծիքներ։

Պարզ է ուրեմն, որ Ստորոգութեանց նոյն մեկնութիւնը, որը Բուսէն վերագրել է Էլիաս մեկնիչին, Յովհաննէս Որոտնեցուն յայտնի է եղել, իբրեւ Ողիմպիոդորոս փիլիսոփայի աշխատութիւն։

§ 14. Ողիմպիոդորոսին վերագրուած հատուածները Որոտնեցու Սորոգութեանց լուծմունքի մէջ. — Յովհաննէս Որոտնեցու Սորոգութեանց լուծմունքը, ինչպէս ասացի, կիսով չափ կազմուած է Ողիմպիոդորոսից առնուած քաղուածքներից։ Ողիմպիոդորոս մեկնիչը յիշւում է իբրեւ այդ քաղուածքների հեղինակ մօտ տասնեւհինգ անգամ։

Ապացուցանելու համար, որ Որոտնեցու լուծմունքի մէջ Ողիմպիոդորոսին վերագրուած բոլոր հատուածները համապատասխան են եւ գրեթէ նոյնը Էլիասին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեան հետ եւ որ Որոտնեցին այս վերջին մեկնութեան հայերէն թարգմանութիւնը համարել է Ողիմպիոդորոսի աշխատութիւն, բերենք մի քանի օրինակներ.

| Յովհաննէս Որոտնեցի[1]. | Էլիաս, էջ 15, 14–21. |
| --- | --- |
| "Առ այս այսպէս պատասխանէ Օլիմպիոդորոս՝ եթէ ամենայն գոյքս զինչ եւ իցէ անուամբ եւ սահմանի է հաղորդեալ եւ | "Ջոր եւ ցուցանեմք ի բաժանմանէ այսպէս. յամենայն ժամ երկուց իրաց անիցելոց, անուաղագ անուն եւ սահման՝ հանդիպի |

[1] Տես ձեռագիր Էջմիածնի մատենադարանի Թ. 1834, Թ. 46բ—79ա։

ոչինչ է որ ոչ ունի զսոսա։ Արդ՝ ի սոցանէ ոմանք անուամբ հաղորդին եւ լինին համանուն. եւ ոմանք իրաւք եւ լինին բազմանուն. եւ ոմանք անուամբ եւ իրաւք՝ եւ լինին փաղանուն. իսկ մանք ոչ անուամբ եւ ոչ իրաւք հաղորդին եւ լինին այլանուն„ . . . “ասելով համանուն անուամբ մի եւ իրաւք այլ՝ նշանակեաց զբազմանունսն, որք են իրաւք մի եւ անուամբ այլ, որպէս՝ սուսեր, նրան, դասայր, վաղակաւոր„։

Յովհաննէս Որոտնեցի[1].

“Ըստ Աւլաւմպիադորոս է այսպէս. յէակայն է ինչ որ ըստ գոյացութեան է եւ է որ ոչ է ըստ ինքեան։ Իսկ ըստ ինքեանն է, որ ըստ բաժանման է եւ է որ ոչ է ըստ բաժանման։ Արդ՝ որ ըստ ինքեան է ըստ բաժանման՝ առնէ զորակն, իսկ որ ոչ է ըստ ինքեան՝ կամ կալուածն միայն է կամ ըստ կալման այլոցն իմանի։ Արդ՝ որ կալուածն միայն է՝ առնէ

նոցին կամ ըստ երկուց իրաց հաղորդել, եւ ըստ անուանում եւ ըստ սահմանում՝ եւ լինին փաղանունք, եւ կամ ոչ ըստ սահմանում հաղորդին՝ եւ գոյանան այլանունքն, եւ կամ ըստ ուժեմն հաղորդին եւ ըստ ուժեմն զանազանին. եւ այս դարձեալ՝ կամ ըստ անուան հաղորդին եւ ըստ իրաց զանազանին՝ եւ գոյանան համանունքն, եւ կամ ըստ իրաց հաղորդին եւ ըստ անուան զանազանին՝ եւ լինին բազմանունքն՝ որպէս խաղ, գալար, մարտացու, վաղակաւոր, սուսեր, նրան„։

Էլիաս, էջ 81, 14–27։

“Էակն կամ ենթակայում է կամ ոչ ենթակայում։ Եւ եթէ ոչ ենթակայում՝ առնէ զգոյացութիւն, իսկ եթէ ենթակայում՝ կամ ըստ ինքեան է կամ ոչ ըստ ինքեան։ Եւ եթէ ըստ ինքեան է՝ կամ բաժանելի է կամ անբաժանելի։ Եւ եթէ բաժանելի է՝ առնէ զքանակն, իսկ եթէ անբաժանելի է՝ առնէ զորակն. քանզի թէ-

1 Որոտնեցու բնագիրը տեղ տեղ աղճատուած է ու պակասաւոր։

զառինչն, եւ որ ըստ կազմման այլոց են՝ առնեն զվեց ստորոգութիւնսն. որ է այնպէս. ի գոյացութենէն եւ ի քանակէն լինի ուրն եւ երբն, ի գոյացութենէն եւ յառնչէն լինի կալն եւ ունելն, ի գոյացութենէն եւ ի յորակէն լինին առնելն եւ կրելն„։

պէս եւ կարծի բաժանելի գոլ որակն, այլ սակայն վասն Նիւթոյն է բաժանելի։ Իսկ եթէ ոչ ըստ ընքեան՝ կամ կալումն միայն է եւ առնէ զառինչսն, եւ կամ ըստ կալման այլոց իմանի՝ եւ լինին վեց ստորոգութիւնքն. քանզի չորից ելոց պարզ ստորոգութեանց՝ գոյացութեան, քանակի, որակի, առընչի՝ ի շաղամանութենէ սոցա այլ ստորոգութիւնքն ծնանին. յէութենէ եւ ի քանակէ՝ ուր եւ երբն, յէութենէ եւ յորակութենէ՝ առնելն եւ կրելն, յէութենէ եւ յառընչէ՝ ունելն եւ կալն„։

Յովհաննէս Որոտնեցի:

“Ասէ Աւլաւմպիոդորոս թէ ստորոգութեան յեղանակք երեք են. է որ ըստ բնութեան եւ է որ ոչ է ըստ բնութեան եւ է որ ըստ պատահման„ տուն:

Էլիաս, էջ 88, 25 տուն:

“Քանզի Ստորոգութիւն եռակի է կամ ըստ բնութեան կամ ոչ ըստ բնութեան կամ ըստ պատահման„ տուն մինչեւ 89, 8:

Յովհաննէս Որոտնեցի:

“Իսկ քանակն զի նախադաս եղեւ որակին, զնէ զպատճառ Աւլաւմպիոդորոս„ տուն:

Էլիաս, էջ 114, 23 տուն:

“Ընդէր յետ գոյացութեան զքանակէ բանն եհար։ Եւ ասեմք, եթէ ըստ վեց պատճառաց„ տուն մինչեւ 115, 8:

կարելի է առաջ բերել ուրիշ բազմաթիւ քաղուածքներ եւս, սակայն աւելորդ է այդ, որովհետեւ վերոյիշեալ հատուածների համեմատութիւնից իսկ պարզ երեւում է, որ Յովհաննէս Որոտնեցին օգտուել է Ելիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան հայերէն թարգմանութիւնից, վերագրելով այն ոչ թէ Ելիասին, այլ Ոլիմպիոդորոս մեկնիչին։

Արդ՝ հարց է ծագում, թէ ինչ աղբիւրից է բղխում Որոտնեցու այդ վկայութիւնը։ Անշուշտ՝ սխալ կը լինէր կարծել, որ Որոտնեցու տեղեկութիւնը սոսկ մի ենթադրութիւն է, հիմնուած բանասիրական համարձակ ու անհիմն հետախուզման վրայ։ Ամենից հաւանականն է՝ ընդունել, որ հայերէն ձեռագիրը, որից օգտուել է Որոտնեցին, ունեցել է վերնագիր եւ այդ վերնագրում յիշուած է եղել Ոլիմպիոդորոս մեկնիչը՝ իբրեւ մեկնութեան հեղինակ։

§ 15. **Գրիգոր Մագիստրոսի վկայութիւնը Ոլիմպիոդորոսի ինչ որ աշխատութեան հայերէն թարգմանութեան մասին։** — Յովհաննէս Որոտնեցուց անկախ՝ Ոլիմպիոդորոսի ինչ որ երկի հնագոյն հայերէն թարգմանութեան մասին հաղորդում է Գրիգոր Մագիստրոսը “առ վարդապետն Սարգիս„ ուղղուած իր նամակում։ “Բայց եւ գտեալ մեր իսկ ի հայ լեզու, — գրում է նա, — գրեալ թարգմանչացն՝ զգիրս Ողոմպիոդորոսի, զոր Դաւիթ յիշատակէ, կարի յոյժ սքանչելի եւ հրա-

շալի բանաստեղծութիւնս մակաւասար բոլոր իմաստասիրական բանից„[1]։

"Զգիրս Ողոմպիոդորոսի, զոր Դաւիթ յիշատակէ„, կարծում ենք, որ Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան հենց այն հայերէն թարգմանութիւնն է, որից քաղուածօրէն օգտուել է Յովհաննէս Որոտնեցին։

Մագիստրոսի հաղորդած տեղեկութեան մէջ ուշագրաւ մի կէտ կայ։ Ոլիմպիոդորոսի գրուածքի հայերէն թարգմանութիւնը նա համարում է "Թարգմանչաց„ գործ։ Ինչպէս կը տեսնենք, թարգմանութեան մասին այդ տեղեկութիւնը միանգամայն սխալ է, եթէ "Թարգմանչաց„ տակ հասկանանք Սահակ-Մեսրոպի աշակերտներին։

Մագիստրոսի վկայութեան մէջ ուշադրութեան արժանի է սակայն նրա նկատողութիւնը, որ իր գտած թարգմանութիւնն այն Ոլիմպիոդորոսի աշխատութիւնն է, որին յիշատակում է Դաւիթ փիլիսոփան։ Եւ իրօք Նորպղատոնական Դաւիթ մեկնիչը "Սահմանք իմաստասիրութեան„ իր երկում երկու անգամ յիշում է "Ողոմպիոդորոս փիլիսոփոսին„[2] եւ իմաստասիրական մի քանի հարցերի մասին առաջ բերում նրա վկայութիւնները։

Արդ՝ Ոլիմպիոդորոսի այդ վկայութիւնները, ինչպէս կը տեսնենք, գտնւում են հենց Էլիասին

---

1 Տե՛ս Կ. Կոստանեանց, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Աղէքսանդրապօլ 1910, էջ 66։

2 Տե՛ս Վենետիկ 1833, էջ 143 եւ 164։

ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան մէջ, այն էլ՝ ոչ իբրեւ այլուստ առաջ բերուած քաղուածքներ, այլ որպէս սեպհական հայեացքներ մեկնութեան հեղինակի։

Շատ պարզ է, ուրեմն, որ Մագիստրոսի «զգիրս Ողիմպիոդորոսի զոր Դաւիթ յիշատակէ» վկայութիւնը վերաբերւում է Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեանը։ Միանգամայն պարզ է նաեւ այն, որ Գրիգոր Մագիստրոս եւս, ինչպէս եւ Յովհաննէս Որոտնեցին, նոյն այդ երկը համարել է ոչ թէ Էլիասի, այլ Ողիմպիոդորոսի աշխատութիւն։

Ինձ թւում է, որ Մովսէս Խորենացու յիշած[1] Ողիմպիոդորոս փիլիսոփան եւս նոյն այս Ողիմպիոդորոսն է։ Խորենացու ասելով՝ Ողիմպիոդորոսն այն կատարելագոյնն էր իմաստասէրների մէջ, որոնց մօտ սովորում էին հայերը փիլիսոփայութիւն։ Այս վկայութիւնը վերաբերւում է, իմ կարծիքով, ոչ թէ հինգերորդ դարի պատմագիր Ողիմպիոդորոսին, այլ Աղեքսանդրիացի երկու Ողիմպիոդորոս փիլիսոփաներից մէկին։

Աւելի քան հաւանական է, որ Խորենացու վկայութիւնը վերաբերւում է Նորպղատոնական Դաւիթ մեկնիչի ուսուցիչ՝ կրտսեր Ողիմպիոդորոսին։ Սա է այն «կատարելագոյն» փիլիսոփան, որ մեծ հռչակ է ունեցել Հայաստանում։ Սրա փիլիսոփայական դպրոցից են ծագում հայերէն

---

1 Տե՛ս Պատմութիւն Հայոց, Տփղիս 1913, էջ 2, 22, 25 եւ 212։

թարգմանուած Արիստոտելեան երկերի մեծագոյն մասը։ Այդ երկերի թարգմանները կարող էին, իրօք, աշակերտած լինել կրտսեր Ոլիմպիոդորոսի կամ նրա յաջորդների մօտ։ "Օργανον"-ի երկերը եւ նրանց վերաբերեալ մեկնութիւնները թարգմանելու համար բաւական չէր, անշուշտ, յունարէն լեզուն միայն իմանալ, այլ հարկաւոր էր ունենալ փիլիսոփայական լուրջ նախապատրաստութիւն։ Յունաբան դպրոցի առաջին թարգմանիչները կարեւոր այդ նախապատրաստութիւնը կարող էին ձեռք բերել իրանց ժամանակակից յունարէն դասաւանդող իմաստասէրների մօտ։

Փիլիսոփայութեան պատմութիւնից յայտնի է, որ զանազան ազգերի զրոյցները հաւաքել ու այլաբանօրէն մեկնել են, գլխաւորապէս, Նորպղատոնական իմաստասէրները։ Խորենացու խօսքերը՝ «ոմանք այլազգաբար եւ ոմանք այլաբանաբար զրոյցս մատենից տային», կարող են վերաբերուել աւելի շուտ Նորպղատոնական մեկնիչ իմաստասէրների միջավայրին, քան Ոլիմպիոդորոս պատմագրին։

Խորենացու վկայութեան բոլոր ակնարկները, ինչպէս տեսնում ենք, համապատասխան են ու յարմար Դաւիթ Մեկնիչի ուսուցիչ կրտսեր Ոլիմպիոգորոսի համար՝ նոյն Ոլիմպիոդորոսի, որին յիշում են նաեւ Գրիգոր Մագիստրոսը եւ Յովհաննէս Որոտնեցին։

§ 16. Դաւիթ Մեկնիչի Եղիային ընծայուած Ներածութեան Մեկնութիւնը յայտնի է եղել Եւրո-

Ոլիմպիոդորոսի աշխատութիւն։ — Յովհաննէս Որոտնեցու եւ Գրիգոր Մագիստրոսի վկայութիւններն արժանի են խոր ուշադրութեան։ Թէեւ Բուսէն Արիստոտելի Ստորոգութեանց վերոյիշեալ մեկնութեան հեղինակ համարում է Էլիաս մեկնիչին, որին վերագրում է նաեւ իր լոյս ընծայած Պորփիւրի Ներածութեան մեկնութիւնը, թէեւ նա իր այդ ենթադրութիւնը պատճառաբանում է լուրջ ու հիմնաւոր փաստերով, սակայն, ինչպէս տեսանք, կայ ուշագրաւ մի կռուան, նոյն երկերը վերագրելու Ոլիմպիոդորոս մեկնիչին՝ այն Ոլիմպիոդորոսին, որը յիշւում է Դաւթի Սահմանք իմաստասիրութեան երկում։

Ըստ երեւոյթին, Որոտնեցու ու Մագիստրոսի տուած տեղեկութիւնները, որ չեն համապատասխանում Ա. Բուսէի յունական աղբիւրներից հաւաքած դիտողութիւններին, այնքան էլ անհիմն չեն։

Դաւիթ մեկնիչն ինքն եւս օգտուել է Էլիասին ընծայուած Պորփիւրի Ներածութեան մեկնութիւնից, բայց ոչ իբրեւ Էլիասի, այլ իբրեւ Ոլիմպիոդորոսի աշխատութիւնից։ Ապացոյց դրան Սահմանք իմաստասիրութեան երկում Ոլիմպիոդորոսից մէջ բերուած հատուածը, որ գտնւում է Էլիասին ընծայուած Պորփիւրի Ներածութեան մեկնութեան մէջ՝ *Προλεγόμενα τῆς φιλοσοφίας* առաջաբանում.

1 Սահմ. իմաստ., 1833, էջ 164.

«Եւ պարտ է գիտել. եթէ այն Կղէոմբրոտոս ամբրակիացի կործեալ. եթէ Պղատոն զբնաւորական մահուանէն հրամայէ խոկալ իմաստասիրին. ընկեցեալ զինքն ի պարսպէն վախճանեցաւ. վասն որոյ ասէ Կալիմաքոս. "Ուրախացիր ով արեգակն. Կղէոմբրոտոս ամբրակիացի վազեալ ի բարձրաբերձ պարսպաց ի դժոխս. արժանի ինչ ոչ ունեալ մահու. այլ շար զՊղատոնի զմաղագս հոգւոյ գիրն ընթերցեալ»:

Eliae in Porph. Is., էջ 14.

Ἐβουλόμην δὲ τούτων τῶν λόγων ἀκοῦσαι Κλεόμβροτον· οὗτος γὰρ περινοήσας τὸ ἐν Φαίδωνι ῥητὸν κκ, ὡς δηλοῖ τὸ εἰς αὐτὸν ἐπίγραμμα τοῦ Καλλιμάχου οὕτω λέγον· Εἴπας "Ἥλιε χαῖρε" Κλεόμβροτος 'Αμβρακιώτης ἥλατ' ἀφ' ὑψηλοῦ τείχεος εἰς 'Αΐδην, ἄξιον οὔτι παθὼν θανάτου κακόν, ἀλλὰ Πλάτωνος ἓν τὸ περὶ ψυχῆς γράμμ' ἀναλεξάμενος.

2 Առ այսոքիկ ասաց Ողոմպիոդորոս փիլիսոփայ. «Եթէ ոչ պղատոնական գիրն զիմն նահանջէր զմարմակումն. այն ինչ ահա տաժանաբար լուծանէի զմաքնաթախանձ կապ կենցաղոյս»[1]:

'Εγὼ δὲ τἀναντία ἐκείνῳ φημὶ ἔπη οὕτως· εἰ μὴ γράμμα Πλάτωνος ἐμὴν ἐπέδησεν ἐρωήν, ἤδη λυγρὸν ἔλυσα βίου πολυκηδέα δεσμόν.

Ներածութեան մեկնութիւնից առաջ բերուած յունարէն այս հատուածում εἰ μὴ γράμμα եւ խօսքերը հեղինակի սեփական դատողութիւնն է, ինչպէս այդ պարզ վկայում է ինքը մեկնիչը:

---

[1] Տես նաեւ յունարէն բնագիրը՝ Davidis Prolegomena, ed. A. Busse, էջ 31—32:

Արդ՝ նոյն այդ խօսքերը, ինչպէս տեսնում ենք, Դաւիթը վերագրում է ոչ թէ Էլիասին, այլ Ոլիմպիոդորոս փիլիսոփային։ Ուրեմն՝ Դաւթի այս շատ որոշ վկայութիւնից կարելի է եզրակացնել, որ նրան ներածութեան մեկնութիւնը յայտնի է եղել իբրեւ Ոլիմպիոդորոսի երկ եւ ոչ Էլիասի։

Ա. Բուսէն, միանգամայն հաւատ ընծայելով Դաւթի վկայութեանը եւ εἰ μὴ γράμμα են խօսքերը համարելով նոյնպէս Ոլիմպիոդորոսինը, կարծում է, որ ներածութեան մեկնութեան յունարէն ձեռագրի արտագրողը բաց է թողել ἐγὼ δὲ τἀναντία ἐκείνῳ φημὶ ἔπη οὕτως հատուածում ὥς φησιν Ὀλυμπιόδωρος խօսքերը[1]։

Սակայն այս բռնազբօսիկ սրբագրութիւնը, որ խիստ վիճելի է ու կասկածելի, իմ կարծիքով, անհաւանական ու անհիմն պէտք է համարուի, որովհետեւ համապատասխան Դաւթի վկայութեանը հայ մատենագիրները եւս, ինչպէս տեսանք, մատնանշում են Ոլիմպիոդորոս մեկնիչին, իբրեւ հեղինակ Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան։

Ճիշտ է նրանց վկայութիւնը վերաբերւում է միայն Ստորոգութեանց մեկնութեանը, սակայն քանի որ ներածութեան մեկնութիւնը եւս միեւնոյն հեղինակի գործ է եւ Դաւիթն այս վերջինից օգտուել է իբրեւ Ոլիմպիոդորոսի աշխատութիւնից՝ ուրեմն եւ Որոտնեցու ու Մագիստրոսի

---

1 Տե՛ս A. Busse, Eliae in Porph. Isag., էջ VII։

վկայութիւնները կարող են կռուան ծառայել Դաւթի տեղեկութեան հիմնաւոր լինելուն, ինչպէս եւ Դաւթի ցուցումը կարող է ապացոյց ընդունուել նրանց հաղորդած վկայութիւնների ճշտութեան։

Դաւթի «Սահմանք իմաստասիրութեան» երկում առաջ է բերուած նաեւ Ոլիմպիոդորոս փիլիսոփայի կարծիքը սահմանների որոշ առանձնայատկութիւնների մասին։ Արդ՝ այդ հատուածը եւս, իմ կարծիքով, համապատասխանում է դարձեալ Սահմանի նման լուսաբանութեանը, որ գտնւում է Էլիասին վերագրուած Ներածութեան մեկնութեան մէջ։

*Սահմանք իմաստ.*, էջ 143.

«Իսկ յորժամ նուազեն բառքդ՝ առաւելուն իրքդ որքոն՝ մարդ կենդանի բանական. ահա նուազեցին բառք՝ եւ յաւելան իրքդ։ Վասն զի ոչ միայն մարդ է կենդանի բանաւոր, այլ եւ հրեշտակք եւ դեւք. եւ որպէս ասէր Ոլոմպիադորոս փիլիսոփոս՝ եթէ սքանչելի իմն եղիա բնութիւնս. նուազութիւն հարստացեալ եւ հարստութիւն կեղծաւորեալ գնուազութեանցն»[1]։

Eliae in Porph. Is, էջ 5.

Καὶ θαυμαστὸς ὁ τῆς κακίας τῶν ὁρισμῶν τρόπος· εἴ τε γὰρ ἐλλείψωσι τῇ λέξει, τῷ πράγματι πλεονάζουσιν, εἴ τε πλεονάσωσι τῇ λέξει, τῷ πράγματι, τῷ ὁριστῷ φημι, ἐλλείπουσιν· οἷον ὡς ἵνα εἴπω 'ὁ ἄνθρωπος ζῷον', ἰδοὺ τῇ λέξει ἐνέλειπον, ἐπλεόνασα δὲ τῷ πράγματι συμπεριλαβὼν ἀγγέλους καὶ ἄλλα ζῷα.

---

1 Տես նաեւ յունարէն բնագիրը՝ Davidis Prolegomena, ed. A. Busse, էջ 16։

Ինձ թւում է, որ Դաւթի վկայութիւնները եւ վերոյիշեալ բաղդատութիւններն այնքան պարզ են ու որոշ, որ կարող չեն բռնազբօսիկ ու վիճելի սրբագրութիւնների։ Եթէ ճիշտ են այս դիտողութիւնները, շատ պարզ է որ Ներածութեան ու Ստորոգութեանց վերոյիշեալ մեկնութիւնները պէտք է համարուեն Ոլիմպիոդորոս փիլիսոփայի աշխատութիւն։

§ 17. Հայ մատենագրական աւանդութեան եւ Ա. Բուսէի եզրակացութեան հակասութիւնները կարելի է վերացնել, ենթադրելով Եղիա-Ոլիմպիոդորոսին միեւնոյն անձը։ — Դաւթի վերոյիշեալ վկայութիւնները, ինչպէս եւ Յովհաննէս Որոտնեցու ու Գրիգոր Մագիստրոսի պարզ ու որոշ տեղեկութիւնները անկարելի է առանց լուրջ հիմքերի ժխտել կամ անտես առնել։ Միւս կողմից՝ բաւարար հիմք չունենք մերժելու նաեւ Ա. Բուսէի եզրակացութիւնը, որը Ներածութեան ու Ստորոգութեանց մեկնութիւնները Եղիաս մեկնիչին ընծայելու համար, ինչպէս տեսանք, ունի ուշագրաւ փաստեր ու կռուաններ։

Կարծում եմ, որ հնարաւորութիւն կայ հաշտեցնելու հայկական աւանդութեան տուեալները Բուսէի ներհակ ու անհամաձայն թուացող եզրակացութեան հետ հաւանական մի նոր ենթադրութեամբ, որը սակայն կարող է յատուկ քննութեան յունական աղբիւրների օգնութեամբ։

Ա. Բուսէի կարծիքով՝ Եղիասը վերոյիշեալ իր մեկնութիւնները գրելու ժամանակ դեռեւս

քրիստոնէութիւն ընդունած չէ եղել[1]. „Atque etiam Eliam, cum has scholas habebat, — ասում է նա, — fidei christianae non fuisse addictnm, ex verbis (ր. 66, 4) 'καὶ λέγομεν ὅτι οὐκ ἄτοπον τὸν θεὸν σῶμα εἶναι· τὰ γὰρ οὐράνια κατὰ Ἀριστοτέλην θεοὶ διὰ τὸ θέειν ἀεὶ καὶ κινεῖσθαι' luculenter apparet„[2]։

Ի նկատի առնելով կարեւոր այս հանգամանքը, կարելի է ենթադրել, որ Էլիասի հեթանոսական անունը եղել է Ոլիմպիոդորոս։ Յովհաննէս Փիլոպոնոսը, որ վեցերորդ դարի քրիստոնեայ մեկնիչներից է, վերոյիշեալ իր վկայութեան մէջ գերադասութիւն է տալ, բնականաբար, նրա քրիստոնէական անուանը, իսկ հայ մատենագրութեան մէջ նոյն Էլիասի երկերը յայտնի են եղել, իբրեւ Ոլիմպիոդորոսի աշխատութիւն։ Դաւթի վկայութիւնները վերաբերում են, ուրեմն, Ոլիմպիոդորոս-Էլիասին, որը նոյն ինքն կրտսեր Ոլիմպիոդորոսն է, Դաւիթ մեկնիչի ուսուցիչը։

Այս ենթադրութեան դէմ կարող է լինել մի լուրջ առարկութիւն. Ոլիմպիոդորոսի անունը կրող Ստորոգութեանց մի այլ մեկնութիւն գոյութիւն ունի արդէն եւ Ա. Բուսէի հրատարակութեամբ լոյս է տեսել Բերլինում 1902

[1] Տես նաեւ K. Krumbacher, Geschichte der byz. Literatur, 2. Auflage, München 1897, էջ 432։

[2] A. Busse, Eliae in Porph. եւն, էջ X։

թուին[1]։ Այս դժուարութիւնը սակայն այնքան էլ անյաղթելի չէ։

Իմ կարծիքով, Ոլիմպիոդորոսի այդ մեկնութիւնը, որ պահպանուած է միայն մէկ ձեռագրում (Cod. Mutensis 69), պէտք է վերագրուի կամ մի այլ Ոլիմպիոդորոսի, կամ մի այլ մեկնիչի, կամ կարող է լինել նոյն այս Ոլիմպիոդորոս-Էլիասի մեկնութիւն, բայց դասաւանդուած նրա դպրոցական գործունէութեան մի այլ շրջանում։ Ստորոգութեանց երկու այս մեկնութիւններն իրանց բովանդակութեամբ ու մտքերի դասաւորութեամբ այնքան մօտ են իրար, որ անհնարին չէ ենթադրել, որ նրանք միեւնոյն դասախօսի մեկնութիւններ են, կարդացուած ու գրի առնուած ուսանողների կողմից տարբեր ժամանակ։ Փիլիսոփայութեան պատմութիւնից յայտնի է, որ կրտսեր Ոլիմպիոդորոս փիլիսոփան ունեցել է երկար կեանք եւ եղել է փիլիսոփայութեան ուսուցիչ մինչեւ Զ. դարի վաթսնական թուականները։ Շատ բնական է, որ նրա դասախօսութիւնների բովանդակութիւնը եւ ծաւալը կարող էին նոյնը չլինել նրա դպրոցական երկարատեւ գործունէութեան զանազան շրջաններում։

Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութիւնը, լինելով իր բովանդակութեամբ շատ աւելի ընդարձակ ու մանրազննին քան Ոլիմպիոդորոսի վերոյիշեալ մեկնութիւնը, կարող է թե-

---

1 Olympiodori Prolegomena et in Categorias Commentarium, ed. A. Busse, Berolini 1902։

րեւս համարուել միեւնոյն Ոլիմպիոդորոս փիլիսոփայի մեկնութիւն, դասաւանդուած ու գրի առնուած նրա դպրոցական գործունէութեան աւելի ուշ շրջանում։

§ 18. Ոլիմպիոդորոս-Էլիասին վերստին անդրադառնելով՝ հարթւում են մի շարք վիճելի խնդիրներ։ — Վերոյիշեալ ենթադրութիւնն ուշագրաւ է այն տեսակէտից, որ այդ ենթադրութեամբ ոչ միայն վերանում են այն անբացատրելի հակասութիւնները, որ վերեւ մատնանիշ էինք արել, այլ հարթւում ու պարզւում են նաեւ մի քանի մութ ու վիճելի խնդիրներ Դաւթի, Էլիասի ու Ոլիմպիոդորոսի նկատմամբ։

Ինչպէս յայտնի է, Ա. Բուսէն, որ իր նախկին աշխատութիւններում Դաւթին ու Էլիասին համարում էր ժամանակակից մեկնիչներ եւ Ոլիմպիոդորոսի աշակերտներ, Դաւթի երկերի հրատարակութեան իր առաջաբանում[1], նրանց երկերի մանրազննին քննութիւնից յետոյ, հարկադրուած էր փոխելու իր նախկին կարծիքը եւ ենթադրելու, որ Ոլիմպիոդորոսի աշակերտ եղել է Էլիասը, իսկ Դաւիթը եղել է այս վերջինիս աշակերտը եւ ապրել վեցերորդ դարի վերջում եւ եօթներորդ դարի սկիզբներում։

Դաւիթ Անյաղթի մասին իմ աշխատութեան մէջ, ինչպէս եւ Մ. Խոստիկեանը David der Philosoph իր քննաձառում, հակառակ Ա. Բուսէի այդ վերջին ենթադրութեան,

---

1 A. Busse, Davidis Prolegomena եւն, p. V—VI։

հիմնուելով մի շարք այլ դիտողութիւնների վրայ, ընդունել էինք Դաւթին կրտսեր Ոլիմպիոդորոսի աշակերտ։

Արդ՝ այդ հակասական եզրակացութիւններն իրանք իրանց վերանում են ու վիճելի խնդիրը հեշտութեամբ պարզւում, եթէ հաւանական համարուի Ոլիմպիոդորոս-Էլիասի միեւնոյն անձ լինելը։

Բացի այդ, խիստ օտարոտի էր թւում, որ Փիլոպոնոսը, որը քաղուածքներ է անում ժամանակակից մեկնիչների երկերից եւ յիշում նրանց, կրտսեր Ոլիմպիոդորոս մեկնիչին, որ ականաւոր տեղ է բռնում մեկնիչների շարքում, ոչ յիշատակում է, ոչ էլ օգտւում նրա մեկնութիւններից։

Եթէ Էլիասը քրիստոնէութիւն ընդունած նոյն ինքն Ոլիմպիոդորոսն է, այդ դէպքում շատ պարզ է, թէ ինչու Յովհաննէս Փիլոպոնոսը, յիշելով Էլիասին, չէ յիշում նաեւ Ոլիմպիոդորոսին։

Ոլիմպիոդորոսի Ներածութեան մեկնութիւնը համարւում է կորած։ Արդ՝ եթէ վերոյիշեալ մեր ենթադրութիւնը ճիշտ լինի՝ Էլիասին վերագրուած Ներածութեան մեկնութիւնը պէտք է ընդունել նոյն ինքն Ոլիմպիոդորոսի աշխատութիւն։

Վերջապէս՝ Էլիաս-Ոլիմպիոդորոսին միեւնոյն անձն ընդունելով, ինքն ըստ ինքեան հասկանալի է դառնում, թէ ինչու Էլիասը եւ ո՛չ մի անգամ չէ յիշատակում Ոլիմպիոդորոսի անունն իր երկերում։

Ոլիմպիոդորոս-Էլիասի միեւնոյն անձ լինելու մասին սոյն ենթադրութեան վրայ հրաւիրում ենք այն բանասէրների ուշադրութիւնը, որոնք հնարաւորութիւն ունեն օգտուելու եւրոպական հարուստ գրադարանների նիւթերից։ Ի նկատի ունենալով վերոյիշեալ նոր ենթադրութիւնը, որ հիմնուած է հայկական տեղեկութիւնների վրայ, հարկաւոր է, իմ կարծիքով, նորից քննութեան առնել յունաց մատենագրութեան տուեալները, որոնց մէջ կարող են թերեւս գտնուել անուշադիր թողնուած նոր վկայութիւններ կամ որոշ ակնարկներ, նպաստաւոր այս խնդրի վերջնական լուծմանը։

§ 19. Ստորոգութեանց մեկնութեան հատուածը, որ տպագրուած է Էլիասի հայերէն հրատարակութեան վերջում, անյայտ մնացել ուսումնասիրութեան է Ոլիմպիոդորոս-Էլիասի Դուրսեցէ։ — Էջմիածնի մատենադարանի թիւ 1939 ձեռագրում (=Կարին. Ցուցակ, Թ. 1897), բացի Էլիասին վերագրուած Ստորոգութեանց մեկնութիւնից, գտնւում է նաեւ, ինչպէս վերեւ յիշեցինք, համառօտ մի հատուած Արիստոտելի Ստորոգութեանց մի այլ մեկնութեան, որը տպագրուած է Էլիասի հայ հրատարակութեան վերջում, էջ 140—149։

Այս հատուածը, որ չունի վերնագիր եւ որեւէ տեղեկութիւն կամ ակնարկ հեղինակի մասին, խիստ նման է իր բովանդակութեամբ, իսկ տեղ տեղ գրեթէ բառացի համապատասխան է Էլիասի եւ Դաւթի մեկնութիւններին։

Նման տեղերն այնքան շատ են, որ աւելորդ եմ համարում դէմ առ դէմ դնել նրանց բնագիրը, այլ նշանակում եմ միայն համապատասխան հատուածների էջերն ու տողերը.

1. Անանուն մեկնիչ, էջ 140, 15—22 = Էլ. 2, 13—3, 8։ 2. Ան. 141, 1—9 = Էլ. 3, 9 են։ 3. Ան. 141, 9—26 = Էլ. 6, 17—8, 8։ 4. Ան. 141, 30—142, 3 = Էլ. 3, 19—21։ 5. Ան. 142, 4—8 = Էլ. 4, 19—25։ 6. Ան. 142, 8—14 = Էլ. 9, 14—18։ 7. Ան. 142, 27—143, 4 = Դաւ. 164, 5—12։ 8. Ան. 143, 12—18 = Էլ. 8, 16—19։ 9. Ան. 144, 11—145, 10 = Էլ. 4, 25—5, 18։ 10. Ան. 145, 20—147, 1 = Էլ. 9, 14—10, 15։ 11. Ան. 147, 11—17 = Էլ. 30, 11—17։ 12. Ան. 148, 8—149, 5 = Էլ. 37, 11—38, 20 եւ Դաւ. 252, 14—253, 23։

Այս համեմատութիւնը պարզ ցոյց է տալիս, որ Ստորոգութեանց մեկնութեան սոյն հատուածի մեկնիչը պատկանում է նոյնպէս Ոլիմպիոդորոս-Էլիասի դպրոցին։ Սակայն նոյն այս հատուածի մէջ հանդիպում են քաղուածքներ անյայտ ինչ որ աղբիւրներից եւ յիշատակւում են մատենագիրների եւ փիլիսոփաների անուններ, ինչպէս Պասիլ, Փղւոս, Ազոնտէս, որոնք չեն յիշւում Դաւթի ու Էլիասի մեկնութիւններում։

Ուշադրութեան արժանի է, որ Սահմանք իմաստասիրութեան երկում Կալիմաքոսից բե-

ռուած յայտնի քաղուածքն Անանուն մեկնիչը վերագրում է ոմն Պասիլին[1]։

Փղւոսին Անանուն մեկնիչը յիշատակում է իդոնիկեան իմաստասէրների՝ Եպիկուրոսի, Արիստիպպոսի եւ Կղէոմպռոտոսի՝ խմբում, եւ նրա իդոնիկեան լինելու ապացոյց համարում է "Փղւոս" անունը։ "Եւ վասն զի Փղւոս իդոնիկեան էր, ասում է նա, յայտնէ անունն, զի ցանկութիւն ասի. ուստի եւ Փղւոս անուանեմք զտարփաւղսն" (էջ 143)։

Անանուն մեկնիչը յիշում է եւ ոմն Ագոնտէսին, նոյնպէս անյայտ մի անուն, որի մասին նա հաղորդում է հետեւեալը. "Երրորդ ձեռնարկութիւնն՝ զոր Ագոնտէսն ասէ, թէ մինչ աստուածայինն ունի զանհոգ կեալն՝ առաւել մեզ պարտ է անհոգաբար կեալ։ Այլ ոչ զայդ ասէ Ագոնտէս, այլ եթէ աստուածայինն՝ զոր ինչ եւ կամի՝ անխափանաբար եւ կատարէ, իսկ մարդիկ ոչ զամենայն՝ զոր ինչ եւ կամին՝ կատարել կարեն" (էջ 143)։

Թէ ինչ աղբիւրներից է քաղել Անանուն մեկնիչը Պասիլի, Փղւոսի եւ Ագոնտէսի վերաբերեալ իր վերոյիշեալ տեղեկութիւնները՝ այդ կարօտ է առանձին քննութեան Արիստոտելեան իմաստասիրութեան յունական ձեռագրերի օգնութեամբ։

Բացի վերոյիշեալ մի քանի անծանօթ հատուածներից, Անանունի մեկնութիւնը իմաս-

---

1 Տես էջ 143 եւ Դաւ. Սահմ., էջ 164։

տասիրական իր գաղափարներով եւ մեկնական յատուկ իր եղանակով այնքան է նման Ոլիմպիոդորոս-Էլիասի ու Դաւթի մեկնութիւններին, որ սրա խմբակցութիւնն այդ մեկնութիւնների հետ կարելի է համարել, իմ կարծիքով, միանգամայն աներկբայելի։

§ 20. **Անանունի Ստորոգութեանց մեկնութեան հատուածը Դաւթի աշխատութիւնը չէ։** — Ի նկատի առնելով, որ Նորպղատոնական Դաւիթ մեկնիչի Ստորոգութեանց մեկնութիւնը կորած է համարւում, կարելի էր ենթադրել, որ յիշեալ հատուածն այդ աշխատութեան հայերէն թարգմանութեան մի կտորն է։ Այդպիսի ենթադրութեան հիմք կարող են ծառայել, թէ այդ հատուածի Ոլիմպիոդորոս-Էլիասի խմբին պատկանելը եւ թէ նրա բովանդակութեան մերձաւորութիւնը Դաւթի մեկնութիւնների հետ։

Սակայն Դաւթի երկերի եւ սոյն հատուածի ուշադիր քննութեամբ ստացւում է հակառակ եզրակացութիւն։

Նորպղատոնական Դաւիթը եւ հատուածի Անանուն հեղինակը որոշ խնդիրներում այնքան են տարբերւում իրարից, որ այդ հատուածը Դաւթին վերագրելը թւում է անհաւանական ու անընդունելի։

Այդ անհաշտելի տարաձայնութիւնները պարզ երեւում են հետեւեալ համեմատութիւններից.

1. Դաւիթն իր Սահմանք իմաստասիրութեան երկում «Ուրախացիր ով արեգակն,

կղէոմբռոտոս Ամբռակեացի վազեալ ի բարձրաբերձ պարսպացի դժոխս» եւն խօսքերը (Սահմ. 164) վերագրում է Կալլիմաքոսին, իսկ Անանուն մեկնիչը ոմն պասիլին (էջ 143)։

2. Դաւիթը ճեմականների անուան ծագման մասին ասում է. «Իսկ ճեմական կոչեցաւ Արիստոտէլ, վասն զի Պղատոնի տակաւին եւս կենդանի գոլով՝ ոչ իշխէր նստել եւ ուսուցանել» (Պորփ. Ներած. վերլուծ., էջ 281), իսկ Անանուն մեկնիչը, նման Էլիասին, կարծում է, թէ «կոչին Արիստոտէլեանք պերիպատիկեանք, վասն զի ճեմելով առնէր զզրուցատրութիւնսն ըստ նմանութեան Պղատոնի, զի նա ճեմելով զզրուցատրութիւնսն առնէր, խորհելով՝ մի միայն զհոգին վարժել, այլ եւ զմարմինն» (էջ 145)։

3. Դաւիթը «խորթ շարադրածութեանց» խնդիրը լուսաբանում է Պորփիւրի Ներածութեան վերլուծութեան առաջին պրակում, իսկ Անանուն մեկնիչը, նման Էլիասին, Ստորոգութեանց մեկնութեան առաջաբանում (տես Պորփ. Ներած. վերլ., էջ 252 Էլ. եւ Ան., էջ 37. 148)։

«Խորթ շարագրածութեանց» վերաբերեալ այս հատուածների բովանդակութեան համեմատութիւնից եւս երեւում է, որ Անանունը եւ Դաւիթը տարբեր հեղինակներ են եւ որ Անանունի մեկնութիւնն աւելի համապատասխանում է Օլիմպիոդորոս-Էլիասի մեկնութեանը, քան Դաւթի։

§ 21. Անանունը նէոպլատոնեայ մեկնիչ է, [illegible] փիլիսոփայական հարցերում։ — Մեկնե-

լով կիւնիկեան դպրոցի անուան ծագումը՝ Անանուն մեկնիչը տալիս է, ի միջի այլոց եւ հետեւեալ լուսաբանութիւնը։ «Դարձեալ՝ կիւնիկեցիք ասացան, զի պաշտէին զշունս՝ որպէս ի Հելլենացւոց անշունչ դրաւշեալքն պաշտէին» (էջ 141)։ Այս բացատրութիւնը պարզ ցոյց է տալիս, որ ինքը մեկնիչը հելլենացի չէր եւ ոչ էլ հեթանոս, ուրեմն՝ հաւանական է ենթադրել, որ նա եւս, ինչպէս եւ Դաւիթն ու Էլիասը, պատկանում էր Արիստոտէլի իմաստասիրութեան քրիստոնեայ մեկնիչների շարքին։

Հետաքրքիր մի ակնարկ եւս կայ Անանունի մեկնութեան հատուածում, որից թերեւս կարելի լինի հետեւցնել, որ Անանուն մեկնիչը եղել է Աթէնքում։ Խօսելով իմաստասիրական հերձուածների մասին, Անանունն ասում է. «Երրորդ յեղանակ՝ ի տեղեացն, որպէս կոչեցան ակադեմացիք եւ ստոյիկեանք, եւ գեղեցիկ է այս տեղի Աթենացեացն» (էջ 147)։ Այս խօսքերը կարող են մի նշան համարուել, որ Անանուն մեկնիչն Աթէնք այցելած մի օտարական է, որի վրայ ստոյիկեանների գեղեցիկ սրահը թողել է խոր տպաւորութիւն։

Միւս կողմից, նաեւ պարզ նկատւում է Անանունի մեկնութեան բովանդակութիւնից, որ նա բաւարար չափով չէ կարողացել ըմբռնել իմաստասիրական գիտութիւնը եւ երբեմն, աններելի կերպով, շփոթում ու խեղաթիւրում է իմաստասիրական ամենատարրական փաստերն ու գաղափարները։

Անանուն մեկնիչի տգիտութեանը պէտք է վերագրել նրա հետեւեալ վկայութիւնները Հերակլիտոսի, Եփեկտիկեանների եւ Պտղոմէոսի մասին։

Անանուն (Էլիասի հրատ.), էջ 140, 7—10։

"Եւ զոր ասեմս այս է՝ Հերակլիտոս արտադրեաց զամենայն ինչ անշարժ գոլ։ Եւ Եփեկտականք հաստատակապէս մտածեցին՝ ոչինչ գոլ անշարժ, որ եւ եռանեայք անուանին"։

Էլիաս, էջ 2, 17—19։

"Վասն զի միոյ ասեն կարծիք գրութիւն լինի եւ ոչ հերձուած, որպէս Հերակղիտեայն եթէ ամենայն ինչ շարժի. եւ կամ Պարմենիդեայն թէ եզ է էակն եւ անշարժ"։

Անանուն, էջ 148.

"Եղեւ դարձեալ այլ թագաւորի Փիլադեղփիւս, որ եւ նա փափագէր Պտղոմէի շարագրածացն եւ տայր բազում գանձս, որ բերէին նմա այսպիսի գիրս"։

Էլիաս, էջ 37.

"Քանզի Յովբաայ Լիւբէացւոց թագաւորի հաւաքեցելոյ զայնս, որք Պիւթագորին գոյին. իսկ Պտղոմէոսի՝ զայնս, որք Արիստոտէլի"։

Ինչպէս այս համեմատութիւններից տեսնում ենք, Էլիասի ճշգրիտ վկայութիւնները հիմնովին աղճատուած են Անանունի մօտ։ Հերակլիտոսի πάντα ρεῖ հանրածանօթ դրութիւնը, Անանուն մեկնիչի բացատրութեամբ, դառել է "ամենայն ինչ անշարժ գոլ", իսկ "ոչինչ գոլ անշարժ" դրութիւնը վերագրուած է Եփեկտիկեաններին։ Էլիասի տեղեկութիւնը Պտղոմէոսի մասին, իբր սա հաւաքում էր Արիստոտէլի երկերը, Անանուն մեկնիչն անհեթեթ կերպով

խեղաթիւրել է, կարծելով, որ Փիլադելփոսը ցանկացել է հաւաքել Պտղոմէի գրուածքները։

Այս կոպիտ ու անհեթեթ սխալները եւս մի նոր ապացոյց են, անշուշտ, որ Ստորոգութեանց համառօտ հատուածի հեղինակը Դաւիթ փիլիսոփան չէ, այլ մի ուրիշ անվարժ ու կիսահմուտ մեկնիչ։

§ 22. **Նոր տեղեկութիւններ Արիստոտէլի Վերլուծականքի մեկնութեան ու նրա հեղինակի մասին։** — “Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ„ հետազօտութեանս մէջ “Մեկնութիւն չորեքտասան գլխոց Արիստոտէլի ի Վերլուծականն„ հատուածը վերագրել էի Դաւթին։

Վերլուծականքի մեկնութիւնը Նորպղատոնական Դաւթի աշխատութիւն էի համարել, գլխաւորապէս, այն պատճառով, որ այդ գրուածքում թէ տրամաբանական հասկացողութիւնները եւ թէ դրանց մեկնութեան ու բացատրութեան եղանակը նոյնն են, ինչ որ Դաւթի Ներածութեան մեկնութեան եւ Սահմանք իմաստասիրութեան երկերում։ Բացի այդ՝ մատնանիշ էի արել նաեւ մի քանի հատուածներ, որոնք այդ գրուածքներում գրեթէ բառացի նման են[1]։

Այդ եզրակացութիւնը թւում է ինձ այժմ կարօտ վերաքննութեան։ Դաւթի մասին վերոյիշեալ հետազօտութիւնս գրելու ժամանակ՝ ես դեռ եւս ծանօթ չէի Եղիասին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեանը, ոչ էլ Անանունի Ստորոգութեանց մեկնութեան հատուածին։

---

1 Տես “Դաւիթ Անյաղթի խնդիրը„, էջ 10—11։

Այս վերջին մեկնութիւնների քննութիւնը ցոյց է տալիս, որ իմաստասիրական գաղափարների ու մտքերի նմանութիւնն Ոլիմպիոդորո-Ելիասի խմբին պատկանող մեկնութիւններում, եւ նոյն իսկ ամբողջ հատուածների նոյնութիւնը՝ չեն կարող, ընդհանրապէս, կռուան ու հիմք ծառայել որոշելու նոյն մեկնութիւնների հեղինակների խնդիրը։

Դրա պատճառը շատ պարզ է։

Ամմոնիոս-Ոլիմպիոդորոսի խմբին պատկանել են զանազան մեկնիչներ, որոնք աշակերտելով մեկը միւսին՝ գրի են առել նախ եւ առաջ իրանց ուսուցիչների դասախօսութիւնները, եւ երբեմն կցել այդ նիւթին քաղուածքներ միւս մեկնիչների գրուածքներից։ Իմաստասիրական այս մեկնութիւնները ինքնուրոյն ու անհատական ստեղծագործութեան արդիւնք չեն։ Նրանց մէջ, համեմատաբար, քիչ կան հատուածներ ու մտքեր, որոնք պատկանէին աշակերտ-մեկնիչի սեփական գրչին։

Լինելով մեկը միւսի աղբիւր՝ այս մեկնութիւնները պարունակում են իրանց մէջ նման իմաստասիրական սկզբունքներ եւ բազմաթիւ նման հատուածներ, եւ սովորական այդ նմանութիւնները բնաւ չեն որոշում այս կամ այն հատուածի անմիջական աղբիւրը, այլ միայն մատնանշում են դոցա Ամմոնիոս-Ոլիմպիոդորեան խմբին պատկանելը։

§ 23. Վերլուծականքի մեկնութեան համեմատութիւնը Դաւթի, Ամմոնիոսի եւ Ոլիմպիոդորոսի Ելիասի մեկնութիւնների հետ։ — Վերլուծականքի

մեկնութեան հայերէն թարգմանութիւնը՝ թէ իր բովանդակութեամբ եւ թէ իմաստասիրական մեկնական ուղղութեամբ պատկանում է, անտարակոյս, Ամմոնիոս-Ոլիմպիոդորեան մեկնութիւնների խմբին։ Իսկ թէ այդ խմբին պատկանող ո՛ր մեկնիչի աշխատութիւնն է, այդ խնդիրն այնպէս էլ հեշտ չէ լուծւում, ինչպէս կարծում էի վերոյիշեալ հետազօտութեանս մէջ։

Նման հատուածներ կան Վերլուծականքի մեկնութեան մէջ Դաւթի, Ամմոնիոսի, Ոլիմպիոդորոսի ու Էլիասի հետ։ Այդ նման հատուածները, որ ներքեւ առաջ ենք բերում, ապացուցանում են միայն Վերլուծականքի մեկնութեան Ամմոնիոս-Ոլիմպիոդորեան խմբից լինելը, իսկ թէ արդեօք այդ հատուածների անմիջական աղբիւրը ստորեւ յիշուած մեկնիչների երկերն են, թէ նոյն խմբին պատկանող այլ մեկնութիւններ, այդ հարցն, ինչպէս վերեւ բացատրեցինք, մնում է անորոշ։

Ի նկատի առնելով, որ Վերլուծականքի մեկնութեան յունարէն բնագիրը կորած է համարւում, եւ այդ տեսակէտից, նրա հեղինակի խնդիրն ունի առանձին կարեւորութիւն, նշանակում եմ ներքեւ այդ մեկնութեան բոլոր, իմ նկատած, նմանութիւններն Ամմոնիոս-Ոլիմպիոդորեան խմբի միւս մեկնիչների հետ։

| | |
|---|---|
| Մեկն. ի Վերլ., էջ 558. | Ammonii in Anal., p. 2.[1] |
| "Բայց ոմանք ասեն՝ եթէ երեք են տեսակք հաւաք- | *Νῦν δὲ διάφορά ἐστιν εἴδη συλλογισμῶν· οἱ μὲν* |

[1] Ammonii in Aristotelis Analyticorum priorum

մամն, ապացուցական տրա–
մաբանական, իմաստական
են„։

γάρ εἰσιν ἀποδεικτικοί, οἱ δὲ διαλεκτικοί, οἱ δὲ σοφιστικοί.

Մեկն. ի Վերլ., էջ 563.

"Բայց Վերլուծականք մակագրեցան և ոչ շարադրականք. վասն երկուց պատճառաց. նախ և առաջին, վասն զի առաւագոյն է վերլուծութիւն քան զշարադրութիւն. զի որ վերլուծանելն կարող գոյ, նա և շարադրել. բայց ոչ որ շարադրելն գիտէ՝ նա և վերլուծանել„։

Ammonii In Anal., p. 8.

Τί δήποτε οὐ Συνθετικὰ ἐπέγραψεν οὐδὲ Εὑρετικὰ ἀλλὰ Ἀναλυτικά, τίς ἡ ἀποκλήρωσις; καὶ λέγομεν ὅτι ἀπὸ τοῦ ἐπιστημονικωτέρου καὶ τοῦ τιμιωτέρου· ὁ γὰρ εἰδὼς ἐπιστημονικῶς ἀναλῦσαι καὶ συνθεῖναι οἶδεν, οὐ πάντως δὲ ὁ εἰδὼς συνθεῖναι καὶ ἀναλῦσαι.

Մեկն. ի Վերլ., էջ 586.

"Սոյն սորին պայօրինակ տարաձայնեցան առ միմեանս Մաքսիմոս ու Հայեցի աշակերտ Ամլիքոսի և Թեմիստոս. քանզի և Թեմիստոս ուշ ունելով բաժանման հաւաքմանցն՝ զոմանս աւարտունս կոչէր. որք յառաջնումն ձեւում, իսկ զոմանս անաւարտ որք յերկրորդումն և յերրորդումն։ Իսկ Մաքսիմոս ուշ ունելով առհմանումն ունողումն զանկատան զամենայն բաղ–

Ammonii in An. p. 31.

Τούτῳ ἠκολούθησεν Πορφύριος καὶ Ἰάμβλιχος, ἔτι μέντοι καὶ ὁ Μάξιμος, <ὃς> ἀκροατὴς ἦν Ἱερίου τοῦ Ἰαμβλίχου ἀκροατοῦ. Καὶ Θεμίστιος δὲ ὁ παραφραστὴς τῆς ἐναντίας ἐγένετο δόξης τῆς καὶ τῷ Ἀριστοτέλει δοκούσης, τούτοις οὖν τοῖς δύο, τῷ τε Μαξίμῳ καὶ τῷ Θεμιστίῳ, ἐναντία περὶ τούτου δοξάζουσιν καὶ κατασκευάζουσιν, ὃς ᾤοντο, τὸ δοκοῦν αὐτοῖς [καὶ]

---

librum I commentarium. Ed. M. Wallies, Berol. 1890. Commentaria in Aristotelem graeca, vol. IV. pars VI.

հաւաքումն աւարտուն կոչէր։ Եւ յաղագս այսորիկ ածին դատաւոր զՅուլիանոս թագաւոր՝ որ զյաղթութիւնն իւր Մաքսիմոսումն”։

διήτησεν αὐτὰ ὁ βασιλεὺς Ἰουλιανός, καὶ δέδωκεν τὴν ψῆφον Μαξίμῳ καὶ Ἰαμβλίχῳ καὶ Πορφυρίῳ καὶ Βοηθῷ.

*Մեկն. ի Վերլ., էջ 564.*

Olympiodori Prol., p. 14[1].

“Ամենայն իրում պիտոյանայ արուեստ ինչ, եւ կամ մակացութիւն, եթէ ոչ է այլոյ արուեստի մասին, եւ կամ մասնիկ նորին. իսկ պիտացելոցն մասն է, կամ մասնիկ, քանզի տածականումն՝ պիտանանայ բժշկականութիւն. որ ոչ է այլոյ արհեստի մասն կամ մասնիկ. հարկ է նորին բժշկականութեան մասն գոլ եւ կամ մասնիկ” եւն մինչեւ, էջ 563, տ. 14։

*Πᾶν, ᾧ κέχρηταί τις ἢ τέχνη ἢ ἐπιστήμη, ἐὰν μὴ ἢ ἑτέρας τέχνης ἢ ἐπιστήμης <ἢ μέρος ἢ μόριον αὐτῆς τῆς κεχρημένης> ἢ μέρος ἢ μόριόν ἐστιν. οἷον ὡς ἐπὶ παραδειγμάτων· τῆς ἰατρικῆς τέχνης μέρος ἐστὶ τὸ διαιτητικόν, καὶ οὐδαμῶς ἑτέρας τέχνης ἢ ἐπιστήμης μέρος ἢ μόριον ἐστι· τῆς ἰατρικῆς ἄρα τέχνης τὸ διαιτικὸν μέρος ἐστί, καὶ αὕτη μόνη κέχρηται αὐτῷ, κτλ.*, p. 18, 18[2].

*Մեկն. ի Վերլ., էջ 568.*

Olymiod. Prol., p. 18.

“Քանզի ոչ կալաւ պէտս Պղատոն ապացուցականումն Արիստոտէլի, այլ Արիստոտէլ Պղատոնումն, զի ասցէ ի նմանէ սերմանիս. ոչ պիտացաւ եւ Հո-

*Οὐδὲ γὰρ ἀποδεικνὺς ἐκεῖνος τῆς Ἀριστοτέλους ἀποδεικτικῆς μεθόδου ἐδεήθη, ἀλλὰ τοὐναντίον Ἀριστοτέλης τῆς Πλάτωνος ἀποδείξεως. οὕτω γοῦν καὶ*

---

1 Olympiodori Prolegomena et in Categorias commentarium, ed. A. Busse, Berol. 1902. Commentaria in Aristotelem graeca, vol. XII, pars I.

2 Հմմատէ նաեւ Ammonii in Anal., էջ 8, 15—11, 21.

մերոս յաղագս քերթողականութեան Արիստոտէլի, այլ Արիստոտէլ Հոմերոսում, ոչ պիտացաւ եւ Դեմոսթենէս վրճարանութեանց Հերմոգինի, այլ Հերմոգինէս նմա»։

Ὅμηρος καὶ Δημοσθένης οὐκ ἐδεήθησαν οὔτε τοῦ Περὶ ποιητικῆς Ἀριστοτέλους οὔτε τῆς Ἑρμογένους τέχνης, ἀλλὰ τοὐναντίον αὐτοὶ τούτων ἐδεήθησαν.

*Մեկն. ի Վերլ., էջ 558.*

«Նաեւ պարտ է գիտել՝ եթէ հինգ են տեսակք հաւաքմանց. ապացուցական, տրամաբանական, ճարտասանական, իմաստական, քերթողական, որ եւ առասպելաբանութիւն։ Բայց հինգ են վասն այսր պատճառի. որոյ անուն եւ գիծն (°) կամ ամենեւին ճշմարտեն, եւ լինի ապացուցականն. կամ ամենեւին ստեն, եւ լինի քերթողականն. եւ կամ է ինչ որ ճշմարիտ, եւ է ինչ որ սուտ։ Եւ թէ հաւասարք են միմեանց ճշմարիտն եւ սուտն՝ լինի ճարտասանականն. եւ ճարտասանականութիւն միայնում ասին գոլ կացմունք եւ վէճք եւ անվէճք, առ ի նոցանէ միայն եղանակելիք։ Իսկ եթէ առաւել է ճշմարիտն քան զսուտն՝ լինի տրամաբանականն. իսկ եթէ առաւել է սուտն քան զճշմարիտն՝ լինի իմաստականն»։

*Ելիաս, Մեկն. Ստոր.. էջ 17.*

«Քանզի հինգ են տեսակք շարաբանութեան՝ այսինքն ապացուցի՝ ապացուցականն, տրամաբանականն, ճարտասանականն, իմաստականն, քերթողականն։ Եւ յիրաւի հինգ են, վասն զի նախադասութիւնքն ուստի լինին հինգ են. քանզի կամ ամենեւիմբ ճշմարիտ են առաջարկութիւնքն եւ առնեն զապացուցականն. եւ կամ ամենեւիմբ սուտ են եւ առնեն զքերթողականն զառասպելուտն, կամ է ինչ որ ճշմարիտ եւ է որ սուտ, եւ այս եռակի՝ կամ առաւել ունի զճշմարիտն եւ առնէ զառաջնոցն տրամաբանականն, եւ կամ առաւել ունի զսուտն քան զճշմարիտն եւ առնէ զիմաստական ապացոյցն, եւ կամ հանգէտս միմեանց զսուտն եւ զճշմարիտն եւ առնէ զճարտասանականն։

| | |
|---|---|
| | Ուստի կացմունք ճարտա-սանին միայն անսանին վասն հանգիստանալ միմեանց ճըշ-մարտին եւ սուտին»։ |
| *Մեկն. ի Վերլ., էջ 563.* | Elias in Cat., p. 133[1]. |
| Նախ եւ առաջին՝ եթէ քառասուն գրոց գտելոց հաւաքմանցն ի հին գրա-նոցան չորք միայն պարզիկ գիրք ընտրեցան գոլ Արիս-տոտէլի։ | *Τεσσαράκοντα γὰρ βιβλίων εὑρεθέντων ἐν παλαιαῖς βιβλιοθήκαις τῶν ᾿Αναλυτικῶν καὶ δύο τῶν Κατηγοριῶν τέσσαρα μόνα τῶν ᾿Αναλυτικῶν ἐκκρίνουσι καὶ τῶν Κατηγοριῶν ἕν.* |
| *Մեկն. ի Վերլ. էջ 559, 1—24.* | *Սահմ. իմաստ., էջ 185, 1—186, 5.* |
| *Մեկն. ի Վերլ. էջ 559, 30—35.* | *Սահմ. իմաստ., էջ 214, 29-32.* |
| *Մեկն. ի Վերլ. էջ 565. 15—18* | *Սահմ. իմաստ., էջ 191. 21-26.* |
| *Մեկն. ի Վերլ. էջ 584. 1—17.* | *Դաւ. Պորփ. Վերլ. էջ 259, 3—260, 2.* |

§ 24. Վերլուծականի մեկնութիւնն աւելի հաւանական է ընդունել Ոլիմպիոդորոս-Էլիասի աշխատութիւն, քան Դաւթի։ — *Բոլոր այս հատուածները, հաստատելով Վերլուծականքի մեկնութեան Ամմոնիոս-Ոլիմպիոդորոսի խմբին պատկանելը, բնաւ չեն պարզում, թէ ով է այդ մեկնութեան հեղինակը։*

---

1 Համեմատէ նաեւ Էլիասի հայերէն թարգմանութիւնը, էջ 40 եւ Ոլիմպիոդորի Prolegom., էջ 24. 14—16 «*φασὶν ὅτι εὑρέθησαν ἐν ταῖς βιβλιοθήκαις μετὰ τὴν τελευτὴν αὐτοῦ τῶν μὲν ᾿Αναλυτικῶν μ' καὶ β' βιβλία, τῶν δὲ Κατηγοριῶν β'*»...

Այդ խնդիրը լուծելու համար հարկաւոր են ուրիշ տուեալներ ու փաստեր, որ գրեթէ չկան։

Բնորոշ է միայն ու ուշադրութեան արժանի, որ Վերլուծականքի մեկնութիւնը բաժանուած է պրակների եւ ամէն մի պրակ սկսւում է “ընդ այսոսիկ հանդերձ Աստուծով եւ առաջիկայ պրակք„ բառերով։ Ճիշտ այնպէս, ինչպէս եւ Նորպղատոնական Դաւթի ու Էլիասի մեկնութիւնները։ Համապատասխան՝ ἐν οἷς σὺν θεῷ καὶ ἡ παροῦσα πρᾶξις վերնագրերը կան Դաւթի ու Էլիասի եւ յունարէն բնագրերում։ Հերմիասի որդի Ամմոնիոսի յունարէն մեկնութիւնները բաժանուած չեն գլուխների, իսկ Ոլիմպիոդորոսի Ստորոգութեանց մեկնութեան յունարէն բնագիրը բաժանուած է “տեսութիւնների„, այլ ոչ “պրակների„։

Անանուն մեկնիչի Ստորոգութեանց մեկնութեան հայերէն հատուածը նմանապէս բաժանուած է “տեսութիւնների„։

Ահա այս հանգամանքը թերեւս մի նշան համարուի, որ Վերլուծականքի մեկնութիւնը Ամմոնիոս-Ոլիմպիոդորեան խմբից լինելով, պատկանում է այդ խմբի Դաւթի ու Էլիասի ճիւղին։

Սակայն Դաւիթ մեկնիչին այդ մեկնութիւնը վերագրելը ինձ թւում է այժմ անհաւանական հետեւեալ պատճառով։

“Ներածութեան Վերլուծութեան„ իր առաջաբանում (պրակ դ, էջ 263, 21—26) Դաւիթը հարց է դնում, թէ “յի՞նչ մասն իմաս-

տասիրութեան վերաբերի առաջիկայ շարադրութիւնը„, այս ինքն՝ Պորփիւրի Ներածութիւնը։ “Եւ գիտելի է, — ասում է նա —, թէ ի բանական մասն իմաստասիրութեան վերաբերի առաջիկայ շարադրութիւնս։ Իսկ բանականն, եթէ մասն է իմաստասիրութեան, եւ եթէ գործի, ի Ստորոգութիւնսն Արիստոտէլի ուսցուք։„

Նոյն հարցը դնում է նաեւ Եղիասը, սակայն նա խոստանում է նաեւ խնդիրը քննել ոչ թէ Ստորոգութեանց, այլ Վերլուծականքի մեկնութեան մէջ։ Δειχθήσεται γὰρ σὺν θεῷ ἐν τοῖς Ἀναλυτικοῖς, — ասում է Եղիասը —, ὅτι ἡ λογικὴ οὐ μέρος τῆς φιλοσοφίας, ἀλλ' ὄργανον (Elias, in Porph. Is., էջ 26)։ Նաեւ էջ 39։ ἀνάγεται δὲ ὑπ' οὐδὲν μέρος τῆς φιλοσοφίας, ἀλλ' ὑπὸ τὸ ὄργανον αὐτῆς, φημὶ τὴν λογικήν, ὡς δειχθήσεται σὺν θεῷ ἐν τῇ Ἀποδεικτικῇ.

Արդ՝ բանականի մասին, թէ արդեօք նա մասն է թէ գործի իմաստասիրութեան, ընդարձակ բացատրութիւն կայ Վերլուծականքի մեկնութեան հայերէն թարգմանութեան մէջ՝ պրակք գ եւ դ, էջ 564—569։ Այս հանգամանքը ցոյց է տալիս, որ այդ մեկնութիւնն աւելի շուտ Եղիասին կարելի է վերագրել, քան Դաւթին։

Սակայն միակ այդ փաստը, թէեւ որոշ կռուան է Վերլուծականքի մեկնութիւնն Եղիասին վերագրելու, բայց այդ ենթադրութիւնը հաստատելու համար հարկաւոր են եւ ուրիշ վկայութիւններ, որ թերեւս գտնուեն իմաստասիրական մեկնութիւնների յունական ձեռագրերում։

§ 25. **Դաւիթ Անյաղթին վերագրուող Ստորոգութեանց եւ Ցաղագս մեկնութեան գրոց մեկնութիւնները եւ նրանց վերնագրերը ձեռագրային յիշատակարաններում։** “Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ” աշխատութեանս մէջ ցոյց էի տուել, որ Ստորոգութեանց եւ Ցաղագս մեկնութեան գրոց Դաւիթ Անյաղթին վերագրուող մեկնութիւնները ոչ թէ Դաւթի, այլ անյայտ ինչ որ մեկնիչի աշխատութիւնն է։

Վիեննայի Մխիթարեանների թիւ 112 ձեռագրում այդ մեկնութիւնները վերագրւում են Ամելաւխոյս եւ Անտոնիոս Էրմիս մեկնիչներին[1]. Ստորոգութեանց մեկնութեան սկիզբը մինչեւ “Ցաղագս տրընչի” համարւում է “լուծմունք ի Ամելաւխոյսի ասացեալ”, իսկ տրընչի մեկնութիւնից սկսած մինչեւ վերջը՝ Անտոնիոս Էրմիս մեկնիչի աշխատութիւն։ Արիստոտելի “Ցաղագս մեկնութեան” գրոց մեկնութիւնը թիւ 112 ձեռագրում վերագրւում է նմանապէս Ամելախոյսին եւ ունի հետեւեալ վերնագիրը՝ “մեկնութիւն Ամելախոյսի ասացեալ”։

Այս վերնագրերը չեն կարող անշուշտ մտացածին լինել, այլ արտագրուած են, ըստ երեւոյթին, հնագոյն ձեռագրից եւ միանգամայն վաւերական պէտք է համարուեն։ Վենետիկի հրատարակութեան մէջ, ինչպէս եւ բազմաթիւ ձեռագիրներում, նոյն երկերի սովորական վերնագրերն են՝ “Ստորոգութիւնք Արիստոտէլի թարգ-

---

1 Տե՛ս Հ. Յ. Տաշեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, էջ 389—393։

մանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ„ (Վենետ., էջ 409) եւ Ստորոգութեանց մեկնութեան վերջում՝ (էջ 458)՝ “կատարեցաւ տասն Ստորոգութիւնսն ասացեալ յեռամեծէն յԱրիստոտէլէ, որ ասի ըստ յունարէն ձայնի կատիղորիաս, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ Ներգինացւոյ„, Պերիարմէնիաս կամ Ցաղագս մեկնութեան գրոց մեկնութեան սկզբում (էջ 487)՝ “Պէրիարմէնիաս Արիստոտէլի թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ„։

Որ բոլոր այս վերնագրերը հետագայ ժամանակներում են կազմուած, այդ երեւում է նոյն մեկնութիւնների հնագոյն հայ ձեռագրերից։ Էջմիածնի մատենադարանի համար 1943 ձեռագրում, որը գրուած է 1255 թուին՝ Ստորոգութեանց մեկնութիւնն ունի հետեւեալ վերնագրերը. “Ստորոգութիւնք Արիստոտէլի որ կոչի յունարէն կատիղորիս„ (էջ 1ա), իսկ Պէրիարմէնիաս գրոց մեկնութեան վերնագիրն է “Ցաղագս մեկնութեան, որ կոչի Պերիարմէնիաս, ասացեալ Արիստոտէլի„ (էջ 141ա)։ Այս վերջին վերնագիրը պարզ կարդացւում է, սակայն մի նոր գրիչ հետագայ ժամանակներում հին վերնագրի վրայ նօտր գրով եւ ուրիշ թանաքով գրել է սովորական նորագոյն վերնագիրը՝ “Սկիզբն եւ նախադասութիւն (*) գրոցն, որ ասի ըստ յունաց Պերիարմէնիաս եւ հայերէն Ցաղագս մեկնութեան, արտադրեալ ի մեծ իմաստնոյն Արիստոտէլէ, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթայ Ներգինացւոյ (էջ 141ա)։ Էջմիածնի

մատենադարանի 1275 թուի համար 1889 ձեռագիրը, համապատասխան վերոյիշեալ թ. 1943 ձեռագրին՝ Ստորոգութեանց մեկնութեան վերնագրում նոյնպէս չէ յիշատակում Դաւթին, որպէս մեկնութեան հեղինակ։ թ. 1889 ձեռագիրն ունի Ստորոգութեանց մեկնութեան նոյն վերնագիրը, ինչ որ թ. 1943 ձեռագիրը. «Ստորոգութիւնք Արիստոտէլի, կոչի յունարէն կատիլօրիա (°)» (էջ 181ա)։

Էջմիածնի մատենադարանի թ. 1889 եւ 1943 ձեռագիրները, որքան ինձ յայտնի է, Դաւթին վերագրուող Ստորոգութեանց մեկնութեան հնագոյն ձեռագիրներն են, եւ խիստ ուշագրաւ է այն հանգամանքը, որ այդ ձեռագիրների վերնագրում բնաւ չէ յիշւում Դաւիթ Ներգինացու անունը, որը նորագոյն ձեռագիրներում միայն համարւում է «Թարգման եւ մեկնիչ» Ստորոգութեանց ու Պէրիարմէնիասի։

Յովհաննէս Որոտնեցին Ստորոգութեանց ու Պէրիարմէնիասս գրոց իր լուծմունքներում նոյն մեկնութիւններից յաճախ օգտւում է ու ընդարձակ հատուածներ քաղում, բայց նա եւս այդ երկերը Դաւիթ Ներգինացուն չէ վերագրում, այլ համարում է անյայտ մեկնիչի աշխատութիւն, եւ անորոշ կերպով մատնացոյց է անում իր աղբիւրը՝ «զոր յայտնէ մեկնիչն», «որպէս մեկնիչդ» եւ այլ նման դարձուածքներով (տես Էջմիածնի թ. 1834 ձեռագրերը)։

Այս բոլորից երեւում է, որ Ստորոգութեանց ու Պէրիարմէնիասի մեկնութիւնների

Դաւիթ Ներգինացուն վերագրելը պետք է համարել հետագայ ժամանակների ենթադրութիւն։

§ 26. Յովհաննես Որոտնեցու վկայությունները Նոմելախոսս Մեկնիչի մասին։ — Յովհաննէս Որոտնեցու Արիստոտէլի Ստորոգութեանց լուծմունքում[1] յիշում է ոմն Նոմէլախաւս մեկնիչը, որին վերագրւում են հետեւեալ լուսաբանութիւնները փաղանուն եւ յարանուն խօսքերի մասին.

ա. “Իսկ վասն էր զհոմանունս նախ դասէ քան զփաղանունն՝ այս վասն երեք պատճառի. նախ զի ի թիւս միակն նախ է քան զերկեակն, իսկ հոմանունն նմանի միակի, զի միայն անուամբ է հաղորդեալ։ Իսկ փաղանունն է երկակի, զի անուամբ եւ իրաւք է հաղորդեալ։ Երկրորդ՝ զի հոմանունն առաւել պարզ է վասն միութեանն, իսկ փաղանունն է բաղադրեալ, վասն որոյ երկրորդ դասեցաւ. այս ըստ Նոմէլախաւսին...„

բ. “Նախ զի հոմանունն, որ նմանեցաւ միակին՝ առաջին եդաւ, իսկ փաղանունն, որ է երկեակ՝ երկրորդ եդաւ։ Իսկ յարանունն է ըստ Օլոմպիադորոսին ի չորից, որպէս ասացաք, եւ ըստ Նումէլախաւսին է յերից. յիրաւի ապա ի յետոյ դասեցաւ քան զնոսա„։

---

[1] “Ընտանեծի Յովհաննու Հայոց փիլիսոփայի եւ վարդապետի ի Հաւաքումն համառօտ վերծանութեան Ստորոգութեանցն Արիստոտէլի ի Գրիգորէ աշակերտէ„ (Ձեռագ. Էջմ. մատեն., թ. 1834)։

Այս հատուածներից առաջինը մեծ նմանութիւն ունի Ամեղախոյսի Ստորոգութեանց լուծմունքի սկզբի հետեւեալ տողերի հետ, որ Վիեննայի թ. 112 ձեռագրից քաղուածօրէն առաջ է բերել Հ. Յ. Տաշեանը իր հրատարակած Ցուցակում, էջ 389. «Իսկ Նախադասի համանունութիւնն սակս պարզութեան. իսկ բաղադրեալքն յերկրորդէն՝ յորոց բաղադրին, ապա ուրեմն առաջինք են պարզքն բաղադրեցելոցն մեկնակք»:

Երկրորդ հատուածի վկայութիւնը եւս համապատասխանում է Ամեղախոյսի նոյն լուծմունքին, որովհետեւ իրաւ որ Ամեղախոյսը յարանունութիւնը սահմանում էր յերիցս, իբր «կցորդութիւն անուան եւ իրաց ըստ փոխաձեւութեան յանկական փաղառութեանցն[1]»:

Յովհաննէս Որոտնեցու գրուածքում Նոմեղախաւսին վերագրուած վկայութիւնների աղբիւրն է ըստ երեւոյթին Ամեղախոյսի Լուծմունքը եւ նրա յիշատակած Նոմեղախաւս կամ Նումեղախաւս անունը պէտք է ամենայն հաւանութեամբ ընդունել, որպէս Ամեղախոյս անուան համապատասխանող աղճատ ընթերցուած:

Եթէ մեր այս դիտողութիւնները Նոմեղախաւսի անձի մասին ուղիղ լինեն, այդ դէպքում պէտք է եզրակացնել, որ Յովհաննէս Որոտնեցին եւս, ինչպէս Վիեննայի թ. 112 ձեռագիրը, Դաւիթ Ներգինացուն վերագրուած

---

1 Տես «Մեկնութիւն Ստորոգութեանց», Վենետ. 1833, էջ 415:

*Ստորոգութեանց մեկնութիւնը համարել է Ամբլախոյսի աշխատութիւն։*

§ 27. Դաւիթ Անյաղթին վերագրուող Ստորոգութեանց եւ Ցուցակ մեկնութեան գրոց հեղինակի «Ամբլախոյս» անունը աղճատուած է յունական Ἰάμβλιχος անուան։ — *Վերոյիշեալ դիտողութիւնները, ինչպէս եւ այն պատճառաբանութիւնները, որ առաջ էի բերել “Դաւիթ Անյաղթի խնդիրը Նոր լուսաբանութեամբ„ աշխատութեանս մէջ, պարզ ու որոշ ցոյց են տալիս, որ Արիստոտէլի “Յաւլագս մեկնութեան„ ու “Ստորոգութեանց„ մեկնութիւնները, որոնք Նորագոյն ձեռագիրներում վերագրուել են սխալ ենթագրութեամբ Դաւիթ Ներգինացուն, Ամբլախոյս եւ Անտոնիոս Իրմիս մեկնիչների աշխատութիւնն են։*

*Մնում է այժմ պարզել, թէ ով են այդ մեկնիչները, որոնք յիշատակուած են Վիեննայի թ. 112 ձեռագրում։*

*Ամբլախոյս անունը հանդիպում է հայ մատենագրութեան մէջ նաեւ “Լուծմունք Պրոկղի Դիադոխոսի անուանեցելոյ աստուածաբանութեանց„ երկում, որ 1248 թուին վրացերէնից թարգմանել է հայերէնի Սիմէոն կրօնաւորը։ Այդ Լուծմունքը վրացական աւանդութիւնը համարում է Յովհաննէս Պետրիցոնելու գործ, իսկ հայ ձեռագիրների վերնագրի համաձայն նոյն Լուծմունքը վերագրւում է ում “Ամբլաւխաւս„ իմաստասիրին։ Նոյն Լուծմունքի եւ Ստորոգութեանց ու Պէրիարմէնիաս գրոց մեկնիչները,*

ինչպէս կը տեսնենք, տարբեր անձնաւորութիւններ են, բայց հետաքրքիր է ու ուշադրութեան արժանի, որ այդ հեղինակների անունը միակերպ է աղճատուած երկու դէպքում էլ։ Պրոկղի Լուծմունքի ձեռագիրներում "Ամելաւխաւս„ անուան համար կան եւ ուրիշ ընթերցուածներ՝ "Հոմելախոս, Ցոմիլախոս, Ոմիլախոս, Ամելախոս, Յոմելախոս եւ Յամելախոս[1]„։

Ինչպէս Վիեննայի Թ. 112 ձեռագրի "Ամելախոյս„ կամ "Ամելաւխոյս„ ընթերցուածը, նոյնպէս եւ բոլոր առաջ բերուած ընթերցուածները, պարզապէս աղճատումն են ինչ որ անուան, որն անսովոր եւ անծանօթ է եղել հայ գրիչների համար։

Հ. Յ. Տաշեանը կարծում է, որ վերոյիշեալ ընթերցուածները պէտք է ենթադրել յունական ’Ιάμβλιχος կամ ’Αμφίλοχος անուան աղճատումներ։ Ինձ թւում է սակայն, որ այդ ընթերցուածները աղճատումն են, հաւանաբար, ’Ιάμβλιχος եւ ոչ ’Αμφίλοχος անուան, որովհետեւ ընթերցուածներից շատերն ունեն սկզբում Յ տառը եւ "Յոմելախոս„, "Յոմելախոս„, "Ցոմելախոս„ եւ "Հոմելախոս„ ընթերցուածներն անհաւանական է ենթադրել ’Αμφίλοχος անուան աղճատումներ։

Բացի այդ՝ Արիստոտէլի մեկնիչների շարքում ’Αμφίλοχος անունով մեկնիչ ոչ մի տեղ

---

[1] Տես Հ. Յ. Տաշեան, Պրոկղի Դիադոխոսի շաղկապք աստուածաբանականք, էջ 33—34 եւ Н. Марръ, Іоаннъ Петрицскій, С. Пет. 1909, էջ 14 եւ 32։

չկայ յիշատակուած, իսկ Յամբղիքոս իմաստասէրի մասին կը տեսնենք, կան վկայութիւններ, որ նա յիրաւի գրել է Պղատոնի ու Արիստոտէլի երկերի մեկնութիւններ։

**§ 28. Յամբղիքոսի յիշատակութիւնը Դաւթի եւ Էլիասի մեկնութիւններում։** — Դաւթի ու Էլիասի մեկնութիւններում ի թիւս այլ մեկնիչների յիշւում է նաեւ Յամբղիքոսը, որպէս Արիստոտէլի Ստորոգութեանց մեկնիչ։

Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութիւնից գիտենք, որ Յամբղիքոսը՝ Հակառակ Աղէքսանդրոս, Պորփիւրիոս եւ Հերմինոս մեկնիչների տեսութեանց՝ պնդել է, որ Արիստոտէլի "Ստորոգութիւնք" երկը վերաբերում է թէ ձայնից, թէ մտածութեանց եւ թէ իրողութեանց քննութեանը[1]։ Նոյն կերպ նա բացատրում էր հոմանուն, փաղանուն եւ յարանուն իմաստասիրական գաղափարների նշանակութիւնը, ինչպէս երեւում է Էլիասի հետեւեալ հատուածից[2]։

"Յետ հոմանունց եւ փաղանունցն եւ յարանունցն, որոց իւրաքանչիւր ոք յայտ առնէր զՅամպղիքեան գիտաւորութիւնն յաղագս ձայնից գոլ պարզից՝ նշանակաւղաց զպարզ իրողութիւնսն ընդ մէջ պարզից մտածութեանց՝ գայ Արիստոտէլ եւ ի նոյն ինքն ի Ստորոգութիւնսն"։

---

1 Տե՛ս Elias, Ստորոգ. մեկն. յունարէն բնագիրը, էջ 129—130 եւ 136, 28—33, նաեւ Էլիասի հայերէն թարգմանութիւնը, էջ 43, 27—44, 10։

2 Էլիաս, Մեկն. Ստոր., էջ 57, 4—8. յունարէն բնագիրը էջ 144, 31—145, 2։

Նորպղատոնական Դաւթի Ներածութեան մեկնութիւնը եւս Ցամբղիքոսի մասին ունի հետեւեալ վկայութիւնը՝

“Ուսեալք յաղագս Պորփիւրի թէ ուստի, ուստի Ցամբղիքոս, յաղագս որոյ ասաց Պիւթիա, թէ աստուածային այրին եւ բազմուսումն փիւնիկեցին։ Բազմուսումն փիւնիկեցի զՊորփիւրիոս ասելով, եւ աստուածային այրի զԱմղիքոս, վասն զի աստուածաբանութեան միշտ պարապէր[1]„։

Իսկ Արիստոտէլի Վերլուծականքի մեկնութեան հայերէն թարգմանութիւնը վկայում է, որ Յուլիանոս Թագաւորի ժամանակակից Մաքսիմոս Ուռհայեցին աշակերտ էր “Ամլիքոսի[2]„։

Ինձ թւում է, որ Եղիասի Ստորոգութեանց մեկնութեան մէջ յիշուած Ցամբղիքոսը նոյն հռչակաւոր Յամբղիքոս ասորի փիլիսոփան է, որին Դաւիթն անուանում է “աստուածային„, իսկ Վերլուծականքի մեկնութիւնը համարում Մաքսիմոս Ուռհայեցու ուսուցիչ։

Արիստոտէլի Ստորոգութեանց եւ Պէրիարմէնիաս գրոց մեկնութիւնների հեղինակ “Ամելախոյսը„, որի անունը, ինչպէս ասացինք, աղճատումն է “Ցամբղիքոս„ անուան, կարծում եմ, որ նոյնպէս հռչակաւոր այդ Ցամբղիքոսն է, որն ըստ վերոյիշեալ վկայութիւնների յայտնի է եղել, որպէս ականաւոր մեկնիչ Արիստոտէլի երկերի։ Եղիասը մատ-

---

[1] Դաւիթ, Վերլուծ. Պորփ., էջ 262։

[2] Մեկն. ի Վերլուծ., էջ 586։

նանիշ է անում նոյն իսկ նրա մեկնական ուղղութեան հիմնական թերութիւնը եւ պատուիրում իր աշակերտներին՝ «ոչ կրակից լինել հերձուածոյ ումեք, որպէս Յամպղիքոսն եղեւ. քանզի սա կրակից եղեալ Պղատոնի՝ շնորհէ Արիստոտէլի ոչ ընդդէմ ասել Պղատոնի վասն տեսակացն, այլ մանաւանդ ձայնակցել[1]»։

§ 29. Որ «Ամլախոյսը» եւ Էլիասի յիշատակած «Յամբլիքոսը», միեւնոյն անձն են, այդ երեւում է նաեւ Ստորոգութեանց եւ Յաղագս մեկնութեան երկու մեկնութիւնների բովանդակութիւնից։ — Վերոյիշեալ մեր ենթադրութիւնը, որ Էլիասի յիշատակած Յամբղիքոս մեկնիչը եւ Դաւիթ Անյաղթին վերագրուած Ստորոգութեանց ու Պերիարմենիաս գրոց մեկնութիւնների հեղինակ «Ամլախոյսը» միեւնոյն անձնաւորութիւնն են, հաստատւում է «Ամլախոյսի» մեկնութիւնների բովանդակութեան քննութեամբ։

Յամբղիքոսը չէր ընդունում, ինչպէս ասացինք, Աղեքսանդրոս Ափրոդիսեցու, Պորփիւրիոս եւ Հերմինոս մեկնիչների կարծիքը Արիստոտէլի Ստորոգութեանց «դիտաւորութեան» մասին։ Աղեքսանդրոսը Ստորոգութեանց «դիտաւորութիւնը» բացատրում էր, իբր «ձայնից» միայն քննութիւն, Պորփիւրիոսը՝ «մտածութեանց», իսկ Հերմինոսը՝ «իրողութեանց», Յամբղիքոսը, հակառակ սրանց, կարծում էր, որ Ստորոգութեանց «դիտաւորութիւնն» է եւ

---

1 Մեկն. Ստոր., էջ 28։

«Ձայնից» եւ «մտածութեանց» եւ «իրողութեանց» քննութիւնը[1]։

Արդ՝ «Ամելախոյսի» Ստորոգութեանց Լուծմունքը սկզբից մինչեւ վերջը հաւատարիմ է մնում Ցամբլիքոսի այդ սկզբունքին եւ «Ամելախոյսը» մեկնում է Արիստոտէլի երկը, ելակէտ ունենալով հենց նոյն այդ տեսակէտը։

Դաւթի ու Էլիասի երկերում բազմաթիւ վկայութիւններ կան թէ հին եւ թէ իրանց ժամանակակից մեկնիչների երկերից, սակայն «Ամելախոյսի» Ստորոգութեանց եւ պերիարմէնիաս գրոց մեկնութիւններում յիշւում են միայն մի ոմն Դեմոս, որը հաւանաբար Սուիդասի յիշատակած քերական Եւդեմոսն է (երրորդ դարի հեղինակ Ք. յ.) եւ հռչակաւոր Աղեքսանդրոս Աֆրոդիսեցին, որն ապրել է երկրորդ դարի վերջում եւ երրորդ դարի սկզբում Քրիստոսից յետոյ։ «Ամելախոյսի» մեկնութիւններում չենք հանդիպում քաղուածքների ու վկայութիւնների Աղեքսանդրեան դպրոցի նորագոյն մեկնիչների երկերից։ Այս հանգամանքը կարող է անշուշտ նշան համարուել այդ մեկնութիւնների հնութեան։ Եթէ «Ամելախոյսը» Պորփիւրիոսի աշակերտ Ցամբլիքոսն է, այդ դէպքում ըստ ինքեան հասկանալի է, թէ ինչու Ստորոգութեանց եւ պերիար-

---

[1] Փոխանակ «Ձայնից, մտածութեանց եւ իրողութեանց» տերմինների Ամելախոյսի թարգմանը գործ է ածում «Ձայն, իմացումն եւ իր»։ Լեզուի այս տարբերութեան խնդիրը յատուկ քննութեան ենք առնելու այն աշխատութեան յաջորդ մասում։

մէնիաս գրոց մեկնութիւններում, որոնք գրուած պիտի լինին չորրորդ դարի սկիզբներում, չէին կարող յիշուել հինգերորդ դարի մեկնիչներ։

Նշանաւոր Ցամբլիքոս ասորին, որ Պորփիւրիոսի աշակերտն էր Հռոմում, շատ հաւանական է, որ գրած լինէր Արիստոտէլեան երկերի մեկնութիւններ, ինչպէս ենթադրում է Վ. Վինդելբանդը իր "Հին փիլիսոփայութեան պատմութեան" մէջ[1]։

Urbinas 35 յունական ձեռագրում, որի մէջ հաւաքուած կան քաղուածքներ զանազան մեկնիչների երկերից, գտնւում է մի հատուած Ցամբլիքոսից, որ յիշում է Ա. Բուսսէն Էլիասի յունարէն հրատարակութեան առաջաբանում (էջ XXI)։ "Maximam autem admirationem mihi movit, — ասում է Բուսսէն —, Jamblichi nomen expositioni quae est de substantia praepositum (f. 28ᵛ): *ἐκ τῶν ἰαμβλίχου. ἀπορήσειεν ἄν τις, πῶς οὐχὶ καὶ ἄλλοις πλείοσιν ὑπάρχει τοῦτο τὸ ἴδιον κτλ.* Sed accuratius quaerenti mihi persuasum est illam notam omni fide carere. Nam quae sequitur interpretatio ex Simplicii commentario videtur excerpta esse eodemque ex fonte Jamblichi nomen haustum"։

Ա. Բուսսէն այդ հատուածը վերագրում է Սիմպլիկիոսին, որովհետեւ նրան անյայտ է եղել, նոր այս ենթադրութիւնը, որ Սաորոգու-

---

1 Տե՛ս W. Windelband, Geschichte der alten Philosophie, Zweite Auflage, München 1894, էջ 223։

թեանց եւ Պերիարմենիաս գրոց մեկնութիւններ կարող էր գրած լինել նաեւ Յամբլիքոսը։ Սակայն “Ամեղախոյս„-Ցամբլիքոսի մասին վերոյիշեալ մեր դիտողութիւնները, որ հիմնուած են իմաստասիրական հայ ձեռագիրների վկայութիւնների վրայ, կարող են նոր լուծում տալ Արիստոտէլի մեկնիչների վերաբերեալ որոշ խնդիրներին, ուստի անհրաժեշտ է քննութեան առնել նորից յունական ձեռագիրները որոնք թերեւս հնարաւորութիւն տան վերջնականապէս պարզելու մեր յարուցած խնդիրը։

Եթէ Ստորոգութեանց եւ Պերիարմենիաս գրոց մեկնիչը Ցամբլիքոս ասորին է, պարզ է, որ նրան չի կարելի նոյնացնել Պրոկղի Դիադոխոսի լուծմունքի հեղինակ “Ամեղաւխաւս„-ի հետ, որովհետեւ ինքը Պրոկղը հինգերորդ դարի հեղինակ է։

§ 30. Մի քանի դիտողութիւններ “Ամեղախոյս„-Ցամբլիքոսի մեկնութիւնների բովանդակութեան մասին։ — “Ամեղախոյս„-Ցամբղիքոսի Ստորոգութեանց եւ Պերիարմենիաս գրոց Լուծմունքները գրի առնուած դասախօսութիւններ են, ինչպէս եւ Նորպղատոնական Դաւթի ու Էլիասի մեկնութիւնները։ Այդ պարզ երեւում է նոյն լուծմունքների ներքին բովանդակութիւնից եւ գրի առնողի յաճախ կրկնուող խօսքերից, ինչպէս՝ “ասացաւ մեզ յառաջագոյն„ (Մեկն. Ստոր., էջ 422), “յաղագս որոյ նայլս ճառելի է„ (էջ 431), “ճառեսցի յիւրում տեղւոջ„ (էջ 433), “ճառեցաւ մեզ„ (Մեկն. Պերիար., էջ 487), “որպէս

ունիմք ուսանել (էջ 500), "յառաջագոյն ասացան մեզ պատճառք" (էջ 505), "որպէս ուսաք" (էջ 521) եւն։

Լուծմունքների հեղինակը յիշում է Արիստոտէլի միւս երկերից՝ "Բնական լսաւղութիւնք" (*Φυσικὴ ἀκρόασις*), "Յետ բնականացն" (*Μετὰ τὰ φυσικά*), "Յաղագս անձին" (*Περὶ ψυχῆς*), "Բնական տեսութիւնն" (հաւանաբար՝ *Τὰ φυσικά*), Տրամաբանականացն գիրք (*Τὰ διαλογικά*) եւ Ընտելական իրողութիւնք (¹)։

Ուշադրութեան արժանի է, որ "Ա.Ալեաքսոյս"-Յամբղէքոսը հակաճառում է երբեմն պղատոնական մեկնիչներին եւ Պղատոնին, ինչպէս այդ երեւում է հետեւեալ հատուածներից.

Ստոր. Մեկն., յաղագս քանակի, աշ. ա՝։

"Իսկ ոմանք ի Պղատոնականացն կամին ասել, եթէ վասն զի՞ հարկ է յամենայն գոյացութիւն ընդունել զքանակն ոչ ըստ չափոյ միայն, երբ թէ մեծ կամ փոքր, այլ յաւէտ ըստ թուոյ, զի կամ մի է կամ բազում։ Ըստ որս ասեմք. եթէ ձեզ իսկ հակաճառութիւնս կազմէք, քանզի ըստ Պիթագորականացն ձեւացեալք ասէք թէ միոն ոչ է թիւ, այլ յաւէտ սկիզբն թուոյ. իսկ զոր ոչ թիւ ասացէք՝ այժմ քանակ ասէք եւ թիւ նշանական, որպէս թէ ըստ ձերում քանակութեանդ եղիցի միակն միանգամայն թիւ եւ ոչ թիւ, որ է անհնար"։

Մեկն. Պէրիար., էջ 507 (Վենետ., 1833)։

"Ըստ Պղատոնի ինձ թուի ի տեղւոջս կոչիւ. քանզի որպէս նա կամի՝ բնութեամբ բան ի մեզ է, վասն զի

---

¹ Տես Լենինեանի մատենադարանի ձեռագր. թ. 1889 կամ 1943։

գործի է բանական զօրութեան. որպէս է ակն՝ տեսութեան գործի. եւ այլ ինչ զգայարան՝ իւրաքանչիւրոցն. բայց սուտ ասացեալն. քանզի առնու ներգործութեամբ եւ զօրութեամբ՝ իբրեւ զնոյն„։

Այս հատուածները, որոնց մէջ արտայայտուած են “Ամելախոյսի„ ուրոյն հայեացքները, կարօտ են յատուկ քննութեան յունաց իմաստասիրական մատենագրութեան աղբիւրների օգնութեամբ։

§ 31. Վիեննայի թ. 112 ձեռագրում յիշուած “Անտոնիոս Էրմիսը„, կարելի է ենթադրել, որ Ցամբղեցւոյ ուսուցիչ Անտոնեանն է։ — Վիեննայի Մխիթարեանց թ. 112 ձեռագրում, ինչպէս վերեւ յիշեցինք, Ստորոգութեանց մեկնութեան մեծագոյն մասը, առընչի մեկնութիւնից սկսած մինչեւ վերջը, համարւում է “Անտոնիոս Էրմիսի„ աշխատութիւն։ Այդ ձեռագրում “Յաղագս առընչի„ մեկնութիւնն ունի վերնագիր՝ “Անտոնիոս Էրմիս է ասացեալ զթարգմանս„, “Յաղագս որակի եւ որակութեան„ մեկնութեան վերագրում նոյնպէս յիշւում է, որ “Անտոնիոս Էրմիս թարգմանէ„։

“Թարգման„ եւ “թարգմանել„ պէտք է հասկանալ ըստ երեւոյթին “մեկնիչ„ եւ “մեկնել„ իմաստով։

Արդ՝ եթէ Ստորոգութեանց մեկնութեան վերոյիշեալ մասերի մեկնիչն “Անտոնիոս Էրմիսն„ է, հարց է ծագում, թէ արդեօք չէ՞ կարելի պարզել նրա անձնաւորութիւնը, ի նկատի ունե-

նալով, որ նա եւս պէտք է լինի «Ամելախոյս»-Ցամբղիքոսի ժամանակակից մեկնիչներից։

Որքան ինձ յայտնի է, Անտոնիոս անունով մեկնիչ իմաստասիրական մատենագրութեան մէջ ծանօթ չէ ո՛չ Ցամբղիքոսի ժամանակ, ո՛չ էլ յետոյ։ Աչքի առաջ ունենալով, որ Ցամբղիքոս անունն աղճատուել է Հայերէնում եւ ստացուել «Ամելախոյս» աղճատ անունը, նոյնը թերեւս կարելի լինի ենթադրել եւ Անտոնիոս անուան նկատմամբ։

Այդ դէպքում, թոյլ ենք տալիս մեզ ենթադրելու, որ Անտոնիոս կարող է Հայերէնում աղճատուած լինել Անատոլիոս անուան, իսկ Անատոլիոսը, ինչպէս յայտնի է, Ցամբղիքոս ասորու ուսուցիչն էր։

Այս ենթադրութիւնը կարող է թուել համարձակ եւ կարօտ գրական ապացոյցների։

Այդպիսի ապացոյցներ մենք չունենք։ Սակայն եթէ ուղիղ համարուի մեր ենթադրութիւնը, որ «Ամելախոյսը» Ցամբղիքոս ասորին է, այդ դէպքում՝ առանց այլ ապացոյցների եւս ընդունելի պիտի լինի եւ մեր այս ենթադրութիւնը, որ Ցամբղիքոսի ժամանակակից, միեւնոյն դպրոցի ու խմբի մեկնիչ, «Անտոնիոս Էրմիսը» ամենայն հաւանութեամբ կարող է լինել հենց նրա ուսուցիչ Անատոլիոսը, որի անունն աղճատուած է հայ ձեռագիրներում։

Որեւէ ուրիշ վկայութիւն կամ ակնարկ այս խնդրի լուսաբանութեան համար պէտք է որոնել եւրոպական գրադարաններում գտնուող

յունական փիլիսոփայութեան վերաբերեալ ձեռագիրներում։ Եւ եթէ գտնուի այդպիսի մի վկայութիւն ու հաստատուին վերոյիշեալ մեր ենթադրութիւնները, այդ դէպքում լուծուած կը լինի Արիստոտէլի մեկնիչների նկատմամբ կարեւոր մի խնդիր եւ Դաւիթ Անյաղթին վերագրուած Ստորոգութեանց եւ Պէրիարմէնիաս գրոց մեկնութիւնները, որ թարգմանուած են յունարէնից, կը կազմեն Անատոլիոս-Ցամբղիքեան մեկնութիւնների յատուկ ու նոր մի խումբ՝ գրուած չորրորդ դարում Ք. յ.։

Դրանց հայերէն թարգմանութիւնը, ինչպէս կը տեսնենք, միանգամայն տարբեր է Դաւթի ու Էլիասի թարգմանութիւններից եւ արտադրութիւն է յունաբան տարբեր ու առանձնայատուկ դպրոցի։

§ 32. Նիւթի դասաւորութիւնը եւ մեկնութեան ձեւն ու կարգն Ամմոնիոս-Ցամբղիքեան մեկնութիւններում։ — Ամելախոյս-Ցամբղիքոսի մեկնութիւններում նիւթի դասաւորութիւնը եւ մեկնութեան ձեւն ու կարգը բոլորովին այլ են, քան Էլիասի ու Դաւթի մեկնութիւններում։

Ոլիմպիոդորոս-Էլիասի խմբի մեկնութիւններում Պորփիւրի ու Արիստոտէլի բնագիրը մեկնւում է "պարաֆրազների" ձեւով, այսինքն՝ բնագրից առաջ են բերւում՝ առանձին նախադասութիւններ, որոնք կարօտ են բացատրութեան, եւ մեկնւում։ Այս կարգի մեկնութիւններում շատ յաճախ դժուար է լինում որոշել, թէ որտեղ է վերջանում Արիստոտէլի բնագիրը

եւ որ տեղ սկսւում բնագիրը։ Այս ձեւով կազմուած են Ալֆարաբիի միջնադարեան մեկնութիւնները։

«Ամելախայս»-Յամբղիքոսի լուծմունքները բոլորովին այլ ձեւով են կազմուած։ Արիստոտէլի բնագիրն այստեղ բաժանուած է պրակների եւ ամէն մի պրակ առանձին առաջ է բերւում in extenso «բան» վերնագրի տակ, իսկ իւրաքանչիւր պրակի համապատասխան քննութիւնը, բաժանուած Արիստոտէլի բնագրից, առաջ է բերւում «Մեկնութիւն» վերնագրի տակ։

Մեկնական այս ձեւը միջնադարեան մեկնիչներից գործ է ածել Իբն-Ռոշտը (Ավերոէսը)։

Էռնեստ Ռենանի կարծիքով[1], մեկնական այս վերջին ձեւը գործածական է Ղուրանի մեկնիչների մօտ եւ իբր թէ նրանցից է փոխ առել այդ ձեւը Իբն-Ռոշտը։ Ինձ թւում է, որ Է. Ռենանի այս ենթադրութիւնը հիմնաւոր չէ։ Մեկնական այդ ձեւի գործածութիւնը «Ամելախայս»-Յամբղիքոսի լուծմունքներում պարզ մի ապացոյց է, որ մեկնական այդ ձեւը, հաւանաբար, իրանք Ղուրանի մեկնիչները փոխ են առել Արիստոտէլի հնագոյն մեկնութիւններից։

Յամենայն դէպս՝ Դաւթի ու Էլիասի եւ «Ամելախայս»-Յամբղիքոսի մեկնութիւնների արտաքին ձեւն ու եղանակը, որ իրարից հիմնովին տարբեր են, պարզ մի նշան են դարձեալ, որ

---

[1] Տե՛ս «Жизнь и произведенія Аверроэса», էջ 43—44 (Собраніе сочиненій Э. Ренана. Томъ VIII., Кіевъ, 1902).

այդ մեկնութիւնները իմաստասիրական տարբեր դպրոցների ու հաւանաբար տարբեր ժամանակների գործ են։

## Հնագոյն թարգմանութիւնների երեք տարբեր շրջանները։

§ 33. Իմաստասիրական հնագոյն մեկնութիւնները թարգմանուած են յունարէնից, — Հայոց մատենագրական աւանդութիւնը, ինչպէս տեսանք, իմաստասիրական գրեթէ բոլոր մեկնութիւնները համարել է Դաւիթ Անյաղթ հայ փիլիսոփայի աշխատութիւն։ Մատենագրական այդ աւանդութեան հետեւելով, հայագէտ բանասէրները եւս ընդունում էին, որ այդ երկերը հինգերորդ դարում հայերէն գրուած աշխատութիւններ են եւ ոչ թէ թարգմանութիւն յունարէնից։

Այդ սխալ ու չփոթ ենթադրութիւնը եղել է գլխաւոր պատճառը, որ իմաստասիրական մեկնութիւնների հայերէն թարգմանութեան խնդիրը ոչ միայն չէ ուսումնասիրուել, այլ նոյն ինքն այդ խնդիրը երկար ժամանակ կասկածելի ու վիճելի համարուել աւանդապահ բանասէրների կողմից։

Որ իմաստասիրական հնագոյն հայ մեկնութիւնները բոլորն էլ թարգմանուած են յունարէնից, այդ այլեւս վիճելի մի ենթադրութիւն չէ։

*Դաւիթ Անյաղթին վերաբերեալ առաս պե-ւթեալ աւանդութիւնը դրական փաստերով մեր-ժուելուց յետոյ, այդ խնդիրը կարելի է համարել վերջնականապէս ապացուցուած ու լուծուած։*

*Իմաստասիրական հնագոյն մեկնութիւն-ները, ինչպէս տեսանք, զանազան հեղինակների յունարէն գրուած դասախօսութիւններ են։ Այդ հեղինակներն են՝ Ոլիմպիոդորոս - Էլիասը, Նորպղատոնական Դաւիթը, Ցամբղիքոսը եւ հաւանաբար Նաեւ Ընատոլիոսը։*

*Զուննենալով դրական ու ճշգրիտ տեղեկու-թիւններ սրանց մեկնութիւնների հայ թարգմա-նիչների մասին, հայ բանասիրութիւնն անկարող է գանուել որոշելու ոչ միայն այդ երկերի թարգմանման ճիշդ տարեթիւը, այլ անգամ դարաշրջանը։*

*Այսքանը միայն պարզ է, որ Դաւթի ու Ոլիմպիոդորոս-Էլիասի խմբի մեկնութիւնները չեն կարող յօրինուած, ուրեմն եւ թարգմանուած լի-նել հինգերորդ դարում, ինչպէս այդ վկայում է մեր մատենագրական աւանդութիւնը։ Այդ պարզ ու անվիճելի է, որովհետեւ այդ մեկնութիւնները վեցերորդ դարի մեկնիչների աշխատութիւն են։*

§ 34. Ուսումնասիրութեան բուն խնդիրը։ Հնարաւոր պէտք լինի ներկայիս որոշել յատկապէս Հնագոյն թարգմանութիւնների ժամանակը։ — *Հայ հնագոյն մատենագրութեան յաջորդական զար-գացման եւ ժամանակագրութեան հիմնական խնդիրը մինչեւ այժմ մնում է մութ ու անորոշ։ Մինչեւ այժմ չէ յաջողուել նաեւ որոշել յու-*

նաբան հնագոյն թարգմանութիւնների ժամանակը։

Հայկական աւանդութեանը հետեւող բանասէրներն այդ թարգմանութիւնների ժամանակը համարում են հինգերորդ դարի վերջը, շատերը նոյն թարգմանութիւնների ժամանակը տանում են մինչեւ ութերորդ, իսկ ոմանք՝ վեցերորդ կամ եօթներորդ դարը։

Մեծ մասամբ այդ ենթադրութիւնները աւելի անձնական տրամադրութեան ու քմահաճոյքի վրայ են հիմնուած, քան լուրջ ու դրական հիմքերի։ Հայ մատենագրական աւանդութիւնը, որ քննութեան էր առել Դաւիթ Անյաղթի խնդրին նուիրուած աշխատութեանս մէջ, բացի յետնադարեան առասպելախառն յերիւրանքներից չունի յունաբան մատենագրութեան մասին դրական ու հաստատուն ցուցումներ։

Հայ մատենագրութեան հիմնական այս խնդիրը լուսաբանելու համար անհրաժեշտ էր գտնել ուսումնասիրութեան ուրիշ ուղիներ։

Ինչպէս կը տեսնենք, այդպիսի հնարաւորութիւններ կան, բայց պահանջում են յունաբան թարգմանութիւնների բովանդակութեան, լեզուի եւ քերականութեան մանրազնին քննութիւն եւ վարժ հմտութիւն։ “Արտաքին գրոց„ զանազան երկերի քննութիւնը լեզուական ու քերականական տեսակէտից պէտք է կատարուի ոչ միայն ամէն մէկ երկ առանձին, այլ եւ համեմատութեամբ մէկը միւսի հետ։ Ուսումնասիրութեան այդ եղանակով ստացւում են մի-

շարք կարեւոր ու հետաքրքիր հետեւութիւններ, եւ եթէ այդ ուղղութեամբ լինին նոր եւ նոր աշխատողներ, կարծում եմ, որ յունաբան դպրոցի գաղտնիքը վերջնականապէս կը պարզուի

Յունաբան հնագոյն թարգմանութիւնների ժամանակը որոշելու համար սոյն աշխատութեանս մէջ քննութեան եմ առել լեզուական ու քերականական տեսակէտից ոչ միայն Արիստոտէլի երկերի ու Պորփիւրի ներածութեան մեկնութիւնները, այլ եւ Փիլոնը, Պիտոյից գիրքը, Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը, Նոննոսը, Իրենէոսը, Գ. (?) գիրք Թղթոցի հնագոյն մասի յունաբան թղթերը եւ Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը։

Հարեւանցի կերպով քննել եմ նաեւ Խոսրովիկ Թարգմանչի եւ Անանիա Շիրակացու երկասիրութիւնները ապացուցանելու համար, որ իմաստասիրական երկերի, եթէ ոչ բոլորը, գոնեայ մեծագոյն մասը՝ թարգմանուած են նրանցից առաջ։

§ 35. Իմաստասիրական թարգմանութիւնների հետքերը Խոսրովիկ Թարգմանչի կրօնա-դաւանաբանական գրուածներում։ — Ութերորդ դարի հայ մատենագիրներից Խոսրովիկ Թարգմանչի կրօնադաւանաբանական գրուածքները մեծ չափով կրում են հեղինակի հելլենական կրթութեան եւ Արիստոտէլեան իմաստասիրութեան ազդեցութեան հետքեր։ Այդ ազդեցութիւնն այնքան ակնյայտնի ու անվիճելի է, որ աւելորդ է երկար կանգ առնել այդ խնդրի վրայ։ Բաւական է

առաջ բերել բազմաթիւ վկայութիւններից միայն մի քանիսը.

*Խոսրովիկ, էջ 39-40[1]:*

„Զի բնութեան հաւաքումն ի հասարակին ըստ զօրութեան եւեթ է, անուամբ միայն նշանակեալ, իսկ յառանձնականումն ոչ ըստ զօրութեան, այլ ըստ ներգործութեան եւ արգեամբք երեւեալ։ Վասն որոյ եւ առաջին եւ իսկագոյն եւ մանաւանդ զսա անուանեցին գոյացութիւն վէհագոյնքն, եւ յորոց մերքն ընկալան զբանականութեանն վարժողութիւն, զի ի սմա գտին եւ ծանեան արդէն զանուն հասարակին, նոյնպէս եւ զբանն„։

*Ստորոգ. Արիստ., էջ 363[2]:*

„Գոյացութիւն է, որ իսկականն, եւ նախկին, եւ մանաւանդ ասի. որ ոչ զենթակայէ զումեքէ ասի, եւ ոչ ենթակայում յումեք է„։

*Ստորոգ. մեկն. (Ամելախ.)[3]:*

„Ցիրաւի ուրեմն զանհատ գոյացութիւնն իսկապէս եւ նախկին եւ մանաւանդ ասաց գոլ„։

*Ելիաս., մեկն. Ստոր., էջ 83:*

„Զիարդ ոչ է առաջին եւ իսկականն եւ մանաւանդ գոյացութիւն„:

*Խոսրովիկ, էջ 115-116:*

„Զի ամենայն իրի սահման յերկուց յայտնանէ կատարի, ի մասնութենէ ազգային, եւ ի նոյն ինքն ի

*Սահմ. իմաստ., էջ 121:*

„Իսկ զինչէն կամ անուամբ ճանաչի մեզ՝ եւ կամ սահմանաւ։ Եւ անուամբ յորժամ տեսանե-

---

1 Խոսրովիկ թարգմանիչ եւ երկասիրութիւնք նորին, աշխատասս. Գարեգին վարդապետի Յովսէփեան, Վաղարշապատ 1903։

2 Ստորոգութեանց ընտիրը, Վենետ. 1833։

3 Վենետիկի հրատարակութեան մէջ Ստոր. մեկնութեան սկիզբը պակաս է։ Այս հատուածը առել ենք Էջմիածնի Թ. 1810 ձեռագրից։

«գոյին, եւ ի տեսութենէ եւ ի բառէն, որ սահմանէ զիրն, որպէս որ կամիցի զսահման մարդոյն բացայայտել, նախկին յարձակի միտքն տեսանել զմարդն, եւ զնոյն մտացն սեռ եւ աչացն առաջի դնէ, եւ ապա բանիւ զնոյն սահմանէ ասելով՝ մարդ-կենդանի, մահկանացու, մտաց եւ հանճարոյ ընդունակ[1]»:

լով ինչ՝ ասեմք զի՞նչ է. ասեմք թէ մարդ է։ Իսկ սահմանաւ՝ յորժամ ասեմք, կենդանի բանաւոր մահկանացու՝ մտաց եւ հանճարոյ ընդունակ»:

Վերոյիշեալ համեմատութիւնները չպէտք է հասկանալ այն մտքով, որ Խոսրովիկն օգտուել է համեմատութեան առնուած երկերից։ Արիստոտէլեան իմաստասիրութեան այն մտքերը, որոնց հանդիպում ենք Խոսրովիկի երկերում, այնքան ընդհանուր ու սովորական են եւ այնքան յաճախ կրկնուած Արիստոտէլեան թարգմանութիւններում, որ սխալ կը լինէր այս կամ այն գրուածքը կամ հատուածը համարել նրանց աղբիւր առանց որեւէ լուրջ հիմքերի։

Վերոյիշեալ համեմատութիւններից կարելի է ընդհանուր կերպով միայն եզրակացնել, որ Արիստոտէլեան հնագոյն հայ թարգմանութիւնները Խոսրովիկի ժամանակ ութերորդ դարի սկզբում գոյութիւն են ունեցել եւ ծանօթ են եղել նրան։

§ 36. Անանիա Շիրակացին օգտուել է Արիստոտէլեան իմաստասիրութեան հնագոյն հայ թարգմա-

---

1 Հմմտ. Նախ. Ներած. Պորփ., էջ 242, 3—5։

Նուբիւններին։ — Խօթներորդ դարում եւ արիստոտելեան հնագոյն հայ թարգմանութիւններից օգտուել է Անանիա Շիրակացին։

Ինչպէս մատնացոյց էր արել Գալուստ Տէր-Մկրտչեանը[1], Անանիա Շիրակացին իր "Յաղագս շրջագայութեան երկնից" աշխատութեան համար ունեցել է, որպէս աղբիւր, Արիստոտելի "Յաղագս աշխարհի" երկը, որի հետեւութեամբ նա կազմել է իր գրուածքան ծրագիրը եւ որից քաղել է բազմաթիւ բացատրութիւններ ու գաղափարներ, տեղ տեղ գրեթէ բառացի՝ համաձայն Արիստոտելի երկի հայերէն թարգմանութեան։ Անանիա Շիրակացու յիշեալ գրուածքը ծայրէ ի ծայր բաղդատելով "Յաղագս աշխարհի" գրուածքան հայ թարգմանութեան հետ, Գալուստ Տէր-Մկրտչեանը եզրակացնում է, որ Արիստոտելի այս աշխատութեան հայ թարգմանութիւնը կատարուած է Անանիա Շիրակացուց առաջ, ուրեմն՝ ոչ աւելի ուշ քան եօթներորդ դարը։

Որ Անանիա Շիրակացին ապրել է "արտաքին գրոց" յունաբան հնագոյն թարգմանութիւններից յետոյ՝ այդ երեւում է նաեւ նրա յունաբան լեզուից եւ "արտաքին գրոց" նիւթական թարգմանութիւններին յատուկ յունաբան բառերից, որ գործ է ածում իր երկերում Շիրակացին, ինչպէս՝ առկայացեալ (էջ 14), վե-

---

[1] Անանիա Շիրակացի. Վաղարշապատ 1896, էջ 35 (արտատպութիւն 1896 թուի "Արարատ" ամսագրի փետրուար եւ ապրիլ համարներից)։

*բադիր* (էջ 21), *տրամագիծ* (էջ 36, 38), *պարունակք* (էջ 43), *տարբերութիւն* (էջ 63), *շարահիւսակ* (էջ 65), *ներքսածութիւն* (էջ 67), *արտագրութիւն* (էջ 67), *բացբարձութիւն* (էջ 67), *առշեղապէս* (էջ 68), *արամադրութիւն* (էջ 70), *շարաուոցելով* (էջ 72), *բաղկացեալ* (էջ 72) *ևն*[1]։

*Խոսրովիկ Թարգմանչի և Անանիա Շիրակացու երկերի բովանդակութեանն ու լեզուին վերաբերեալ վերոյիշեալ դիտողութիւնները ցոյց են տալիս, որ յունաբան հնագոյն թարգմանութիւնների ժամանակը պէտք է ընդունել եօթներորդ դարի երկրորդ կէսից առաջ և ոչ թէ ութերորդ դարում, ինչպէս ենթադրել են հայագէտ բանասէրներից շատերը։*

§ 37. Գիրք Թղթոցի հնագոյն մասում պա-հուել են Գրիգոր Տէրտերեանի Թղթերը գրուած են յունաբան լեզուով։ — *Եթէ յունաբան դպրոցի ծագումը որոշելու լինենք հին հայ մատենագրական երկերի լեզուական առանձնայատկութիւններով, այդ դէպքում՝ նրա ծագումը և հնագոյն յունաբան թարգմանութիւնների ժամանակը պէտք է գտնենք և եօթերորդ դարից առաջ։ «Գիրք Թղթոցի» հնագոյն մասում, բացի Մովսէս քերթողահօր և Յովհաննէս եպիսկոպոսապետի թղթերից, որոնց մասին խօսելու ենք առանձին, կայ և ուրիշ երկու թուղթ՝ «Հաւատարմա-*

---

[1] Տե՛ս Անանիա Շիրակունւոյ Մնացորդք բանից, ի լ՚ս ած Ք. Պ., Ս. Պետերբ. 1877։

գունի եւ իմաստնագունի եւ աստուածասիրագունի եղբաւր՝ ողորմելիս Պետրոս տերամբ խնդալ» (Գիրք Թղթոց, էջ 99—107) եւ «Սրբասիրի տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի ի Գրիգորէ Նուաստէ քերդողէ» (Գ. Թ., էջ 153—160), որոնք գրուած են յունաբան լեզուով։ Այս երկու գրութիւններն իրանց ոճով ու լեզուով տարբեր են նոյն մասի միւս թղթերից եւ պատկանում են, անտարակոյս, յունաբան դպրոցի գրուածքների խմբին։ Յունաբան բառերը, որ գործ են ածւում այդ թղթերում, կազմուած պիտի լինեն հաւանաբար, «արտաքին գրոց» նիւթական թարգմանութիւնների ժամանակ։ Այսպէս՝ Պետրոսի թղթում յունաբան բառեր են՝ — յարակայութեանց (Գ. Թ. էջ 100), ներգործութիւնս (էջ 102), շարամանեցելոց (էջ 102), վերադրեսցի (էջ 103), արտադրեսցին (էջ 103), շաղկապաւ (էջ 106) եւն, իսկ Գրիգոր քերդողի թղթում՝ — ապաբանութեան (էջ 153), առարկեալ (էջ 154), շարայարութեան (էջ 154), բացակայի (էջ 155), յարակցել (156), առասել (էջ 157), վերունակ (էջ 158), ներբարդաւաճիցն (էջ 158) եւն։

Գրիգոր քերդողի թուղթը, որ ուղղուած է Աբրահամ կաթուղիկոսին, գրուած պիտի լինի 607—610/611 թուականների ժամանակամիջում։ Ինչ վերաբերում է Պետրոսի թղթին՝ նրա հեղինակի խնդիրը դեռ եւս պարզուած չէ։ Ենթադրում են նոյն իսկ, որ այդ թուղթը կա-

րող է թարգմանուած լինել յունարէնից[1], եթէ անգամ այդ թուղթը համարենք յունարէնից թարգմանուած՝ նրա թարգմանութեան ժամանակը գարձեալ պէտք է ենթադրենք եօթներորդ դարից առաջ։ Իսկ այդ մի հանգամանք է, որ իրաւունք է տալիս մեզ, ի նկատի ունենալով Պետրոսի եւ Գրիգոր Քերդողի թղթերի ոճն ու լեզուն, եզրակացնել, որ յունաբան դպրոցի հնագոյն թարգմանութիւնների ժամանակը պէտք է ընդունել եօթներորդ դարից առաջ։

§ 38. Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը թարգմանուած է հայերէն 552—564 թուականների ժամանակամիջոցում։ — Յունաբան հնագոյն թարգմանութիւնների ժամանակը որոշելու խնդրում ամենամեծ խոչընդոտն այն է եղել, որ ոչ մի ստոյգ վկայութիւն չէր յաջողւում գտնել „արտաքին գրոց“ երկերի եւ ոչ մէկի թարգմանութեան ժամանակի մասին։ Մինչդեռ եթէ ունենայինք այդ երկերից որեւէ մէկի թարգմանութեան մասին տեղեկութիւն, այդ տեղեկութիւնը կռուան կարող էր լինել որոշելու, գէթ մօտաւոր կերպով, թէ միւս երկերի թարգմանութեան ժամանակը եւ թէ յունաբան դպրոցի ծագման գարաշրջանը։

1 Հ. Ն. Ակինեանը այդ թուղթը վերագրել էր Պետրոս եպիսկոպոսին, որը յիշատակուած է Ուխտանէսի մօտ (Հանդ. Ամս. 1904, էջ 110—111)։ Սակայն Ներսէս Բիւզանդացին նոյն թղթի հեղինակ համարում է Անտիոքի պատրիարք Պետրոս Թափիչին (Հանդ. Ամս. 1908, էջ 155—158)։ Հ. Ն. Ակինեանը „Կիւրիոն կաթուղիկոս վրացոց յետագայ իր աշխատութեան մէջ, հրաժարուելով իր նախկին կարծիքից, միանում է Ն. Բիւզանդացու ենթադրութեան (Հանդ. Ամս. 1909, էջ 332)։

Այդպիսի մի կռուան, բարեբախտաբար, այժմ գտնուած է։

Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, որը հրատարակուեց Էջմիածնում 1908 թուին[1] եւ որի թարգմանութեան ժամանակի մասին կան որոշ վկայութիւններ, հնարաւորութիւն է տալիս, ինչպէս կը տեսնենք, պարզելու յունաբան դպրոցի վերաբերեալ մի շարք կարեւոր հարցեր, որոնք հետզհետէ բաց պիտի անեն վեցերորդ դարի հայ մատենագրութեան բազմադարեան գաղտնիքը։

Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, թէեւ կրօնա-դաւանաբանական գրուածք է, բայց նրա հայերէն թարգմանութիւնը կատարուած է յունարէնից բառ առ բառ, ճիշտ այնպիսի եղանակով, որ յատուկ է ընդհանրապէս "արտաքին գրոց" հնագոյն թարգմանութիւններին[2]։

Վրաց բաժանման շրջանում, վեցերորդ դարի վերջին եւ եօթներորդի սկզբին, Հակաճառութեան հայերէն թարգմանութիւնը, ինչպէս ցոյց են տուել հրատարակիչները, արդէն իսկ ծանօթ է եղել ու գործածական[3]։

Հրատարակիչները, հիմնուելով Փոտ պատրիարքի Հայոց Զաքարեայ կաթողիկոսին գրած

---

1 Տիմոթէոս եպիսկոպոսապետի Աղեքսանդրիայ, Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի, ի լոյս ընծ. աշխատութեամբ Կարապետ Ծ. վարդապետի եւ Երուանդ վարդապետի, Էջմիածին 1908։

2 Տե՛ս հրատարակիչների յառաջաբանը, էջ XXIII եւ Հ. Ն. Ակինեանի, "Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ աշխատութիւնը (Հանդ. Ամս., 1908, էջ 296—298)։

3 Տե՛ս նաեւ Հ. Ն. Ակինեանի յիշեալ աշխատութիւնը։

Թղթի պարզ որոշ մի վկայութեան վրայ[1], Հակաճառութիւնը թարգմանուած են համարում հայերէնի Ներսէս Բ. կաթուղիկոսի ժամանակ։ Հ. Ն. Ակինեանը փոխի այդ վկայութեան աղբիւր ենթադրում է De rebus Armeniae գրուածքի հետեւեալ հատուածը[2]. ("Ներսէս Աշտարակեցու օրով) ի Դուին ժողով մը գումարուեցաւ, երբ նաեւ Քաղկեդոնի ժողովն իբրեւ Նեստորական, նզովեցին ըստ բանից Աբդիշոյի, վասն զի նոյն ժամանակ թարգմանեցին (ἑρμήνευσαν) Աբդիշոյէն բերուած գրութիւններն, այն գրութիւններն, զորոնք յիշեցինք վերը եւ որոնք Տիմոթէոս եւ Փիլոքսենոս (παρὰ Φιλίχου) ասորիներէն գրուած էին Քաղկեդոնի ժողովոյն եւ Քրիստոսի երկու բնութեանց դէմ"։

Որքան դրական եւ որոշ է այս վկայութիւնը, այնուամենայնիւ՝ փորձ եղաւ Հակաճառութեան հայերէն թարգմանութեան ժամանակը դնելու, հակառակ այս վկայութեան, հինգերորդ դարի վերջերում։ Գալուստ Տէր-Մկրտչեան իր յօդուածների մէջ, տպուած "Շողակաթ"-ում եւ "Արարատ" ամսագրում[3], մատնանիշ

---

1 Православный палестинскій сборникъ, томъ XI, вып. I, С. Петерб. 1892, էջ 180—181։

2 Թարգմանութիւնք Հ. Ն. Ակինեանին է. տես Հանդ. Ամս., 1908, էջ 295, նաեւ De rebus Armeniae, Migne, P. gr. 132, 1244, 1245:

3 Գ. Տէր-Մկրտչեան, Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան հայ թարգմանութեան ժամանակը եւ Ս. Գրքի երրորդ կամ նորաբեր հայ թարգմանութիւնը, "Արարատ" 1908, էջ 564—589. Նաեւ նոյն հեղինակի, Հայ մատենա-

է անում Հակաճառութեան մէջ յիշատակուած Դիոսկորոսի մահուան ամսաթիւը եւ, հիմնուելով տոմարագիտական հաշիւների վրայ, Հակաճառութիւնը թարգմանուած է համարում հայերէնի 480—484 թուականների ժամանակամիջոցում։ Դիոսկորոսի մահուան վերաբերեալ այդ կարեւոր հատուածն առաջ ենք բերում ամբողջութեամբ, դէմ առ դէմ դնելով նաեւ “Կնիք Հաւատոյ„ ժողովածուի համապատասխան վկայութիւնը, որ ուղղում է այդ հատուածի բնագրի աղճատումները.

*Տիմոթէոս, էջ 335։*

“Երանելոյն հաւրն մերոյ Դիոսկորոսի եպիսկոպոսապետին Աղեքսանդրու եւ գրեցելոյ թղթոյն ի Գանգրա յԱսորիս, ուր զաշակերտն կատարեաց ի Քրիստոս. թուղթ Է. երգ. սեպտեմբերի Բ. հոռի վեցերորդն. առ միայնկեացսն ի Հենատոն գրեցեալ թղթոյ„։

*Կնիք Հաւատոյ, էջ 337։*

“Երանելւոյն Դիոսկորոսի, եպիսկոպոսապետի Աղեքսանդրու, ի գրեցելոյ առ Սեկենդոնան թղթոյն Գանգրայ յաքսորիցն. ուր զընթացսն կատարեալ ի Քրիստոս. Թովթ Ի. սեպտեմբեր Բ. հոռի Զ„։

---

դրութեան հնագոյն թուականները, “Շողակաթ„ Վաղարշ. 1913, էջ 154—163։

[1] Համմատէ նաեւ Տիմոթէոսի Հակաճառութեան, էջ 277. “Երանելւոյ Հաւր մերոյ Դիոսկորոսի եպիսկոպոսապետի Աղեքսանդրեայ եւ խոստովանողի՝ ի գրեցելոյ առ Սեկունդինան թղթոյ ի Գանգրայ յաքսորաց. ուր զընթացսն կատարեաց ի Քրիստոս։ Թուղթ եւթներորդ, սեպտեմբերի երկրորդ, հոռի վեցերորդ„։ Տես նոյնը “Կնիք Հաւատոյ„ էջ 112։

Այս համեմատութիւնից պարզ երեւում է, ինչպէս այդ ուղիղ նկատել է Գալուստ Տէր-Մկրտչեանը, որ սոյն հատուածներում նշանակուած է Դիոսկորոսի մահուան ամսաթիւը աղեքսանդրեան թովթ (= thoth) ամսով, այլ ոչ թէ տարեթիւը, ինչպէս ենթադրել էր Հ. Ն. Ակինեանը, ուղղելով Տիմոթէոսի բնագրում “թուղթ եւթներորդ„ բառերը “ինդիկտիոնի եւթներորդ[1]„։

Մի ինչ որ անյայտ աղբիւրից օգտուելով O. Bardenhewerը Դիոսկորոսի մահուան ամսաթիւը դնում է 454 թուի սեպտեմբերի 4ին[2], որ համապատասխան է աղեքսանդրեան թովթ 7ին։ Տիմոթէոսի հակաճառութիւնը եւ “Կնիք հաւատոյ„ ժողովածուն, ինչպէս տեսանք, Դիոսկորոսի մահուան օրը նշանակում են ոչ թէ սեպտեմբեր 4ին, այլ “սեպտեմբեր Բ.„։ Բայց սեպտեմբերի Բ-ի դիմաց նրանք ունեն թէ թովթ Է. եւ թէ թովթ Ե. ամսաթիւը = Գալուստ Տէր-Մկրտչեանը ենթադրում է, որ սկզբնական բնագրի թովթ Է-ն կարդացուելով թովթ Ե, կարող էր սեպտեմբեր Բ-ն գրուել այս վերջինիս դիմաց, իբրեւ նրան համապատասխանող ամսաթիւ։

Եթէ այս ենթադրութիւնը հաւանական ընդունենք, պէտք է ընտրենք երկու հնարաւորութիւններից մէկը. Տիմոթէոսի հայերէն թարգմանութեան սկզբնական բնագրի ուղիղ ընթեր-

1 Հանդ. Ամս., 1908, էջ 296։

2 Patrologie, p. 350։

ցուածը պէտք է լինի՝ կամ Թովթ Է., սեպտեմբեր Գ. եւ կամ Թովթ Ե., սեպտեմբեր Բ.։

Բայց ամենակարեւոր հանգամանքն այն է, որ այդ ամսաթուի դիմաց Տիմոթէոսի հայերէն թարգմանութեան բնագրում տրուած է նաեւ հայկական "հոռի Զ." ամսաթիւը։

Արդ՝ հայկական տոմարը լինելով շարժական, Թովթ 5 = սեպտեմբեր 2 = հոռի 6 զուգաւորութիւնը հնարաւոր է, ինչպէս շատ ուղիղ նկատել է Գալուստ Տէր-Մկրտչեանը, 480—484 քառամեակում եւ "հոռի" յաւելումը կարող էր դրուել միայն այդ ժամանակ։ Ուրեմն եւ Տիմոթէոսի թարգմանութիւնը կատարուած պիտի լինի նոյն այս թուականներին։

Որքան եւ ուղիղ է տոմարական այս հաշիւը, սակայն թարգմանութեան այդ թուականը թւում է կասկածելի ու անհաւանական զանազան տեսակէտներով[1]․

ա. Այդ եզրակացութիւնը հակասում է Փոտի եւ Անանունի գրական ու որոշ վկայութիւններին,

բ. հիմնովին յեղաշրջում է հայ եկեղեցու կրօնա-դաւանաբանական պատմութեան վերաբերեալ ժամանակագրութիւնը, որ արդիւնք է բանասիրական նորագոյն ուսումնասիրութիւնների,

գ. այդ թարգմանութեան եւ ոչ մի հետք չէ յաջողւում գտնել կրօնա-դաւանաբանական

---

1 Տես նաեւ Հ. Ն. Ակինեան, Հանդ. Ամս. 1908, էջ 296։

հայ գրուածքներում եօթներորդ դարի երկրորդ կէսից առաջ։

Ինձ թւում է, որ բոլոր այս հակասութիւնները ու առարկութիւնները հեշտութեամբ վերանում են Դիոսկորոսի մահուան հայ ամսաթուի մի շատ պարզ ու ընդունելի սրբագրութեամբ։ Տիմոթէոսի հայերէն թարգմանութեան բնագրում, որ ազատ չէ աղճատումներից, կարծում եմ, որ “հոռի Զ„ ամսաթիւն աղճատուած է սկզբնական “հոռի ԻԶ„ ընթերցուածից։

Այդ դէպքում՝ թուլթ Է = սեպտեմբեր Դ = հոռի ԻԶ զուգաւորութեան հանդէպ կ'ունենանք 552—556 թուականները, իսկ թուլթ Ե = սեպտեմբեր Բ = հոռի ԻԶ զուգաւորութեան հանդէպ, 480—484 քառամեակի փոխարէն, կ'ունենանք 560—564 թուականները։

Ուրեմն՝ առաջարկած սրբագրութեամբ Տիմոթէոսի Հակաճառութեան հայերէն թարգմանութեան ժամանակը որոշւում է 552—564 թուականների ժամանակամիջոցում՝ միանգամայն համապատասխան Փոտ պատրիարքի եւ Անանունի վերոյիշեալ վկայութիւններին։

Տիմոթէոսի Հակաճառութիւնն առայժմ միակ երկն է յունաբան հնագոյն թարգմանութիւններից, որի թարգմանութեան ժամանակը ճշտւում է։ Ստացւում է ժամանակագրական հաստատուն մի թիւ, որի վրայ յենուելով՝ կարելի է լուսաբանել յունաբան դպրոցի վերաբերեալ մի շարք ուրիշ խնդիրներ եւ որոշել մօտա-

ւորպէս մի խումբ հնագոյն երկերի թարգմանութեան ժամանակը։

§ 39. "Արտաքին գրոց, հնագոյն երկերը թարգմանուած են հայերէն զանազան թարգմանիչների աշխատութեամբ եւ տարբեր ժամանակաշրջաններում։ — Հայոց մատենագրական աւանդութիւնը "արտաքին գրոց" քերականական, ճարտասանական եւ իմաստասիրական հնագոյն երկերը վերագրելով Դաւիթ Անյաղթ հայ փիլիսոփային եւ նրա ընկերակիցներին, այլ[ն] է առել մի խոշոր թիւրիմացութեան։ Այդ առասպելեալ աւանդութեան վրայ յենուողները կարծել են, որ "արտաքին գրոց" երկերը ժամանակակից եւ ընկերակից հեղինակների աշխատութիւն են եւ յօրինուած են գրեթէ միաժամանակ՝ հինգերորդ դարի վերջերում։

Արդ՝ աւանդական այդ ենթադրութիւնը միանգամայն սխալ է։

"Արտաքին գրոց" հնագոյն երկերը, լինելով օտար հեղինակների երկասիրութիւններ, թարգմանուած են հայերէնի ոչ միայն զանազան թարգմանների աշխատութեամբ, այլ եւ տարբեր ժամանակաշրջաններում։ Այդ թարգմանութիւնների լեզուի, ոճի եւ քերականութեան ուսումնասիրութիւնը ցոյց է տալիս, որ նրանք լեզուական իրանց առանձնայատկութիւններով բաժանւում են զանազան խմբերի։ Յունաբան լեզուն, որ դարել է հին եւ նոր հայերէնի կենդանի ու անանջատ մի մասը, ունեցել է իր կերպարանաւորման եւ զարգացման յատուկ ընթաց-

քը, որ ուսումնասիրութիւնը հերթական ու կարեւոր մի խնդիր է ոչ միայն հայ լեզուի ու քերականութեան պատմութեան, այլ նաեւ յունաբան թարգմանութիւնների ժամանակագրութեան որոշման համար։ Թարգմանութիւնների լեզուի ու քերականութեան մանրազնին քննութեամբ՝ հնարաւոր կը լինի բաժանել նրանց խմբերի ու լուսաբանել մատենագրական մի շարք խնդիրներ, որոնք մինչեւ այժմ մնացել են մութ ու անքնին։

Ցոյց տալու համար, թէ որքան իրարից տարբեր են յունաբան թարգմանութիւններն իրանց բառամթերքով ու քերականական առանձնայատկութիւններով, բերենք մի քանի պարզ ու ակնբախ օրինակներ։ Էլիասի ու Յամբղիքոսի Ստորոգութեանց մեկնութիւններում կան համապատասխան հատուածներ հետեւեալ թարգմանութեամբ.

*Էլիաս, Մեկն. Ստոր. էջ 60:*

"Ցետ բաժանման ասիցելոցն գայ ի բաժանումն գոյից։ Իսկ երկուս առնու հակադրութիւնս, զմին՝ յառիցելոցն եւ զմին՝ ի գոյից. յառաջնլոցն՝ զընդհանուրն եւ զմասնականն, իսկ ի գոյից՝ զգոյացութիւն եւ զպատահումն։ Իսկ չորս առ-

*Յամբղիքոս, Մեկն. Ստ.*[1]:

"Իսկ այժմ յերկուս միայն բաժանէ զամենայն էակս՝ ի գոյացութիւն եւ ի պատահումն՝ կատարելագոյն եւ ըմբռն իմաստութեամբ առնելով զպատրամասութիւն։ Այլ վասն զի հարկ է զիւրաքանչիւր ոք ասցա կամ հասարակական

---

[1] Տե՛ս Էջմիածնի մատենադարանի ձեռագր. Թ. 1889. էջ 181ա—275բ եւ Թ. 1943, 1ա—139բ։

նէ շարամանութիւնս՝ ընդհանուր գոյացութիւն եւ ընդհանուր պատահումն, զմասնական գոյացութիւն եւ զմասնական պատահումն»:

գոլ կամ մասնաւոր, չորք ատանօր լինի շարամանութիւն՝ հասարակական գոյացութիւն. հասարակական պատահումն. մասնաւոր գոյացութիւն, մասնաւոր պատահումն»:

*Էլիաս, Ստ. Մեկն., էջ 64, 65:*

«Բայց են մետասան նշանակութիւնք յումեքն. կամ ի ժամանակում... կամ ի տեղւոջ... եւ կամ յամանում... եւ կամ բոլոր ի մասունս... կամ որպէս մասունք ի բոլորում... եւ կամ որպէս սեռ ի տեսակում... եւ կամ որպէս տեսակ ի սեռում ... եւ կամ որպէս տեսակ ի նիւթում... եւ կամ որպէս յարարչականում... կամ յիշխանականում, կամ որպէս յաւարտականում... եւ կամ որպէս ննթակայում»:

*Ցամբղիքոս, Ստ. Մեկն.*[1]:

«Այլ վասն զինիմեքդ բազմայեղանակի ասի՝ որպէս սեռ ըն տեսակի կամ տեսակ ըն սեռի եւ դարձեալ իբր մասն ըն բոլորի կամ բոլոր ըն մասունս... կամ ըն տեղւոջ կամ նամանակի .. եւ եւս որպէս ըն կատարմանն... իբր նամանի եւ եւս իբր թէ տեսակ ի նիւթ... եւ որպէս իշխանականք ըն իշխանի նոյնպէս եւ իշխան ըն իշխանականն»:

Էլիասի եւ Ցամբղիքոսի համապատասխան այս հատուածներում գործ են ածուած իմաստաբական տարբեր, իսկ քերականական դարձուածքները, թէեւ երկու թարգմանութեան մէջ էլ

[1] Տե՛ս Էջմիած. Մատենադարանի Թ. 1886 եւ 1943 ձեռագր.:

յունաբան են, սակայն հիմնովին տարբեր են իբարից։ Յունարէն καθόλου բառը Էլիասի հատուածում թարգմանուած է “ընդհանուր„, իսկ Յամբղիքոսի հատուածում՝ “հասարակական„, յն. μερικός՝ Էլ. “մասնական„ եւ Յամբղ. “մասնաւոր„, ἐν τελικῷ՝ Էլ. “յաւարտականում„, Յամբղ. “ըն կատարման„։ Ուշագրաւ է նաեւ, որ “տրամատել, տրամատական, տրամատութիւն„ յունաբան սովորական բառերը, որ շատ յաճախ հանդիպում են Յամբղիքոսի մեկնութիւններում, Էլիասի մեկնութեան մէջ չեն գործածուած եւ ոչ մի անգամ։ Յունարէն ἐν τινι Էլիասի հատուածում թարգմանուած է “յումեքն„, իսկ Յամբղիքոսի հատուածում “նիմեքգ„, նմանապէս եւ յունարէն ἐν τόπῳ, ἐν χρόνῳ, ἐν ἀγγείῳ եւ “յումեքի„ յաջորդ նշանակութիւնները Էլիասի հատուածում թարգմանուած են՝ “ի տեղւոջ, ի ժամանակում, յամանում եւն„, իսկ Յամբղիքոսի հատուածում՝ “նամանակի, ըն տեղւոջ, նամանի եւն„։ Այս տարբերութիւնները, որ ոչ մի դէպքում չեն կարող համարուել պատահական, ապացուցանում են, որ այդ թարգմանութիւնները ոչ միայն միեւնոյն թարգմանչի գործ չեն, այլ եւ վերագրուելու են, հաւանաբար, թարգմանչական յունաբան տարբեր դպրոցների։

§ 40. Թրակացու քերականութեան, Փիլոնի եւ Պղատոնի երկերի թարգմանութիւնները կազմում են յունաբան թարգմանութիւնների հնագոյն շերտը։ — “Արտաքին գրոց„ թարգմանութիւնների յունաբան

լեզուի ուսումնասիրութեամբ յաջողուել է ինձ ստանալ լեզուական մի շարք ապացոյցներ, որ Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը, Փիլոնը եւ Պիտոյից գիրքը կազմում են յունաբան թարգմանութիւնների հնագոյն շերտը։

Արդէն Հայկազեան լեզուի Նոր բառգրքի աշխատակիցները Փիլոնի թարգմանութիւնները շատ ճիշտ բնորոշել են, իբրեւ "հելլենաբան բոլորովին ըստ կազմութեան, այլ սքանչելի հայկաբան ըստ ճոխութեանն բառից. (Հատոր Ա, էջ 20)։ Յայտնի է նաեւ, որ այդ թարգմանութիւններից օգտուել են ոչ միայն Մամբրէն ու Մովսէս Խորենացին, այլ եւ Եղիշէն[1]։ Ըստ այդմ, Փիլոնի թարգմանութեան ժամանակը պէտք է ենթադրել ոչ ուշ քան 6րդ դարը։

Պիտոյից գրքի թարգմանութեան նկատմամբ առ այժմ այսքանն է միայն յայտնի, որ այդ թարգմանութեանը, հաւանաբար, ծանօթ են եղել Սեբէոս պատմագիրը եւ Դաւիթ Հարքացին[2]։ Թէ Փիլոնի եւ թէ Պիտոյից գրքի թարգմանութիւններից օգտուել է, անտարակոյս, նաեւ Մովսէս Խորենացին, սակայն այս հանգամանքը չի պարզում սրանց թարգմանութեան ժամա-

---

1 Տե՛ս Հ. Մկրտիչ Աւգերեանցի վկայութիւնները Փիլոն Եբրայեցու 1822 եւ 1826 թուերի հրատարակութեանց ծանօթութիւններում։

2 Տե՛ս A. Baumgartner, Über das Buch „Die Chrie“, Leipzig 1886 եւ Գ. Վ. Յովսէփեան, Դաւիթ Հարքացին եւ Պիտոյից գիրքը („Արարատ“ ամսագիր, 1908, փետրուար, էջ 203—216)։

նակը, որովհետեւ անորոշ ու վիճելի է նաեւ Խորենացու ժամանակը։

Մատենագրական որ եւ է տեղեկութիւն չունենք եւ Դիոնիսիոս Թրակացու քերականութեան թարգմանութեան մասին։

Վերոյիշեալ բոլոր թարգմանութիւնների ժամանակը, ինչպէս տեսնում ենք, դեռ եւս հաստատուն կերպով որոշուած չէ։ Մատենադրական դրական ցուցումների բացակայութեան պատճառով, բանասիրութիւնը, բնականաբար, զուրկ էր հնարաւորութիւնից լուծել այս մութ խնդիրը։ Այս հանգամանքը ստիպեց ինձ դիմել լեզուական ուսումնասիրութեան։ Ուսումնասիրութեան այդ եղանակով ստացած իմ հետեւութիւնները համարձակութիւն են տալիս ինձ պնդելու, որ վերոյիշեալ թարգմանութիւնները, իրանց բառամթերքով ու լեզուական առանձնայատկութիւններով, կազմում են յունաբան թարգմանութիւնների յատուկ մի խումբ եւ նրանց ժամանակը պէտք է դնել Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանութիւնից առաջ, ուրեմն՝ ոչ ուշ քան 6րդ դարի առաջին կէսը։ Այս եզրակացութեան յանգելու հիմք են ծառայել ինձ լեզուական հետեւեալ համեմատութիւններն ու նկատառումները, որ թւում են ինձ ուշադրաւ ու կարեւոր.

ա. Թրակացու քերականութեան եւ, մանաւանդ, Փիլոնի ու Պիտոյից գրքի թարգմանութիւնները, իրանց ինքնուրոյն բառամթերքով, այնքան են իրար նման ու յարակից եւ տարբեր

յունաբան միւս թարգմանութիւններից. որ սրանք, որպէս յատուկ ու անանջատ մի խումբ, պէտք է համարուեն միեւնոյն գարաշրջանի գործ։ Այդ բառերը յաճախ գործ են ածուել բացառապէս այս երկերում։

Այսպիսի առանձնայատուկ բառեր են[1].
1. աղաւտանամ Թր. 11, աղաւտ Փիլ. Լիւս. 138 եւ Պիտ., 2. աղցք Թր. 10, Փիլ. լին. եւ քհ., Պիտ. 504, 3. աւաղական Թր. 33, աւաղ, աւաղումն Փիլ. լին., Պիտ., 4. Բաղայց Թր. 36, Փիլ. լին. 52, Պիտ., 5. բաղդասութիւն Թր. 12, 30, Փիլ. Նախ. եւ Ժ բան, 6. հաւանալ, հաւացեալ Թր. 10, 11, 12, չարահաւ Փիլ. լին. 31, սկզբնահաւ կամ հաւասկիզբն Փիլ. լին. 100, Պիտ. հաւակ 394, հաւեմ Պիտ. 398, 7. վրդովլ Թր. 21, վրդովեմ, վրդովումն Փիլ. իմաս. եւ բազն., վրդովասէր Պիտ. 425, 8. փաստական, փաստաբանական Թր. 17, 35, 36, Փիլ. լին. 262, փաստաբանեմ Փիլ. Նախ., փաստասէր Փիլ. լին. փաստաբանութիւն Պիտ. 407, 9. սարդենի Թր. 4, սարդ Փիլ. Լիւս., 10. բազմաւորական Թր. 9,

---

[1] Համեմատած բառերը տես հետեւեալ հրատարակութիւններում. Ն. Ադոնց. Արուեստ Դիոնիսեայ քերականի, Պետրոգրադ 1915. Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք. Վենետիկ 1843 (Յաղագս պիտոյից, էջ 341—581) եւ Փիլոնի Եբրայեցւոյ Հ. Մ. Աւգերեանի 1822 եւ 1826 թուերի հրատարակութիւնները։ 1892 թուին Վենետիկում լոյս տեսած Փիլոնի ճառերի հրատարակութիւնը չեմ կարողացել ձեռք բերել Անդրկովկասում, ուստի այդ ճառերի բառամթերքին ծանօթացել եմ օգտուելով Հայկազեան բառգրքից։

45, գիտ. 435, 11. ելուզանեմ Թր. 5, գիտ., 12. բղջախոհ Թր. 18, բողջախոհութիւն գիտ. 354, 13. մեծասուգ Թր. 19, գիտ., 14. սգեմ Թր. 4, գիտ. 397, 15. սերկ Թր. 31, սերկեան գիտ., 16. նայ Թր. 8, 11, գիտ. 564, 569, 17. կենցաղօգուտ գիտ. 344, փիլ. Նախ. 107, փիլ. Ժ բան., 18. չին փիլ. Նախ. 19, չնեմ գիտ. 343, 19. դերեւանամ գիտ. 344, փիլ. տեսակ., փիլ. Ժ բան., 20. նաղաքանութիւն գիտ. 431, փիլ. Սամփս. 554, 21. երկասիրութիւն գիտ. 348, փիլ. լին. եւն, 22. անքատ, անքատանամ եւն գիտ. 358, փիլ. լին., Լիւս., քհ. Ժբ, տեսակ., 23. արձանակեմ գիտ. 359, փիլ. իմաստ. եւ քհ. ե, 24. վրիժակն գիտ. 384, փիլ. Լիւս. 159, փիլ. քհ. Ժբ, վրիժակեմ գիտ. 409, փիլ. լին. 400, վրիժակաղէն փիլ. այլաբ., 25. կընատ, կնատագոյն գիտ. 385, 447, փիլ. Սամփս. 26. ճակաճան գիտ. 389, ճակաճանութիւն փիլ լին. 432, 27. բեղնաւոր եւն գիտ. 487, փիլ. Նախ. 45, լին., այլաբ., Ժ բան, 28. ագու գիտ. 397, փիլ. Սամփս. 549 եւ լին., 29. վատշուէր գիտ. 397, փիլ. լին. 432, 30. առձեռնընդել գիտ. 400, փիլ. Նախ., 58, 31. ծմրիմ գիտ 410, փիլ. իմաստ., 32. բառացի գիտ. 419, փիլ. տեսակ., բառացութիւն գիտ. 492, 33. գժոխըմբերագոյն գիտ. 422, փիլ. տեսակ., 34. գնդչեցուցանեմ գիտ. 430, գնդչեմ փիլ. լին., 35. հարստակող գիտ. 430, փիլ. այլաբ. եւ լին., 36. տօնուտ 432, փիլ. եղ. եւ Ժ բան, 37. գործակ գիտ. 436, փիլ. եղ., այլաբ., Ժ բան,

38. *անբաժացեալ* պիտ. 437, փիլ. լին., 39. *դագ* պիտ. 446, փիլ. Սամփս. 549, 40. *պտղեղ* պիտ. 448, փիլ. լին. 6, 41. *սանձակոծեմ* պիտ. 453, փիլ. այլաբ., 42. *ըմպահկեմ՝* պիտ. 453, փիլ. Լիւս. 154, լին. 297, 43. *ձեռնընդել* պիտ. 454, փիլ. Լիւս. 150, լին. եւ ժ բան, 44. *սուլումն* պիտ. 458, փիլ. Լիւս. 151 եւ իմաստ., 45. *արկած* պիտ. 459, փիլ. Լիւս., Նախ., լին. 84, 46. *սղոխ* պիտ. 460, փիլ. տեսակ., 47. *բաժակեմ* պիտ. 466, փիլ. լին. 12, Յովբ., 48. *ուղէշ* պիտ. 466, *քաջուղէշ* փիլ. լին. 6, 49. *անտած* պիտ. 472, փիլ. Նախ. 46, 50. *անքոյթ* պիտ. 484, փիլ. իմաստ., 51. *կենդակ* պիտ. 489, փիլ. ել. եւ քհ., 52. *արուեստակեմ* պիտ. 489, փիլ. Նախ. 4, Սամփս. 520, ժ բան, 53. *անկեղակարծ, անկեղակարծելի* պիտ. 506, փիլ. ել, *կեղակարծելի* փիլ. Նախ. 64 եւ ժ բան, 54. *դեռադեռ* պիտ. 495, փիլ. տեսակ., 55. *կենդանասերութիւն* պիտ. 502, փիլ. լին. 362, 56. *բարառնութիւն* պիտ. 510, փիլ. ել. 525, 57. *նախակրթակ* պիտ. 516, փիլ. լին. 41, 58. *տեսլասէր* պիտ. 568, փիլ. լին., *տեսլարան* փիլ. Լիւս. 135, *տեսլական* փիլ. ժ բան, եւն եւն։

*Փիլոնի ու Պիտոյից գրքի թարգմանութիւններում այս իւրատեսակ բառապաշարը, որ Հայկազեան բառգրքի աշխատակիցներն անուանել են «սքանչելի ճոխութիւն հայկաբան բառից», անչափ շատ է*[1]*։ Վերոյիշեալ օրինակները*

---

1 Ուշադրութեան արժանի են նաեւ հետեւեալ նմանութիւնները. Պիտ. 448՝ «զի զուր եւ ապիրատ մոլութեամբ

կազմում են այդ հարուստ բառապաշարի միայն մի փոքր մասը։ Այդ երկերի լեզուի ու ոճի միութիւնն այնքան է ակնյայտ, որ սրանք պէտք է համարուեն միեւնոյն դարաշրջանի եւ միեւնոյն թարգմանչական դպրոցի աշխատութիւն։ Իսկ Թրակացու քերականութիւնը, որ թւում է ինձ նոյնպէս նոյն շրջանի թարգմանութիւն, թէեւ որոշ չափով տարբերւում է նրանցից, սակայն այդ տարբերութեան գլխաւոր պատճառն այն է, որ Թրակացու երկը քերականական տեսութիւն է եւ նրա թարգմանութիւնը, Պիտոյից գրքի տեսութիւնների նման, խիստ նիւթական է ու բառացի, մինչդեռ Փիլոնը եւ Պիտոյից գրքի հնագոյն նախակրթութիւնները թարգմանուած են աւելի ազատ ու աւելի համապատասխան հին հայերէնի քերականութեան ու լեզուի կանոններին։

Բ. Ինչպէս յայտնի է, յունաբան հայերէնի հիմնական առանձնայատկութիւնն էր յունաբան յատուկ բառակազմութիւնը, գլխաւորապէս, նախդիրների միջոցով, որ անհարազատ էր Ոսկեդարեան կոչուած հայերէնի համար։ Այդ խորթ բառակազմութիւնը, թւում է ինձ, որ վերոյիշեալ երկերում եղել է իր կերպաւորման ու զարգացման առաջին շրջանում։ Օտարոտի բար-

---

դքանջու ղէշ եւ պատղեղ զՑովաբայն րոցակէզ հրդեհի. տաչորէր անդաստանս»։ Փիլ. յԻն. 6՝ «Զի երկու են ծառոց առաքինութիւնք՝ քաջուղէշ գոլ եւ պտղեղ»։ Պիտ. 446՝ «յսժ դժոխախեռ ազու եւ դադ րանիւքն վարէր»։ Փիլ. Սամփս՝. «Եւլայծ գնա պատիր՝ ազու եւ դադ րանիւքն»։

զուած բառերում յունական ἀντι-, δια- եւ μετα- նախդիրները, որ յունաբան յաջորդ շրջանների երկերում թարգմանուած են յաճախ հակ-, տար- եւ փոխ-, այս թարգմանութիւններում նոյն այս ձեւով գրեթէ չեն հանդիպում։ Այս նախդիրներով բարդուած բառերից գործ են ածուել միմիայն՝ հակատրեմ Փիլ. լին. 106, հակամիտեմ ἀντιῤῥέπω Պիտ. 451, հակամէտ ἀντίῤῥοπος Փիլ. այլաբ., փոխագրեմ Պիտ. 353, 420, փոխադրութիւն Փիլ. Ժ բան եւ փոխահատոյց Պիտ. 468։

“Հակ„ նախդիրի փոխարէն Փիլոնը եւ Պիտոյից գիրքը գործ են ածել “հակառակ„, որից “հակ„ նախդիրը, ըստ երեւոյթին, ծագել է յետագայում կրճատման միջոցով։ Այսպէս՝ հակառակակիր ἀντιπαθής (= հակակիր) ունի Փիլ. Լիւս., հակառակամարտ ἀντίμαχος (= հակամարտ) Փիլ. լին. 115, Փիլ. Սամփս. 565 եւ Պիտ., հակառակակայ ἀντικείμενος (= հակակայ) Փիլ. Լիւս., հակառակամէտ ἀντίῤῥοπος (= հակամէտ) Փիլ. Յովն., հակառակադրութիւն ἀντίθεσις (= հակադրութիւն) Փիլ. լին. 210 եւ Նախ. բ, հակառակադիր ἀντίθετος (= հակադիր) Փիլ. լին. 363, հակառակասէր Փիլ. լին. 197, Պիտ. եւն։ “Տար„ նախդիրը գործ է ածուել կամ յունարէն παρα- նախդրի փոխարէն, ինչպէս՝ տարբաղդատ παρασυναπτικός Թր. 35 եւ 36, տարացոյց Փիլ. լին. 81, 161, 304, Սամփս. 563, Պիտ. 383, կամ Ոսկեդարեան գրաբարի հետեւողութեամբ, ինչպէս տարագիր,

տարագրեմ Փիլ. Նախ. 16, Պիտ. 352, տարակարծ Փիլ. Ել. 448, Յոբ 593, Պիտ., տարամտութիւն Փիլ. Նախ. 75, տարազարդ Փիլ. Լիւս. 171 Պիտ. 396 ևն։

Խիստ ուշագրաւ է, որ այս երկերում յունարէն δια- նախադրութիւնը եւ ոչ մի անգամ չի թարգմանուել «տար» նախդրով, ինչպէս այդ սովորական էր յետագայ շրջանների յունաբան թարգմանութիւններում։ Թրակացու քերականութեան թարգմանը յունարէն διαζευχτικός բառը թարգմանել է անջատական (էջ 35), διάχειμαι տրամակայիմ Թր. 37, διαχρίνομαι ընարիմ Թր. 28, διάστημα բացատ Թր. 3, բացատութիւն Փիլ. Ել., διαστολή տրոհութիւն Թր. 2, διίστημι խտրոցեմ Թր. 36, մինչդեռ յետագայ թարգմանութիւններում նոյն բառերը թարգմանուած են՝ διαζευχτικός տարալուծական եւ տարալծական Դաւ. Պորփ. 343 եւ Վերլուծ. 581, διάχειμαι տարակայանամ Ել. Ստ. 138, διάστημα տարակացութիւն ԴՍՀմ. 196, Ել. Ստ. 74, διίστημι, διεστώς տարակացեալ Տիմոթ. Հակաճ. 114, Յամբղ. Ստ. 377, Պերիար. 541, Ել. Ստ. 137, կամ նաեւ տրամակայիմ Դաւ. Պորփ. 272, Յամբղ. Ստ. 386 եւ Ել. Ստ. 156, διαχρίνομαι տարորոշիմ Ել. Ստ. 125, Դաւ. Պորփ. 253, Յամբղ. Պեր. 513, Վերլ. 574, կամ նաեւ տրամորոշիմ Ել. Ստ. 68։ Ամենազօրաւոր ապացոյցն է այս երկերի հնութեան յունարէն διαφέρω, διαφορά, διάφορος բառերի թարգմանութիւնը։ Թրակացու թարգ-

մանը διαφέρω թարգմանում է առանձնանամ (էջ 3), διαφορά զարմազանութիւն Թր. 16 եւ զանազանակ Թր. 23, διάφορος զանազան Թր. 19, մինչդեռ Տիմոթէոս Կուզից սկսած այդ բառերը սովորաբար թարգմանուել են «տարբերեմ, տարբերութիւն եւ տարբեր», Փիլոնի եւ Պիտոյից գրքի թարգմանութիւններում «տարբերեմ, տարբերութիւն եւ տարբեր» բառերը նոյնպէս բնաւ չեն պատահում, ուստի կարելի է թերեւս եզրակացնել, որ այս բառերը կազմուած ու գործածուած պիտի լինեն յունաբան լեզուի զարգացման յետագայ շրջաններում[1]։

է. Յունարէն ὑποκείμενος եւ συμβεβεκώς = ենթակայ եւ պատահումն, որ իմաստասիրական ամենագործածական բառերն են, այս թարգմանութիւններում դեռեւս չեն հաստատուել, որպէս կայուն ու սովորական եզրեր. թէեւ ենթակայ բառն ունեն Փիլ. Նախ. 26, լինել. 66, ժ բան եւ Պիտ. 510, պատահումն ունեն Պիտ. 424 եւ Փիլ., սակայն նոյն բառերը թարգմանուած են նաեւ պատահ Թր. 19, Պիտ. 368, Փիլ. Նախ. եւ իմաստ., ներքոկայ Պիտ. 341 եւ ստորակայ Փիլ. լին. 26, Սամիս. 558, Պիտ. 357, 365 եւ 490։

---

[1] Եթէ լեզուական այս իմ դիտողութիւնն ուղիղ համարուի, այդ դէպքում պէտք է նաեւ ենթադրել, որ Կիւրեղի Աղեքսանդրացւոյ Գանձուց գիրքը, ինչպէս եւ աստուածաբանական այն երկերը, որոնք Հայկազեան բառգրքի վկայութեամբ գործ են ածել նոյն այս «տարբերեմ» եւն բառերը, հաւանաբար թարգմանուած պիտի լինեն Երդ դարի առաջին կիսից յետոյ։

Յունարէն φυσιολογία, φυσιολόγος եւ φυσιολογικός բառերը Արիստոտէլեան երկերում թարգմանուած են բնաբանութիւն, բնաբանական ԴՍՀմ. 127, Դպորփ. 271, Էլ. Սա. 24, Նոննոս 39, իսկ այս թարգմանութիւններում բնախօսութիւն եւ բնախօս Փիլ. Նախ. 75, Լին. 96, այլաբ. եւ Պիտ. 342։ Փիլոնը եւ Պիտոյից գիրքը չունին մակացութիւն եւ մակացու (= յուն. ἐπιστημή եւ ἐπιστήμων) բառերը, որ առաջին անգամ գործ են ածուած Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ, նմանապէս եւ յունարէն ἐνάντιος բառը, որ Տիմոթէոս Կուզից սկսած յետագայ երկերում թարգմանուած է տառացի "ներհակ", հնագոյն այս երկերը թարգմանում են "ընդդիմակ"։ Ներ-հակ = ἐν-άντιος չէր կարող կազմուել թարգմանչական այս շրջանում, որովհետեւ "հակ" նախդիրը, ինչպէս տեսանք, դեռ եւս գործածական չէր։

Լեզուական այս բոլոր դիտողութիւնները, թւում է ինձ՝ որոշ հիմք են տալիս ենթադրելու, որ վերոյիշեալ թարգմանութիւնները կազմում են յունաբան թարգմանութիւնների յատուկ մի խումբ եւ թարգմանուած են Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնից առաջ։

§ 41. Փիլոնը եւ Պիտոյից գրքերը թարգմանուած են Թարգմանչաց ժամանակներից յետոյ։ — Փիլոնը եւ Պիտոյից գրքի հնագոյն մասերը[1], որոնց խմբա-

[1] Պիտոյից գրքի հնագոյն մասերն են այդ գրքի տե-սութիւնները եւ վարժութիւնների մեծագոյն մասը, որոնք իրանց բառապաշարով ու լեզուական առանձնայատկութիւն-

կից ու ժամանակակից լինելն ինձ համար կասկածից դուրս է. թւում է ինձ, որ թարգմանուած պիտի լինեն Թրակացու քերականութիւնից յետոյ։ Այս ենթադրութիւնը, որ ամենակարեւոր նշանակութիւնն ունի յունաբան թարգմանութիւնների ժամանակագրութեան համար, աւելի քան հաւանական եմ համարում, հիմնուելով լեզուական հետեւեալ նկատառումների վրայ։

ա. Թէ Փիլոնի եւ թէ Պիտոյից գրքի թարգմանիչները ծանօթ են եղել քերականական այն բառապաշարին, որ առաջին անգամ կազմուած պիտի լինէր Թրակացու քերականութեան թարգմանութեան ժամանակ։ Ն. Ադոնցն իր «Արուեստ Դիոնիսեայ քերականի եւ մեկնութիւնք նորին» աշխատութեան մէջ շատ ճիշտ դիտել է (էջ CLXXVI, ծանօթութիւն), որ Կիւրեղ Աղեքսանդրացուն վերագրուած «Մեկնութիւն Ս. գրոց» թարգմանութեան մէջ քերականական բառերը բոլորովին տարբեր են Թրակացու քերականութեան բառերից։ Այսպէս՝ այս թարգմանութիւնն ունի անձայն = Թր. բա-

---

ներով կազմում են սերտ ու անքակտելի մի ամբողջութիւն։ Հնագոյն մասի վարժութիւններ չեն ըստ իրանց լեզուի. ա. «յաղագս չափոյ» վարժութիւնը, որ Գ. Վ. Ցովսէփեանը վերագրում է Դաւիթ Հարքացուն։ բ. «...ութիւն միայնամասութեան Դաւթի եւ Գողիաթու», որ Էջմիածնի Թ. 920 ձեռագիրը համարում է խոսրովիկ թարգմանչի գործ (տես «Արարատ» 1892, դ)։ Գ. Լեզուական առանձնայատկութիւնից, կարծում եմ, որ կապակցելի են նաեւ մի քանի ուրիշ վարժութիւններ, ինչպէս «պարապաւ որթոյ» (էջ 463—469), «պարապաւ նաւարկութեան» (էջ 470–475), «բաղդատութիւն Սերբաշհամաւ եւ Եղիայի» (477—483) եւն։

ղաձայն, նշանագիր = Թր. տառ, արուաբար = Թր. արական, իգաբար = Թր. իգական, միաւոր = Թր. եզական, բազմաւոր = Թր. յոգնական եւ բազմաւորական, փոխանակ-անուն = Թր. գերանուն. Եթէ Փիլոնն ու Պիտոյից գիրքը թարգմանուած լինէին Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնից առաջ, հաւանական կը լինէր սպասել, որ նրանց քերականական բառերը նոյնքան տարբեր պէտք է լինէին Թրակացու քերականութեան բառերից, ինչպէս եւ "Մեկնութիւն Ս. գրոց" թարգմանութեան մէջ։ Սակայն բոլորովին հակառակն ենք տեսնում՝ Փիլոնի եւ Պիտոյից գրքի քերականական բառերը միանգամայն համապատասխանում են Թրակացու քերականութեան բառերին։ Այսպէս՝ 1. συλλαβή փաղառութիւն ունեն Թր. 9, 10, Փիլ. Ել. 540, 2. στοιχεῖον տառ Թր. 4, 9, Փիլ. Ել. 540, Իմաստ., Պիտ. 386, 3. πτῶσις հոլով Թր. 13, 17 եւն, Փիլ. Նախ. 83, 4. σύνταξις բաղդասութիւն Թր. 12, 30, Փիլ. Նախ. 9, 5. ἔπος տաղ Թր. 2, Փիլ. Լին. 245, Փիլ. Տեսակ., Պիտ. 359, 6. σύνδεσμος շաղկապ Թր. 12, 35, Փիլ. Նախ. 83, 7. τραγῳδία ողբերգութիւն Թր. 2, Փիլ. Լին. 413, Ժ բան, Պիտ. 369, 411, 8. κωμῳδία, κωμῳδός կատակերգութիւն, կատակերգակ Թր. 2, Պիտ. 366, 9. ῥαψῳδία հագներգութիւն Թր. 4, Փիլ. Հեսս. 10, 10. παρώνυμον յարանուն Թր. 13, 15, Պիտ. 456, յարանունակի Փիլ. Լին. 440, Լիւս. 132, 11. συνώνυμον փաղանուն Թր. 17, 19. փաղանունաբար Փիլ. Այլար., բաղանունու-

թիւն Փիլ. եղ. 443, 12. ἐπώνυμον մականուն Թր. 17, 19, Փ. լին. 60, 20ք եւ տեսակ., 13. ἑνικός եզական Թր. 16, 17 եւն., Փիլ. լին. 12, 254 (եզակի), Պիտ., 14. πληθυντικός յոգնական Թր. 16, 17 եւն., յոգնակի Փիլ. լին. 12, 229, Պիտ. 399, 15 ἀντωνυμία դերանուն Թր. 12, 30, դերանունութիւն Թր. 27, 28, Փիլ. լին. 70, 16. ἐνεστώς ներկայ Թր. 23, 24 եւն, Փիլ. լին. 158, Պիտ. 511, 17, παρεληλυθώς անցեալ, Պիտ. 511, Փիլ., Թր. 23, 18. μέλλων ապառնի Թր. 23, 24 եւն, Պիտ. 511, 19. ἴαμβος մեծավերջ Թր. 43, մեծավերջական Պիտ. 369, 20. παράγωγον ածանց Թր. 13, 28 եւն., Պիտ., 21. σύμφωνον բաղաձայն Թր. 6, 10, բաղաձայնակի Փիլ. եղ. 446, բաղաձայնութիւն Փիլ. եղ. 483, տեսակ., բաղաձայնական Պիտ. 537, 22. σύγκρισις բաղդատութիւն Թր. 15, Փիլ. լին. 68, 134, 215, Պիտ. 357, 456 եւն., 23. ὑπόθεσις ստորագրութիւն Թր. 4, Փիլ. Նախ. 4 լին. 434, ժ բան[1],

---

1 Նիկ. Ադոնցը նկատել է արդէն, որ ստոր- = κατα- Դիոնիսիոս Թրակացու քերականութեան մէջ չի հանդիպում («Արուեստ Դիոնիսեայ», էջ CLXXXV)։ Նոյնը պէտք է ասել եւ Փիլոնի ու Պիտոյից գրքի մասին։ Այս երեք թարգմանութիւններում ստոր-նախդիրը, ինչպէս ստորակայ ὑποκείμενος Փիլ. լին. 26, Սամփս. 558, Պիտ. 357, ստորակէտ ὑποστιγμή Թր. 3, ստորանկանիմ ὑποπίπτω Փիլ. լին. 33, 395, ստորագրեմ ὑπογράφω Փիլ. Նախ. 84, Յուն. 170 եւ. համապատասխան է յունարէն ὑπο- նախադրութեան, իսկ յետագայ թարգմանութիւնների ամենասովորական բառերը, ինչպէս ստորոգութիւն κατηγορία, ստորոգեմ κατηγορέω, ստորասութիւն κατάφασις եւն, այս թարգմանութիւններում եւ ոչ մի անգամ չեն գործածուած։

քերականական այս բառերը, մեծ մասամբ, կազմուած պիտի լինեն Թրակացու քերականութեան թարգմանութեան ժամանակ, եւ եթէ Փիլոն ու Պիտոյից գիրքը գործ են ածում միշտ Թրակացու քերականութեան համապատասխան միեւնոյն բառերը, այդ հանգամանքն ըստ իս աւելի քան հաւանական մի ապացոյց է, որ նրանց թարգմանութիւնը պէտք է դնել Թրակացուց յետոյ:

Է. Թրակացու քերականութեան յունաբան բառամթերքն ունի հետաքրքիր մի առանձնայատկութիւն: Յունաբան բառակազմութիւնն այս երկում դեռեւս հաստատուն չէ, քերականական միեւնոյն եզրները հայերէնում շատ յաճախ թարգմանուած են տարբեր բառերով եւ նոյն բազմազանութիւնը նկատելի է նաեւ յունական նախադրութիւնների թարգմանութեան ժամանակ: Օրինակ՝ 1. διάθεσις թարգմանուած է հաստատադրութիւն թր. 22 եւ տրամադրութիւն թր. 22. 2. ἀποτελέω անպակաս ելուզանեմ թր. 5, կատարեմ թր. 5, բացակատարեմ թր. 6. 3. ἐμπεριλαμβάνω ներպարառեալ թր. 4 եւ ներբակառեալ թր. 14. 4. συλλαβή շաղաշար թր. 5, 11, փաղառութիւն թր. 9, 10 եւ վանդ թր. 9, 10. 5. σύμφωνον բաղաձայն թր. 6, 10, շարաձայն թր. 6, ձայնակից թր. 8, 10 եւ ձայնորդ թր. 9, 10, 11 եւն. 6. յուն. παρα- նախադրութիւնը թարգմանուած է մատ-, յար-, տար-, ինչպէս παρακέλευσις մատհրաման թր. 34, παρακείμενος յարակայ թր. 23, 24, 46, παρασυναπ-

τικός տարբաղմատ թր. 35, 36. 7. περι- = պար- եւ բակ-, ինչպէս περιεκτικόν պարունակ թր. 18, 21 եւ περιληπτικόν բակձաձական թր. 18, 20. 8. συν = բաղ-, շաղ-, փաղ-, ջոկ-, շար-, -կից, ինչպէս συγκριτικός բաղդատական թր. 13, 14, 15, συνώνυμον փաղանուն թր. 17, 19, σύνθεσμος շաղկապ թր. 12, 35, συμπλεκτικός ջոկաման թր. 35, σύνθεσις շարադրութիւն թր. 12, σύμφωνον ձայնակից թր. 8, 10. 9. ὑπερ- = գեր- եւ առաւել-, ինչպէս ὑπερσυντελικός գերակատար թր. 24 եւն, առաւելակատարական թր. 48 եւն. 10. δια- = տրամ- եւ հաստատ-, ինչպէս διάθεσις տրամադրութիւն թր. 22 եւ հաստատադրութիւն թր. 22: Դիոնիսիոս Թրակացու հայերէն բնագիրը, թէեւ բառացի թարգմանութիւն է յունարէնից, սակայն նոյն աստիճան եւ նոյն հետեւողութեամբ վանգ առ վանգ թարգմանուած չէ, ինչպէս Պորփիւրի Ներածութիւնը եւ Արիստոտէլի Յաղագս մեկնութեան եւ Ստորոգութիւնք երկերը: Նրա մէջ յունական բարդ բառերի նախադրութիւնները շատ յաճախ կամ բնաւ չեն թարգմանուած կամ թարգմանուած են ոսկեգարեան գրաբարի հետեւութեամբ: Օրինակ՝ 1. ἀναλογία համեմատութիւն թր. 1 (Ել. Ստ. ունի վերաբանութիւն էջ 50). 2. διαζευκτικός անջատական թր. 35 (Դաւ. Պորփ. տարալուծական 343, Վերլուծ. տարալծական 581). 3. διαιρέω διαιρεθῆναι կտորիլ թր. 21, διαιρεθέν զատուցեալ թր. 21 (տրամատեմ, տրամատական եւն. ՍՀմ. 204, Փիլ. լին. 366, 381, 403, Վերլ.

577 եւ Ցամբլ. 453, 553 եւն). 4. διακρίνομαι ընտրիմ Թր. 28 (տարորոշիմ Դպրութ. 253, Վերլ. 574, Արիս. Ստ. եւ պէր. 372, 513 եւն կամ տրամորոշիմ Էլ. Ստ. 68). 5. διάστημα բացատ Թր. 3 (տարակացութիւն ԴՍՀմ. 196, Էլ. Ստ. 74). 6. διαφέρω առանձնանամ Թր. 3, διαφορά զարմազանութիւն Թր. 16, զանազանակ Թր. 23, διάφορος զանազան Թր. 19 (տարբերութիւն, տարբեր Տիմոթ. Հակաճ. 262, Ցամբլ. Ստ. եւ պէր. 413, 496, Դաւ. Պորփ. 254, Վերլ. 587 եւն). 7. ἀπολείποντος պակասեցելոյ Թր. 16, պակասելոյ Թր. 16 (Էլ. Ստ. բացաթողլոց 36). 8. παράγομαι ած- անցիմ Թր. 29 (յարածիմ Էլ. Ստ. 25, Դաւ. Առած 218). 9. παρέπεται հետեւին Թր. 13, 28, յարեւին Թր. 26, 27 (յարահետեւիմ Ար. Ստ. 384). 10. συζυγία լծորդ Թր. 22, լծորդութիւն Թր. 24, 25 (շարալծեմ Ար. Աշխ. 617, Պիտ. 356). 11. σύμφωνον ձայնակից Թր. 8, 10 եւն։

Թրակացու քերականութեան լեզուական այս առանձնայատկութիւնները՝ յունարէն բարդ բառերի թարգմանութիւնը Ոսկեդարեան գրաբարի բառերով կամ նրա կանոնների հետեւողութեամբ, թարգմանչի վարանումներն ու անվճռականութիւնը քերականական եզրների ու նախդիրներով բարդուած բառերի թարգմանութեան ժամանակ, նախդիրների թարգմանումը հայերէն տարբեր ու բազմազան նախադրութիւններով, այս բոլորը, իմ կարծիքով, Թրակացու թարգմանութեան հնութեան մի նշան է եւ բա–

ցատրւում է յունաբան որոշ ու հաստատուն բառամթերքի բացակայութեամբ։ Մի քանի նախդիրներ, ինչպէս խուն- = κατα-, քող- = ἀμφι-, հաստատ- = διά- եւ ծոկ- = σύν-, գործ է ածել բացառապէս մի միայն Թրակացու քերականութեան թարգմանութիւնը։ Այս նախդիրներն այնուհետեւ չեն հանդիպում՝ նոյն իսկ սրա խմբակից Փիլոնի ու Պիտոյից գրքի թարգմանութիւններում։ Առանձին ուշադրութեան արժանի են գեր- = ἀντι- եւ շաղ- = συν- նախադրութիւնները, որ գործ են ածուած, գլխաւորապէս, Թրակացու եւ Փիլոնի երկերում՝ եւ կապւած են, հաւանօրէն, թարգմանչական հնագոյն այս շրջանում։ Թէ Տիմոթէոս կուզի Հակաճառութեան մէջ եւ թէ Արիստոտէլեան երկերի ու նրանց մեկնութիւնների թարգմանութիւններում շաղ- նախդրի փոխարէն գործ է ածուել միշտ շար- նախադրութիւնը. օրինակ՝ 1. σύλληψις շաղառակ Թր. 37, իսկ յետագայ թարգմանութիւններն ունեն συλλαμβάνω շարառեմ Տիմ. Հակաճ. 10, 56, Ներած. Պորփ. 237. 2. συμπλέκω, συμπλοκή շաղապատեմ Փիլ. լին. 259, 369, Սամիս. 567, 568, շաղամանութիւն Փիլ. լին. 160, իսկ յետագայ թարգմանութիւններում՝ շարամանեմ եւ շարամանութիւն Տիմ. Հակ. 319, Ցամբլ. պէր. 491, Ար. Աշխ. 612, Եղ. Ստոր. 58, Ար. Ստոր. 359 (ունեն նաեւ Փիլ. լին. 332 եւ Պիտ. 529)։ Շաղ- եւ դեր- նախադրութիւններով իմաստասիրական թարգմանութիւններն ունեն մի միայն երկու բառ՝ σύνδεσμος շաղկապ Դաւ. Պորփ. 265, Ցամբղ.

պէր. 489, վերլուծ. 576, Ար. Աշխ. 622 եւ ἀντωνυμία դերանուանութիւն Ցամբղ. պէր. 489։ Այս երկու բառը, որպէս Թրակացու քերականութեան գործածական ու ընդհանուր եզրներ, իմաստասիրական թարգմանութիւնները ժառանգել են, անտարակոյս, յունաբան հնագոյն թարգմանութիւնների բառապաշարից. իսկ այս փաստը դարձեալ պարզ մի ակնարկ է, որ Թրակացու քերականութիւնը թարգմանուած ու ընդհանրացած պիտի լինէր Արիստոտէլեան երկերի ու նրանց մեկնութիւնների թարգմանութիւններից առաջ։

գ. Թրակացու ու Փիլոնի թարգմանութիւնների սերտ առնչութիւնը պարզ երեւում է Հայկազեան բառգրքում Փիլոնի Այլաբանականքից քաղուած մի հատուածից, որի քերականական բառերը կատարելապէս համապատասխանում են Թրակացու քերականութեան բառերին։ Այս հատուածը հետեւեալն է.

*Փիլ. Այլաբան. 109:*

“Եւ զբարբառոյ սաստակութիւնս յօրմանցն եւ թն գոլ դէպ եղեւ շեշտ, բութ, պարոյկ. թաւ, սօսկ, երկար, սուղ„։

*Թրակ. (Ն. Ադոնց), 38:*

“Առոգանութիւնք են տասն. շեշտ, բութ. պարոյկ, երկար. սուղ, թաւ, սօսկ, ապաթարց, ենթամիոյն, ստորատ„։

Նոյնանման այս բառերը, լինելով քերականական յատուկ եզրներ, կազմուած են յունական քերականութեան հետեւողութեամբ, հաւանօրէն, Թրակացու թարգմանութեան ժամանակ, ուստի պէտք է ենթադրել, որ Փիլոնի Այլաբանականքի թարգմանը շատ մօտ ծանօթ է եղել

այդ քերականութեան, որի բառապաշարից օգտուել է յիշեալ իր հատուածում: Փիլոնի Այլաբանականքը, որից, ինչպէս յայտնի է, օգտուել էր Եղիշէ պատմագիրը, պատկանում էր անշուշտ Փիլոնի թարգմանութիւնների հնագոյն խմբին[1], նրա կախումը Թրակացու քերականութիւնից դարձեալ կարեւոր մի փաստ է եւ ապացոյց, որ Փիլոնի երկերը թարգմանուած պիտի լինեն Թրակացու քերականութիւնից յետոյ:

Վերոյիշեալ լեզուական դիտողութիւնները, եթէ անգամ նրանցից որեւէ մէկը հաւանութիւն չգտնի, այնուամենայնիւ իրանց ամբողջութեամբ, թւում է ինձ, որ միանգամայն բաւարար կերպով լուծում են յունաբան թարգմանութիւնների ժամանակագրութեան ամենամութ խնդիրներից մէկը եւ ապացուցանում, որ Դիոնիսիոս Թրակացու քերականութիւնը թարգմանուած է Փիլոնից ու Պիտոյից գրքից առաջ եւ լեզուական իր առանձնայատկութիւններով խմբակից է հնագոյն այս թարգմանութիւններին:

§ 42. Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, Արիստոտէլի Յաղագս Մեկնութեան եւ Ստորոգութեանց

[1] «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ (1906 թ., Մայիս, էջ 148) «Եղիշէ, քննական ուսումնասիրութեան» հեղինակը կարծում է, որ «Փիլոնի Հայ թարգմանութեան վերջին խումբը (1892 տպ. Վենետիկ) բուական կը տարբերի առաջիններէն (1822 եւ 1826)»: Փիլոնի 1892 թ. հրատարակութիւնը, ձեռքի տակ չունենալով, հնարաւորութիւն չեմ ունեցել մանրամասնօրէն ուսումնասիրել նրա յունաբան լեզուն, սակայն այդ երկերի բառապաշարը ծանօթ է ինձ Հայկազեան բառագրքից եւ ես որեւէ հիմք չեմ տեսնում համարելու այդ թարգմանութիւնը տարբեր առաջիններից:

թարգմանութիւնները, Յամբղիքոսի մեկնութիւնների հետ միասին, խմբակից են ու ժամանակակից եւ կազմում են յունաբան թարգմանութիւնների երկրորդ շերտը։ —

*Յունաբան թարգմանութիւնների երկրորդ շերտը կազմում են Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, Արիստոտէլի Յաղագս մեկնութեան ու Ստորոգութեանց թարգմանութիւնները եւ Յամբղիքոսի մեկնութիւնները, որ վերագրուել են սխալմամբ Դաւիթ Անյաղթին։*

*Յամբղիքոսի մեկնութիւնների ձեւը, ինչպէս գիտենք, տարբերւում է Էլիասի ու Դաւթի մեկնութիւններից նրանով, որ այս մեկնութիւններում Արիստոտէլի Ստորոգութեանց եւ Յաղագս մեկնութեան գրոց ամբողջ բնագիրը բաժանուած է պրակների եւ բնագրի իւրաքանչիւր պրակին հետեւում է նրա համապատասխան մեկնութիւնը (տե՛ս § 32)։ Արդ՝ թէ Ստորոգութեանց եւ Յաղագս մեկնութեան կամ Պէրիարմէնիաս գրոց հայերէն բնագրում եւ թէ Յամբղիքոսի մեկնութիւններում՝ յունաբան բառապաշարը եւ լեզուական առանձնայատկութիւններն այնքան մօտ են ու նման իրար*[1]*, որ առանց վարանման ու*

---

[1] Ուշադրութեան արժանի են մի շարք բառեր, որ յատուկ են այս թարգմանութիւններին եւ գրեթէ գործածուած չեն Դաւթի ու Էլիասի մեկնութիւններում, ինչպէս՝ 1. διαιρέω, διαιρετικός, διαίρεσις տրամատել, տրամատական, տրամատութիւն Յամբ. Ստոր. 411, 412 (շատ յաճախ), Պէր. 493, 533 եւն (— բաժանել, բաժանական, բաժանումն ԴՍՀմ. 127, 133, 189 եւն. ԴՊորփ. 251, 258 եւն Էլ. Ստ. 21, 38, 74 եւն.), 2. ἐπιδιαίρεσις մակտրամատութիւն Ար. Ստ. 418 (— մակբաժանումն

վճռականօրէն կարելի է այդ թարգմանութիւնները համարել միեւնոյն թարգմանչի աշխատութիւն, ինչպէս այդ շատ ճիշտ գուշակել է Փ. Կոնիբէրն իր "Anecdota Oxoniensia" աշխատութեան մէջ (Oxford 1892, էջ XXII)։ Յունաբան թարգմանութիւնների ժամանակագրութեան համար շատ կարեւոր նշանակութիւն ունի մի այլ փաստ, որ պարզուեց ինձ համար Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան եւ Յամբլիքոսի մեկնութիւնների յունաբան բառապաշարի մանրազննին բաղդատութիւնից յետոյ։ Այդ թարգմանութիւններն ըստ իս խմբակից ու ժամանակակից են, եւ այս հանգամանքն ուշադրաւ մի նորութիւն է, որով որոշւում է իմաստասիրական հնագոյն թարգմանութիւնների ժամանակը, Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, ինչպէս տեսանք, թարգմանուած է 552—564 թուականների ժամանակամիջոցում (տե՛ս § 38)։ Աւելին՝ եթէ

---

ԴՍՀմ. 189), 3 ἀντιδιαιρέω, ἀντιδιαίρεσις հակատրամատութիւն Յամբլ. Սա. 417, Պեր. 497 (= ընդդիմաբաժանեմ ԴՍՀմ. 204. 128, ԴՊորփ. 298, հակաբաժանեմ ԴՊորփ. 275 Էլ. Սա. 76), 4. συνάπτω յարամօտեմ Ար. Սա. 372 (= յարամերձեմ ԴՍՀմ. 196, Վերլ. 558, Էլ. Սա. 118), 5. διακρίνομαι տրոհեմ Յամբ. Պեր. 492 եւն. Ստոր. յաճախ (= տրամորոշեմ ԴՍՀմ. 197. Էլ. Սա. 68, տարորոշեմ 253, նաեւ Յամբղ. Պեր. 513), 6. πρωτότυπος, ἀρχέτυπος նախագաղափար Յամբղ. Սա. 415 եւն, Պեր. 490 եւն (= նախատիպ ԴՍՀմ. 169, Էլ. Սա. 38)։ Յամբլիքոսի թարգմանութեան յատուկ բառեր են նաեւ՝ առնանի Յամբղ. Սա. 448, Պեր. 519, ցուցութիւն Յամբ. Սա. 433, Պեր. 497, ենթացոյց Յամբ. Սա. 448, Պեր. 502, առութիւն Յամբ. Սա. 443, Պեր. 505 եւ ուրիշ բառեր։

ընդունուի այդ Թարգմանութեան ու Ցամբղիկոսի Մեկնութիւնների լեզուական սերտ առընչութիւնը, շատ պարզ է, որ Արիստոտէլի Ստորոգութեանց եւ Ցաղագս Մեկնութեան գրոց եւ Ցամբղիքոսի Մեկնութիւնների Թարգմանման ժամանակը եւս պէտք է ենթադրուի վեցերորդ դարում եւ ոչ եօթերորդ կամ ութերորդ, ինչպէս Հայ բանասէրներից ոմանք կարծել են։

—. Ցունաբան այս երկերի լեզուական սերտ կապը, որ նշան է նրանց խմբակցութեան, հաստատում են նախ եւ առաջ հաղուագիւտ ու առանձնայատուկ այն բառերը, որ գործ են ածուած գրեթէ բացառապէս այս Թարգմանութիւններում։ Այդպիսի բառեր են. 1. Թուելութիւն Ցամբղ. պէր. 492, 493 եւն, ՑՍտ. յաճախ, Տիմոթ. Հակաճ. 18, 20 եւն. 2. կարութիւն δύναμις Ցպէր. 533, Տիմ. 78, 90, 168 եւն. 3. իրակութիւն ՑՍտ. 369, իրակեմ Տիմ. 19. 4. իրաւորեմ Ար. պէր. 470, Տիմ. 33. 5. ապուսեմ ՑՍտ. 431, Ար. պէր. 475, Տիմ. 280. 6. արտառաջնորդական Ցպէր. 514, արտառաջնորդութիւն Տիմ. 97. 7. առնշանակեմ Ար. պէր. 473, Ցպէր. 491 եւն, Տիմ. 81. 8. բացերեւոցեմ Ցպէր. 497, Տիմ. 59. 9. հետեւութիւն ՑՍտ. 446, Ցպէր. 527, Տիմ. 70. 10. խմացուած Ցպէր. 491, Տիմ. 75. 11. հակաճառեմ Ցպէր. 511, Տիմ. 18. 12. նոյնաբանութիւն Ցպէր. 516, Տիմ. 217. 13. ներանձնաւոր ἔμψυχος Ցպէր. 514, Տիմ. 31 (= շնչական ԴՍՀմ. 206, Դպ. 259, ներշնչական Դպորփ. 348, ներ-

չնչաւոր Դպորփ. 318, Էլ. Ստ. 48, ներանձնական Դպորփ. 258, ներանձնաւոր Վերլ. 568)[1]. 14. փար նախդիրը հանդիպում է միայն այս թարգմանութիւններում՝ փարաբարձեմ ՅՍտ. 454, փարագրեմ. փարադրութիւն ՅՍտ. 452, 454, 457, փարագրաւղն Տիմ. 73. 15. այս թարգմանութիւնները գործ են ածում շարունակ "հետեւանամ„ բայը փոխանակ "հետեւեմ„՝ ՅՍտ. 411 եւն ՅՊէր. 488 եւն, Տիմ. 9, 40, 78 եւն։

բ. Յաջորդելով յունաբան թարգմանութիւնների հնագոյն խմբին, թարգմանական երկրորդ այս շերտը մեծ չափով գտնւում է նրանց բառապաշարի ու քերականական առանձնայատկութիւնների ազդեցութեան տակ։ Բազմաթիւ բառեր, որ հանդիպում են յունաբան այս երկերում, նման են ու համապատասխան Թրակացու քերականութեան, Փիլոնի ու Պիտոյից գրքի յատուկ բառամթերքին. բացակայում են Դաւթի եւ Եղիասի մեկնութիւններում, որ կազմում են Դաւթի ու Եղիասի մեկնութիւններում, որ կազմում են յունաբան թարգմանութիւնների երրորդ շերտը։ Այսպիսի բառեր են.

1. բաղաձայնիմ συμφωνέω ՅՍտ. 432, Տիմ. 53, 64, բաղաձայն բաղաձայնութիւն եւն

---

[1] Տիմոթէոս - Յամբլիքոսի թարգմանութիւնները գործ են ածում, գլխաւորապէս, "ներանձնաւոր բանաւոր մասնաւոր„ ձեւ, մինչդեռ Դաւթի ու Եղիասի մեկնութիւնները գերադասում են "ներանձնական, բանական, մասնական„ ձեւերը։

փիլ. եւ. 483, թր. 6, 10, պիտ. 537, տիմ. յաճախ (Էլ. Ստ. էջ 119 ունի "բաղաձայն", որպէս քերականական եզր, ընդհանրացած Թրակացու քերականութեան թարգմանութիւնից յետոյ). 2. վերծանեմ, վերծանութիւն, վերծանելի ἀναγνώσκω, ἀνάγνωσις, ἀναγνωστέον Յպէր. 488, 508, տիմ. 100, 241, թր. 1, 2, 3. 3 տեսակագործեմ εἰδοποιέω Յպէր. 518, տիմ. 195, փիլ. նախ. 4 (= տեսակարարեմ ԴՍՀմ. 178, ԴՊորփ. 320, Էլ. Ստ. 56 եւն). 4. սերկ, սերկեան Յպէր. 496, տիմ. 52, 77, 194, թր. 31 (σήμερον), նաեւ պիտ 5. հարցափորձեմ. հարցափորձութիւն եւն ՅՍտ. 427, Յպէր. 508 (յաճախ), փիլ. նախ. 8, պիտ. 6. գաղափար τύπος ՅՍտ. 362, 415, տիմ. 20, թր. 14, փիլ. եւ. եւն, գաղափարեմ Տ. 201. 7. գերազանցեմ, գերազանցութիւն ՅՍտ. 417, 443, տիմ. 55, պիտ. 345. 501, փ. եւ. 451 եւն. 8. յաւէտախաղաց Յպէր. 533, տիմ. 7, 275, պիտ. 359, փիլ. լին. 293 եւն. 9. ածանցուցեալ παρηγμένος պէր. 504, ածանցուցեալ թր. 16 եւն, ածանցիմ պիտ., (= յարածեմ παράγω Էլ. Ստ. 120, Դաւ. Առ. 218). 10. ապասութիւն ՅՍտ. 429, թր. 33 (ἀπαγόρευσις) 11. յարատեւ Ար. Ստ. 386. պիտ. 401. 12 գործառնութիւն Յպէր. 507, պիտ. 367 պիտ. 485 (գործաւորութիւն ԴՊորփ. 348, ՍՀմ. 124, Էլ. Ստ. 26 եւն = յուն. πρᾶξις). 13. հաւ. հաւակ, հաւանամ, հաւեմ թր. 10, 11, 12, պիտ 394, 398, 414, բարեհաւ փ. Յոմ. 586, չարահաւ, չարահա-

ւեմ փիլ. լին. 31, Տ. 13, ազգահաւ փիլ. լին. 211, նախահաւեմ տիմ. 163. 14. մակսաստեմ տիմ. 98, մակսաստութիւն ἐπίτασις Թր. 15. 15. բառացի, բառացութիւն տիմ. 66, գիտ. 419, 492, փիլ. տեսակ. 16. տեսլարան տիմ. 315, փիլ. Լիւս. 135 տեսլասէր գիտ. 568 եւն. 17. ապաբանեմ, ապաբանութիւն ἀπολογία, ἀπολογέω տիմ 16, փիլ. Նախ 74, Լիւս. 161, լին. 47, 297, Սամ. 564, Տ. 225. 18. գրաւորական տիմ. 219, 320, գիտ. 419, փիլ լին 335, 336. 19. ներբերեւեալ տիմ. 230, ներբերեւութիւն փ. իմաստ. 20. երգաբանեմ տիմ. 160, 249, գիտ. 580. 21. վերագիտեմ տիմ. 58, գիտ. 445, 22. չլին փիլ. Նախ. 19, չնեմ Տ. 152, գիտ. 343. 23. պարման, պարմանի Տ. 299, գիտ., փ. տեսակ.:

Գ. Քերականական առանձնայատկութիւններով եւս այս թարգմանութիւնները յարում են թարգմանութիւնների հնագոյն խմբին եւ տարբերւում Դաւթի ու Եղիասի մեկնութիւններից: Թրակացու քերականութեան մէջ յունարէն ἐν նախդիրը թարգմանուած է յաճախ ըն. օրինակ՝ ἐν συγκρίσει ըն բաղդատութեան Թր. 15, ἐν συνθέσει καὶ συντάξει ըն բարդութեան եւ բաղդատութեան Թր. 30: Արդ՝ ըն նախդրի նոյն այս գործածութիւնը ընդհանուր եւ սովորական է նաեւ Տիմոթէոսի Հակաճառութեան, Արիստոտէլի Ստորոգութեանց եւ Ցաղագս մեկնութեան գրոց, ինչպէս եւ Ցամբլիքոսի մեկնութիւններում. օրինակ՝ ներկլինս Տ. 48, ըմեկ

Տ. 54, 60, նըմարմնի Տ. 67 եւն, ըն մարմնի Ար. Ստ. 360, 363, ըն գոյացութեան, ըն քանակի ՅՍտ. 410, ըն ճարտասանութեանն Ար. Պէր. 465, ըն լինելութեան ՅՊէր. եւն։ Դաւթի ու Եղիասի մեկնութիւններում = ἐν նախդիրը այլեւս գործածական չէր, բացի մի քանի հաղուագիւտ բացառիկ դէպքերից, որ պէտք է վերագրել նախընթաց թարգմանութիւնների ազդեցութեան։

Դ. Որ Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը եւ Յամբղիքոսի մեկնութիւնները թարգմանուած են Թրակացու քերականութիւնից եւ Փիլոնի ու Պիտոյից գրքի թարգմանութիւններից յետոյ, այդ, իմ կարծիքով պարզ երեւում է, բացի վերոյիշեալ նկատառումներից, նաեւ լեզուական հետեւեալ դիտողութիւններից.

1. Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, ինչպէս եւ Յամբղիքոսի մեկնութիւնները, ոչ միայն իրանց բառապաշարով ու քերականական առանձնայատկութիւններով յարում են յիշեալ թարգմանութիւնների հնագոյն խմբին, այլ եւ գործ են ածում քերականական ու ճարտասանական նոյն եզրաբանութիւնը, որի մեծագոյն մասը ստեղծուել էր, ամենայն հաւանութեամբ, Թրակացու քերականութեան ու Պիտոյից գրքի թարգմանութեան ժամանակ։ Այդպիսի յատուկ եզրներ են. 1. Ներբողեան ἐγκώμιον Տիմ. 22, Պիտ. 413, Փիլ. Սամփս. 554, Յովն. 607 եւ բազն. 2. փաղառութիւն συλλαβή Տիմ. 155, 181, Ար. Ստ. 372, ՅՍտ. 415, Ար. Պէր. 464,

ցգէր, 496, թր. 9, 10, փիլ. եւ. 540. 3. ներկայ ἐνεστώς Տիմ. 282, ցգէր. 494, գր. 23, 24, 45, գիտ. 344, 430, փիլ. լին. 158. 4. ապառնի μέλλων ցգէր. 494, 538, թր. 23, 24, 46, գիտ. 347. 5. ճոռոմաբանեմ Տիմ. 202, ճոռոմաբանութիւն գիտ. 397. 6. դերանունութիւն ἀντωνυμία ցգէր. 489, թր. 27, 28, փիլ. լին. 70. 7. մակբայ ἐπίρρημα ցգէր. 489, թր. 12, 31. 8. շաղկապ σύνδεσμος Ար. գէր. 465, ցգէր. 489, թր. 12, 35, փիլ. նախ. 83. 9. նախդիր πρόθεσις ցգէր. 489, նախադրութիւն թր. 12, 30. 10. ընդունելութիւն μετοχή ցգէր. 489, թր. 12, 26. 11. հոլով πτῶσις Ար. Մա. 379, Ար. գէր. 464, ցգէր. 494, 500, թր. 13, 17, 27, 28, փ. նախ. 83. 12. ուղղական ὀρθή ցգէր. 500, թր. 17, 28. 13. սեռական γενική ցգէր. 500, թր. 17. 14. տառ στοιχεῖον ԱՄա. 404, ցգէր. 506, թր. 4, 9, գիտ. 396, փիլ. իմաստ. եւն. 15. առասութիւն προσηγορία ԱՄա. 368, ցՄա. 411, ցգէր. 497, Տիմ. 54, թր. 12 եւն։

2. Նիկ. Ադոնցը "Արուեստ Դիոնիսեայ քերականի„ իր աշխատութեան մէջ (էջ CLXXXIX—CXC) շատ ուղիղ դիտել է, որ յունարէն προοίμιον բառը, որ կազմուած է προ = նախ եւ οἶμος = շաւիղ, ճանապարհ բառերից, Գիտոյից գրքում թարգմանուած է "նախաշաւիղ„ (էջ 399, 413, 445, 551), իսկ արիստոտէլեան երկերի ու մեկնութիւնների թարգմանիչները, որոնք οἶμος = շաւիղ շփոթել են οἴμη = երգ բառի

հետ, προοίμιον թարգմանել են սխալ «Նախերգան» (Առ. Ստ. 404 Նախերգութիւն, ՑՍտ. 448 Նախերգան, Տիմ. 48, 283 Նախերգան, Նաեւ Դ. Պորփ. 264, 281, Վերլուծ. 557, 569, 570, 578 եւ Եւ. Ստ. 41, 131)։ Յենուելով այս իր դիտողութեան վրայ, նա եզրակացրել էր, որ Պիտոյից գրքի եւ իմաստասիրական երկերի թարգմանիչները եղել են տարբեր անձեր, թէեւ պատկանել են յունաբան միեւնոյն դպրոցին։ Ի նկատի ունենալով յունաբան դպրոցի յաջորդական զարգացման այն ընթացքը, որ վերեւ մատնանիշ արինք, թւում է ինձ հաւանական, որ «Նախերգան» բառի սխալ թարգմանութիւնը պէտք է վերագրել յունաբան թարգմանութիւնների երկրորդ, ա. ս. խմբին[1], ինչպէս եւ տարբեր, տարբերեմ, տարբերութիւն (= διάφερος, διαφέρω, διαφορά Տիմ. 262, Առ. Ստ. 367, 359, ՑՍտ. 413, Առ. Պէր. 471, ՑՊէր. 496 եւն), ներհակ, ներհակութիւն եւն (= ἐνάντιος, ἐναντιότης Առ. Ստ. 368, ՑՍտ. 413, 416, 417, Առ. Պէր. 466, 475, ՑՊէր. 517, Տիմ. 160), մակացելի,

---

[1] Պիտոյից գրքում մի անգամ միայն «բաղդատութիւն ձիթենոյ եւ արմաւենոյ» վարժութեան մէջ գործ է ածուած «Նախերգաբար» բառը հետեւեալ հատուածում՝ «Եւ այնոցիկ աղագաւ յարգարապէսն ընձեռեալս, յորոց նախերգաբարն տածեցաւ զփափաքէնն հատուցմամբ» (էջ 508)։ «Նախերգաբար» բառը թւում է ինձ այս հատուածում անտեղի։ Ձեռագրերից երկուսը ունեն «Նախանախերգաբար» ընթերցուածը (տես էջ 508 ծանօթ.)։ Այս բառը կարող է աղաւաղուած լինել, եւ սկզբնական բնագիրն ունեցել է, ըստ երեւոյթին «Նախակարգաբար, Նախայարգաբար» կամ նման մի բառ։

մակացու, մակացութիւն (= ἐπιστητός, ἐπιστήμων, ἐπιστήμη Ար. Ստ. 379, ՑՍտ. 422, Ար. Ստ. 360, ՑՍտ. 418, Ցպէր. 515, Ցիմ. 105) յունաբան նորաստեղծ բառերը, որոնք բնաւ չեն հանդիպում հնագոյն թարգմանութիւնների առաջին խմբում:

Ե. Լեզուական այն սերտ առընչութիւնը, որ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան հայերէն թարգմանութիւնն ունի Արիստոտէլի Ստորոգութեանց, Ցաղագս մեկնութեան գրոց թարգմանութիւնների, ինչպէս եւ Ցամբղիքոսի մեկնութիւնների հետ, խիստ կարեւոր մի հանգամանք է, որ ըստ իս որոշ լոյս է սփռում իմաստասիրական հնագոյն թարգմանութիւնների ծագման վրայ: Ինչպէս յայտնի է, Ներսէս Բ. Կաթուղիկոսի ժամանակ (548/549—556/557) Հայոց եկեղեցին, հակա-սեւերեան ասորական եկեղեցու հետ միացած, բացարձակ ու անհաշտ կռիւ էր սկսել նեստորականութեան ու քաղկեդոնականութեան դէմ: Այդ պայքարի սկզբներում, 552—564 թուականներին, թարգմանուած էր, ինչպէս տեսանք, Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը: Թէ միաբնակների եւ թէ երկաբնակների իրար դէմ պայքարող կուսակցութիւնները, հենց նոյն այս վեցերորդ դարում, դաւանական իրանց սկզբունքները հիմնաւորելու համար օգտուում էին սովորաբար արիստոտէլեան իմաստասիրական երկերից: Փիլիսոփայական այս երկերի թարգմանութեան կարիքը, բնականաբար, զգացուելու էր նախ Հայաստանում, հաւանաբար, դաւա-

*նական վէճերի ու պառակտումների հենց այս շրջանում։ Եւ յիրաւի՝ լեզուական վերոյիշեալ մեր դիտողութիւնները ցոյց են տալիս, որ Արիստոտէլի Ստորոգութիւնքը, Յաղագս մեկնութեան գրուածքը եւ Յամբղիքոսի մեկնութիւնները, հաւանաբար, թարգմանուած պիտի լինեն միաբնակ կուսակցութեան նոյն միջավայրում, որի ձեռներէցութեամբ թարգմանուած էր նաեւ Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը։ “Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանութեամբ„ իմ նախորդ աշխատութեան մէջ ես արդէն մատնանիշ էի արել, որ “Դաւիթ փիլիսոփայի մեկնութիւնները նորպղատոնական մեկնիչի գրուածք են, որ աշխատում էր հաշտեցնել պղատոնական եւ արիստոտէլեան փիլիսոփայական գաղափարները, իսկ Ստորոգութեանց եւ Յաղագս մեկնութեան գրոց հայերէն մեկնութիւնները արիստոտէլեան մեկնիչի գրութիւններ են, որը Պղատոնին եւ պղատոնականներին յիշում է միայն հազուագիւտ դէպքերում եւ հակառակում ու հերքում է նոցա կարծիքները„ (էջ 7)։ Գուցէ եւ պատահական չլինի այն ուշագրաւ փաստը, որ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանութեան ժամանակաշրջանում, միաբնակ կուսակցութեան նոյն միջավայրում, թարգմանուել են յատկապէս արիստոտէլեան ուղղութեամբ Յամբղիքոսի մեկնութիւնները։ Արիստոտէլի փիլիսոփայական սկզբունքները թւում է որ պէտք է աւելի համապատասխան լինէին միաբնակների ուսմունքին, քան պղատոնական դուալիզմը։ Եթէ*

յիրաւի գոյութիւն է ունեցել այդպիսի մի կապ դաւանաբանական ու իմաստասիրական ուղղութիւնների մէջ, այդ դէպքում՝ անհաւանական չպիտի համարուէր նաեւ այն, որ պղատոնական ուղղութեան հետեւող Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի իմաստասիրական մեկնութիւնները թարգմանուած պիտի լինեն հայերէն երկաբնակների կուսակցութեան միջավայրում։

§ 43. Էակաց գրքի յայտնի յիշատակարանը վերաբերում է Յունաբանեան խմբի Արիստոտէլի Ստորոգութեանց եւ Պորփիւրի Ներածութեան գրոց թարգմանութեանը։ — Էակաց գրքի յիշատակարանի վերջում, ինչպէս յայտնի է, գտնւում է շատ հետաքրքիր մի տեղեկութիւն, որը շատ պարզ որոշում է "Էակաց գրքի" թարգմանութեան ժամանակը։ Այդ յիշատակարանը տպուած է Գ. Վրդ. Սրուանձտեանցի "Հնոց եւ Նորոց" աշխատութեան մէջ[1]։ Կարեւոր այդ վկայութիւնն ունի հետեւեալ բովանդակութիւնը. "Բայց զարմանալի է ի նախնի յիշատակարանի գրոցս այսմիկ, եթէ գրեցաւ գիրքս այս էակքս հրամանաւ թարգմանեալ ի յունաց ի հայս տեառն Յովհաննիսի Հայոց կաթողիկոսի Գաբեղինացւոյ ի ին. (Սրուանձ. իէ) թուականութեան Հայոց. վկայ է այսմիկ Սարգիս արաբացի եպիսկոպոս ճշմարիտ վկայութեամբ"[2]։. Արդ՝ ինչ է հաս-

---

[1] "Հնոց եւ Նորոց". Կ. Պոլիս 1874, էջ 86—87. տես նաեւ "Հանդէս Ամսօրեայ" 1903, էջ 153 եւ Dr. M. Khostikian, David der Philosoph, Bern 1907, էջ 15։

[2] Տես David der Philosoph, էջ 15։

կացել այս յիշատակարանը “Էակաց գիրք”, ասելով։ Հայագէտ բանասէրները “Էակաց գիրք” սովորաբար, համարել են առասպելեալ այն յայտնի պատմութիւնը Դաւթի ու Մովսէսի մասին, որի վերնագիրն է “Սրբոց վարդապետացն Հայոց Մովսէսի եւ Դաւթի հարցմունք ընդ երկաբնակ չարափառսն”[1]։ Սակայն ձեռագրերում “Էակաց գիրք” վերնագիրը կրում է ոչ այս առասպելեալ պատմութիւնը, այլ իմաստասիրական մի հատուած, որը նպատակ ունի հարց ու պատասխաններով դիւրացնելու Արիստոտէլի իմաստասիրական երկերի ուսուցումը[2]։ Սիմէոն Ջուղայեցու “Տրամաբանութեան” վերջում, որ տպուած է Պոլսում 1728ին, նոյն “Էակաց գիրքն” ունի հետեւեալ վերնագիրը՝ “Գիրք էակաց, հարցմամբ եւ պատասխանիւ” (էջ 254—266)։ Ինձ թւում է, որ վերոյիշեալ յիշատակարանը չի վերաբեր-

---

[1] Տես Էջմիածնի մատենադարանի թ. 1897 եւ 2048 ձեռագրերը. Նաեւ Արարատ, 1879, ապր.—մայիս, Գարեգին Վրդ. Սրուանձտեանց, Հնոց եւ Նորոց, Կ. Պոլիս 1874, էջ 39—87 եւ Ֆ. Կոնիբէր, Մովսէս Խորենացւոյ պատմութեան ժամանակին մասին, Հանդ. Ամս. 1903, էջ 152—155։

[2] Ձեռագրերում “Էակաց գիրք” համարուող երկը բաղկացած է երկու մասից. նախ՝ հարց ու պատասխաններ, որոնք վերաբերում են ոչ միայն “Սահմանք իմաստասիրութեան” երկի բովանդակութեան, ինչպէս սխալ ենթադրում է Մ. Խոստիկեանը (“David der Philosoph”, էջ 17—18), այլ եւ ընդհանրապէս “Ὄργανον-ի մասի մեկնութիւններն, եւ ապա՝ մի հատուած Արիստոտէլի “περὶ ἑρμηνείας” երկի հայերէն թարգմանութիւնից՝ “Որդ գոլ չէակն յարժամ է” եւն (յաղագս բանի, պր. ԺԲ), տես ձեռագ. Էջմ. մատ. թ. 1810, 1887։

ուում այս հարց ու պատասխաններին, որոնք դպրոցական մի ձեռնարկ են, քաղուածօրէն կազմուած իմաստասիրական հայերէն թարգմանութիւնների զանազան հատուածներից Արիստոտէլի "Ὄργανον-ի ուսուցման համար։ Մ. Խոստիկեանը կարծում է, որ յիշեալ վկայութիւնը, միանգամայն պատմական լինելով, վերաբերւում է Դաւթի Սահմանք իմաստասիրութեան երկին։ Դաւթի այս աշխատութիւնը, Մ. Խոստիկեանի ենթադրութեամբ, ունեցել է երկու վերնագիր՝ "Սահմանք" եւ "Էակաց գիրք", իսկ յիշեալ դասագիրքը կազմուելուց յետոյ, որը նոյնպէս "Էակաց գիրք" է կոչուել, Դաւթի աշխատութիւնը դասագրքից տարբերելու համար՝ առաւելութիւն է տրուել "Սահմանք" վերնագրին։ Այս ենթադրութիւնը հիմնաւորելու համար նա յենւում է Կիրակոս Գանձակեցու վկայութեան վրայ, որի համաձայն Դաւիթ փիլիսոփան գրել է "զգիրս Սահմանաց եւ Էակաց" (Վենետիկ 1865, էջ 15)։ Մօտ ծանօթ լինելով Դաւթի երկերի հնագոյն ձեռագրերին, միանգամայն սխալ եմ համարում Խոստիկեանի ենթադրութիւնը, իբր "Սահմանք" երկն ունեցել է նաեւ "Էակաց գիրք" վերնագիրը։ Ըստ հնագոյն ձեռագրերի Դաւթի սոյն աշխատութեան վերնագիրը ոչ "Սահմանք" է, ոչ էլ "Էակաց գիրք", այլ մօտաւորապէս համապատասխան է յունարէն τὰ προλεγόμενα τῆς φιλοσοφίας վերնագրին։ Էջմիածնի մատենադարանի թ. 1890 ձեռագրում (Մայր ցուցակ, թ. 1848), որը գրուած է ՈՂԲ թուին

(1243 թ.), “Սահմանք„ երկի վերնագիրն է, ոչ թէ “Սահմանք„ կամ “Էակաց գիրք„, այլ “Դաւթի փիլիսոփայի Ներգինացոյ առաջաբանութիւն սահմանաց իմաստասիրութեանն„: Մօտաւորապէս նոյն վերնագիրն ունի Էջմիածնի մատենադարանի թ. 1889 ձեռագիրը (=Մայր Ցուցակ, թ. 1847), որի թուականն է ՉԻԵ (=1276)՝ “Դաւթի փիլիսոփա Ներգինացոյ, Յառաջաբանք սահմանաց իմաստասիրութեան„: Նոյն երկի համար “Էակաց գիրք„ վերնագիրը եւ ոչ մի տեղ չէ յիշւում: Ինձ թւում է, որ ապարդիւն մի աշխատութիւն կը լինէր որոնել մեր հին մատենագրութեան մէջ մի որոշ յատուկ երկ, թարգմանուած յունարէնից, “Էակաց գիրք„ կամ “Էակք„ վերնագրով: “Էակք„ ոչ թէ յատուկ վերնագիր է որեւէ երկի, այլ իմաստասիրական համապատասխան երկի բովանդակութեան ակնարկումն ու որոշումն: Արդ որն է հնագոյն մեր մատենագրութեան այն թարգմանութիւնը, որի բովանդակութեանը համապատասխանում է “Էակք„ կամ “Էակաց գիրք„ անունը: Ինձ թւում է, որ այդ դժուար չէ որոշել: “Էակաց„ կամ “գոյից„ ուսումնասիրութեանը նուիրուած են ամբողջովին Արիստոտէլի Ստորոգութիւնքը եւ Ստորոգութեանց մեկնութիւնները: Ցամբղիքոսի Ստորոգութեանց մեկնութեան մէջ պարզ ասուած է՝ “քանզի որ ինչ միանգամ էակ, արտաքոյ քան զտասն ստորոգութիւնս գտանել անհնար է„ (պր. Ժ, էջ 418): Նմանապէս եւ Դաւիթ փիլիսոփան

"Վերլուծութիւն Ներածութեանն Պորփիւրի., իր աշխատութեան մէջ ասում է՝ "Ստորոգութիւնքն Արիստոտէլի յամենայն իմաստասիրութիւնս պիտոյանան. վասն զի Ներածութիւնք են ամենայն իմաստասիրութեան, վասն զի Նոքօք ուսանիմք զամենայն գգոյսս„ (պր. գ, էջ 258)։ Ճիշտ է, Արիստոտէլի "Οργανον-ը եւ Նրա մեկնութիւնները՝ բոլորն էլ որեւէ առընչութիւն ունեն "Էակաց„ կամ "գոյից„ խնդրի հետ, սակայն բուն "Էակաց գիրքն„ էր ըստ իր բովանդակութեան նախ եւ առաջ Արիստոտէլի Ստորոգութիւնքը։ "Սահմանք իմաստասիրութեան„ երկը եւ ոչ մի դէպքում չէր կարող անուանուել "Էակաց գիրք„, որովհետեւ Նրա բովանդակութիւնը կազմում է, ինչպէս երեւում է եւ վերնագրից, ոչ թէ էակաց խնդիրը, այլ իմաստասիրութեան էութիւնը, սահմանումը եւ բաժանումները։

Կիրակոս Գանձակեցու վկայութիւնն եւս շատ պարզ է։ "Եւ Գաւիթ փիլիսոփայ, — ասում է Նա — (շարադրեաց) զգիրս սահմանաց եւ զէակաց, եւ զմեկնութիւն Արիստոտէլի, եւ Ներածութեանցն Պորփիւրի„ եւն։

Այս հատուածից աւելի քան պարզ երեւում է, որ Կիրակոս Գանձակեցին, յիշատակելով առանձին Սահմանքը ու Պորփիւրի Ներածութեան Արիստոտէլի մեկնութիւնները, տարբեր է համարում այդ երկերից "Էակքը„, այսինքն՝ մատնանիշ արուած երկերի թւում չյիշատակուած Արիստոտէլի Ստորոգութեանց եւ,

հաւանաբար, նաեւ Յաղագս մեկնութեան գրոց թարգմանութիւնները։ Կիրակոս Գանձակեցու միակ հիմնական սխալն այն է, որ նա, ինչպէս եւ հայ մատենագրական աւանդութիւնը, Արիստոտէլի բոլոր երկերի թարգմանութիւնները եւ նաեւ մեկնութիւնները վերագրում է առասպելական Դաւիթ Անյաղթ փիլիսոփային։

Ինչպէս տեսնում ենք, Կիրակոս Գանձակեցու եւ վերոյիշեալ յիշատակարանի “Խակաց գիրքը„ ակնյայտնի կերպով միեւնոյն երկն են եւ ոչ այլ ինչ են, քան Յամբղիքոսի խմբի Արիստոտէլի Ստորոգութեանց եւ, հաւանաբար, նաեւ Յաղագս մեկնութեան գրոց թարգմանութիւնները։ Յիշատակարանի այն տեղեկութիւնը, որ Յովհաննէս կաթողիկոս Գաբեղենացւոյ հրամանով թարգմանուած է “Խակաց գիրքը„ 576 ին, վերաբերում է ուրեմն ոչ թէ “Սահմանք իմաստասիրութեան„ երկին, այլ Յամբղիքոսի խմբի թարգմանութիւններին։ Բոլորովին անկախ այս դրական ու որոշ վկայութիւնից, մենք արդէն յանգել էինք այն եզրակացութեան, որ Յամբղիքոսի խմբի թարգմանութիւնները, լինելով խմբակից ու ժամանակակից Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան, թարգմանուած պիտի լինեն վեցերորդ դարի երկրորդ կիսում։ Լեզուական մեր դիտողութիւնները եւ յիշատակարանի պարզ վկայութիւնը, որ ոչ մի հիմք չունենք անվաւեր կամ կասկածելի համարելու, իրար լրացնում ու հաստատում են վերջնական կերպով արիստոտէլեան մի խումբ երկե-

րի թարգմանման ժամանակը։ Յունաբան դպրոցի ժամանակագրութեան ամենամութ խնդիրներից մէկը եւս կարող ենք համարել վերջնականապէս պարզուած ու լուծուած։ 552—564 թուականների ժամանակամիջոցում թարգմանուած էր, ինչպէս տեսանք, Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը, իսկ նոյն դարի եօթանասնական թուականներին[1] Յովհաննէս կաթողիկոս Գաբեղինացւոյ հրամանով թարգմանուել են Յամբղիքոսի խմբի երկերը, այն է՝ Արիստոտէլի Ստորոգութիւնքը, Յաղագս մեկնութեան գրուածքը եւ նրանց մեկնութիւնները։ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան եւ Յամբղիքոսի խմբի թարգմանութիւնների այս ժամանակակցութեամբ ինքնին պարզ ու հասկանալի են դառնում թէ նրանց լեզուական մերձաւորութիւնը եւ թէ յունաբան այն բոլոր նմանութիւնները, որ վերեւ մատնանիշ էինք արել (§ 42)։

44. Դաւիթ-Անյաղթեան խմբի իմաստասիրական մեկնութիւնները թարգմանուած պէտք լինեն յունաբան երկրորդ շրջանի թարգմանութիւններից յետոյ։ — "Դաւիթ Անյաղթի խնդիրը նոր լուսաբանու-

---

[1] Վերոյիշեալ յիշատակարանի վկայութեամբ "Ըսկաց գիրքը" թարգմանուած է յունարէնից հրամանաւ "Յովհաննիսի Հայոց կաթողիկոսի Գաբեղինացւոյ ի ԻԵ (ԻԸ) թուականութեան Հայոցս"։ Յովհաննէս Բ. Կաթողիկոսի մահուան տարեթիւը, սովորաբար, դնում են 573 թուին։ Եթէ այս վերջին տարեթիւն ուղիղ է եւ յիշատակարանի ԻԵ (ԻԸ) թուականն աղճատուած չէ, պէտք է ուրեմն ենթադրել, որ թարգմանութիւնը վերջացրած պիտի լինի կաթողիկոսի մահից յետոյ՝ 576 թուին։

թեամբ, իմ նախորդ աշխատութեան մէջ, քննութեան առնելով նորպղատոնական Դաւիթ մեկնիչի երկերը, ես արդէն փորձել էի ցոյց տալ, որ այս Դաւիթն Աղեքսանդրիայում ուսած վեցերորդ դարի մատենագիր է (§ 8, էջ 20—30)։ Նոյն 1904 թուին, երբ լոյս էր տեսել իմ այդ աշխատութիւնը, Ադ. Բուսսէն հրատարակել էր Բեռլինում Դաւթի երկերի յունարէն բնագիրը՝ Davidis Prolegomena et in Porphyrii Isagogen commentarium։ Այդ հրատարակութեան Յառաջաբանում Ադ. Բուսսէն նորպղատոնական Դաւիթ մեկնիչի ժամանակը տանում է մինչեւ եօթերորդ դարը. համարելով նրան ոչ թէ Ոլիմպիոդորոս փիլիսոփայի աշակերտ, այլ Ոլիմպիոդորոսի Եղիաս աշակերտի աշակերտ։ Եթէ Ադ. Բուսսէի այս կարծիքն ուղիղ համարուի, Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի թարգմանութիւնները պէտք է դրուեն ամենավաղը եօթներորդ դարում։ Սակայն, ինչպէս վերեւ տեսանք, Դաւիթ մեկնիչի Եղիասի աշակերտ լինելը դեռեւս վիճելի է (տե՛ս § 10— § 17)։ Բայց եթէ անգամ հաստատուի, որ սոյն Դաւիթը վեցերորդ դարի մեկնիչ կրտսեր Ոլիմպիոդորոսի աշակերտն է, այդ դէպքում եւս նրա երկերը հայերէն թարգմանուած պիտի լինէին ոչ աւելի շուտ, քան վեցերորդ դարի երկրորդ կիսում։ Եւ յիրաւի՝ այս ենթադրութիւնը հաստատւում է նաեւ լեզուական մեր դիտողութիւններով, որոնք ցոյց են տալիս, որ Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի երկերը թարգմանուած պիտի լինեն հայերէն աւելի

ուշ քան Յամբղիքոսի խմբի երկերը։ Լեզուական այդ նկատառումները հետեւեալներն են.

—. Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի թարգմանիչները մեծ չափով օգտուել են յունաբան նախկին երկու խմբի թարգմանութիւններից, ուստի եւ նրանց մէջ թէ յունաբան լեզուն աւելի մշակուած է ու կաղապարուած եւ թէ յունաբան բառապաշարը շատ աւելի հարուստ է ու ճոխ, քան նախորդ թարգմանութիւններում։

1. Թրակացու քերականութեան յատուկ եզրները, մեծ մասամբ, նոյնութեամբ գործ են ածել եւ այս թարգմանութիւնները. օրինակ՝ 1. *πνεῦμα* հագագ ԴԱտՀմ. 177, Թր. 38, Տիմ. 139. 2. *τόνος* ոլորակ ԴԱՀ. 177, Թր. 3, 38. 3. *λέξις* բառ ԴԱՀ. 137, ԴՊորփ. 253, Վերլ. 563, ԷլՄտ. 30, Թր. 12, 22 եւն, ՑՊէր. 488, Փ. տես. 4. տառ *στοιχεῖον* ԷլՄտ. 21. Վերլ. 563, Թր. 4, 9, ԱրՄտ. 446, ՑՊէր. 506, Փիլ. Պիտ. 5. *ἐνεστώς, παρεληλυθώς, μέλλων*, ներկայ, անցեալ, ապառնի, ԴԱՀմ. 207, ԷլՄտ. 123, Թր. 23, ՑՊէր. 494, Պիտ. 344, 347 եւն. 6. *σύνδεσμος* շաղկապ ԴՊորփ. 265, Վերլ. 576, Թր. 12, 35, ՑՊէր. 489, Փիլ. Նախ. 83. 7. *συλλαβή* փաղառութիւն ԷլՄտ. 42, 53, Վերլ. 563, Թր. 9, 10, ՑՄտ. 415, ՑՊէր. 496, Տիմ. 155, 181, Փիլ. Եւ. 540. 8. *ὀρθή (πτῶσις)* ուղղական (հոլով) ԷլՄտ. 50, Թր. 17, 28, ՑՊէր. 500. 9. սեռական հոլով *γενική πτῶσις* ԷլՄտ. 50, Վերլ. 571, Թր. 17, 28, ՑՊէր. 500. 10. հայցական *αἰτιατική* Վերլ.

571, Թր. 17, 29. 11. *παροξύτονον, βαρύτονος* յարաշեշտոլոր ԷԼ. Ստ. 47, Թր. 39. 12. *ὁριστικὸν ῥῆμα* սահմանական բայ ԷԼ. Ստ. 60, Թր. 22, 45. 13. *ἀόριστον ῥῆμα* անորիշ բայ ԷԼ. Ստ. 60, Թր. 49 եւն. 14. *σύμφωνον* բաղաձայն ԷԼ. Ստ. 119, Թր. 6. 10. 15. *ἑνικός* եզական ԷԼ. Ստ. 45, Թր. 16, 17 եւն, եզակի Վերլ. 581, Յպէր. 515, Փ. լին. 12. 16. *πληθυντικός* յոքնական, յոգնական ԷԼ. Ստ. 45, Թր. 16, 17 եւն, յոքնակի, յոգնակի Վերլ. 581, Պիտ. 399, Փ. լին. 12. 17. *ὑπερθετικόν* գերադրական ԷԼ. Ստ. 90, Թր. 13, 15. 18. *προσηγορία* առասութիւն ԷԼ. Ստ. 101, Վերլ. 581, Թր. 12, Տիմ. 54. Ար. Ստ. 368, ՅՍտ. եւ պէր. 411, 497։ Քերականական միայն երկու բառ Պորփիւրի Ներածութեան վերլուծութեան մէջ չեն համապատասխանում Թրակացու քերականութեան եզրներին, եւ այդ տարբերութեան պատճառը եւս հասկանալի է, որովհետեւ այդ եզրները, հազուադէպ ու շատ քիչ գործածական լինելով, կարող էին ծանօթ չլինել Պորփիւրի վերլուծութեան թարգմանչին։ Այդ եզրներն են.

1. *Συμπλεκτικὸς σύνδεσμος* բաղ-հիւսական շաղկապ Դպորփ. 343, ընկալման շաղկապ Թր. 35. 2. *διαζευκτικὸς σύνδεσμος* տարրալուծական շաղկապ Դպորփ. 343, անջատական շաղկապ Թր. 35։

2. Թրակացու քերականութեան ազդեցութեամբ՝ Դաւթի “Սահմանք իմաստասիրու-

թեան” երկում հանդիպում է “մեռանել” բայի խոնարհման արուեստօրէն կազմուած, չինծու ու բռնազբօսիկ այն ձեւերից մէկը, որ քերականութեան յետնադարեան մի մեկնիչ, համարելով “բաջաղանք արտաքնոց”, խստիւ դատապարտում էր եւ խորհուրդ տալիս քերականներին սանձահարել “զերիւար մտաց” եւ “առնուլ զնպատակն ճշմարտութեան”[1]։ Չինծու այդ բառը գտնւում է հետեւեալ հատուածում՝ “Յորայ ձեռն ասէ, թէ արդարեւ տագնապին այնուքիկ, որք հանդիպին ուղղորդաբար մերձեցեալք , իմաստասիրութիւն, մեռանալով զնոսին իսկ զինքեանս եւ զայլսն, ոչ այլ ինչ խոկալով, քան զմեռանելն եւ զէմեռանելն։ Եւ բարւոք առկայանան երկոքեան՝ մեռանելն եւ էմեռանելն. քանզի ի ձեռն մեռանելոյն՝ զգործական իմաստասիրութիւնն մեկնեաց, քանզի իմաստասէրն ի մեռանելն իւրում ունի զգործականն. քանզի յայնժամ մեռելութիւն բացագործէ ախտից։ Իսկ ասելով էմէռանել՝ զտեսականն յայտնեաց. քանզի էմեռանելն զանցեալ ժամանակն նշանակեաց. եւ իմաստասիրի յետ մեռանելոյն է տեսականն։ քանզի յետ մեռուցանելոյ զախտս եւ մաքրելոյ եւ սրբելոյ զհոգին՝ վարաձգաի առ տեսութիւնն, եւ սկիզբն առնէ աստուածաբանելոյ” (Սահմ., էջ 160—161)։ Յունարէն բնագրում “մեռանել” ձեւին համապատասխանում է θνήσκειν, իսկ “էմեռանել” ձեւին՝ τεθνάναι (Infin.

---

[1] Տե՛ս Ն. Ադոնց, Արուեստ Դիոնիսեայ, էջ 66։

Perf.)[1]։ Արդ՝ կատարելապէս նոյն այս եղանակով կազմուած է Թրակացու քերականութեան վերջում “կոփել„ բայից արուեստական ու շինծու “եկոփել„ ձեւը (= յուն. τετυφέναι)[2]։

3. Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւնների վրայ լեզուական մեծ ազդեցութիւն են ունեցել նաեւ Ցամբղիքոսի խմբի թարգմանութիւնները։ Օրինակ՝ Եղիասին վերագրուած Ստորոգութեանց մեկնութեան մէջ Արիստոտէլի Ստորոգութեանց հայերէն թարգմանութեան բնագիրն ամբողջովին քաղուած է Ցամբղիքոսի խմբի հնագոյն թարգմանութիւնից մի քանի բնորոշ փոփոխութիւններով։ Այսպէս՝

| | |
|---|---|
| *Եղիաս, Ստ. մեկն., էջ 43.* | *Արիստ. Ստորոգ., էջ 359*[3]. |
| “Հոմանունք ասին, որոց անուանքն միայն հասարակ„։ | “Համանունք ասին՝ որոց անուանքն միայն հասարակ„։ |
| *Եղիաս, էջ 51.* | *Ար. Ստ., էջ 359.* |
| “Փաղանունք ասին՝ որոց եւ անունն հասարակ եւ բան գոյացութեան նոյն„։ | “Եւ փաղանունք ասին, որոց անունն հասարակ, եւ ըստ անուանն բան գոյացութեանն նոյն„։ |
| *Եղիաս, էջ 56.* | *Ար. Ստ., էջ 359.* |
| ‘Ձի եթէ բացատրեսցէ ոք. զինչ է նոցա երկաքանչիւր ումեք կենդանին | “Քանզի եթէ բացատրեսցէ ոք զերկաքանչիւր ուրուք զբանն, զինչ նոցա երկա- |

1 Տե՛ս A. Busse, Davidis Prolegomena եւն., էջ 29։
2 Տե՛ս Ն. Ադոնց, Արուեստ Դիոնիսեայ, էջ 49։
3 Վենետ. 1833։

| | |
|---|---|
| զտեսակն քան զսեռն բացատրելով"։ | զտեսակն բացատրելով քան զսեռն"։ |
| Էլիաս, էջ 88. | Ար. Ստ., էջ 364. |
| "Քանզի սա ուրոյն առաւել ուրումն մարդոյ"։ | "Քանզի սա առաւել ուրոյն ուրումն մարդոյ"։ |
| Էլիաս, էջ 91. | Ար. Ստ., էջ 365. |
| "Եւ նոցա տեսակացն որք միանգամ ոչ են սեռք"։ | "Եւ նոցա տեսակացն՝ որք միանգամ ոչ են սեռք"։ |
| Էլիաս, էջ 94. | Ար. Ստ., էջ 366. |
| "Բայց ոչ ուրոյն է այս գոյացութեան"։ | "Բայց ոչ ուրոյն գոյացութեան է այս"։ |
| Էլիաս, էջ 110. | Ար. Ստ., էջ 369. |
| "Եւ մանաւանդ զի ուրոյն գոյացութեան որ միեւնոյն"։ | "Եւ մանաւանդ զի ուրոյն գոյացութեան թուի գոլ, որ մի եւ նոյն"։ |
| Էլիաս, էջ 114. | Ար. Ստ., էջ 372. |
| "Եւ քանակին՝ է ինչ որ տարորոշ եւ է ինչ որ շարունակ"։ | "Եւ քանակին՝ է ինչ որ տարորոշ է, եւ է ինչ որ շարունակ"։ |
| Էլիաս, էջ 124. | Ար. Ստ., էջ 372. |
| "Եւ առ այսոքիւք եւս ժամանակ եւ տեղի"։ | "Եւ առ այսոքիւք եւս ժամանակ եւ տեղի"։ |
| Էլիաս, էջ 125. | Ար. Ստ., էջ 372. |
| "Եւ ասեմ զնոյն ինքն որ ձայնիւն բանն լինի"։ | "Եւ ասեմ զնոյն զինքն որ ձայնիւն բան լինի"։ |
| Էլիաս, էջ 126. | Ար. Ստ., էջ 372. |
| "Որգոն՝ հինգն եթէ են տառանցն մասունք՝ առ ոչ | "Հիկէն. հինգքն՝ տառանցն մասնկունք են. եւ առ ոչ |

| | |
|---|---|
| *մի հասարակ սահման շարամերձին»։* | *մի ինչ հասարակ սահման շարամօսին»։* |
| *Եղիաս, էջ 126.* | *Ար. Ստ., էջ 373.* |
| *«Քանզի մակարդակին մասնկունք առ իմն հասարակ սահման շարամերձին»։* | *«Քանզի մակարդակին մասնկունքն առ մի իմն սահման շարամօսին»։* |
| *Եղիաս, էջ 127.* | *Ար. Ստ., էջ 373.* |
| *«Նմանապէս և ի վերայ մարմնոյ մարթի առնուլ հասարակ սահման զմակերևութիւն, առ որ մարմնոյն մասնկունք շարամերձին»։* | *«Նոյնպէս և ի վերայ մարմնոյ գտցես առնուլ հասարակ սահման զգիծն, կամ զմակերևութիւնն, առ որ մարմնոյն մասնկունքն յարեալ միաբանին»։* |
| *Եղիաս, էջ 128.* | *Ար. Ստ., էջ 373.* |
| *«Քանզի յեզանակաւ իմն զմարմնոյն մասնկունս ունի տեղի, որք առ իմն հասարակ սահման շարամերձին, ապա և տեղւոյ մասնկունք, որք ունին զիւրաքանչիւր ոք ի մասանց մարմնոյն՝ առ նոյն սահման շարամերձին, առ որ մարմնոյն մասնկունք»։* | *«Քանզի տեղի իմն մարմնոյն մասնկունքն ունին, որք առ հասարակ իմն սահման շարամօսին. իսկ ապա և տեղւոյն մասնկունին, զորս ունին զիւրաքանչիւր ոք ի մարմնոյն մասնկանցն՝ առ նոյն սահման շարամօսին, առ որ և մարմնոյն մասնկունքն»։* |

Այս համեմատութիւններից պարզ երևում է, որ Եղիասի Ստորոգութեանց մեկնութեան մէջ Արիստոտէլի Ստորոգութեանց բնագրի թարգմանութիւնը կատարելապէս համապատասխանում է Ցամբղիքեան խմբի Ստորոգութեանց թարգմանութեանը։ Սակայն կան մի քանի էական փոփոխութիւններ, որ դիտաւո-

րեալ են եւ նախամտածուած։ Այսպէս՝ յունարէն συνάπτω բայը, որ Արիստոտէլի Ստորոգութեանց մէջ թարգմանուած է “շարամուտիմ„ (էջ 372, 373 եւն). Էլիասի մէջ փոփոխուած է բոլոր հատուածներում առանց բացառութեան “շարամերձիմ„ (էջ 126, 128)։ “Շարամերձիմ. շարամերձութիւն, շարամերձական„ (= συνάπτω, συναφεια, συναπτικός) յունաբան բառերը գործ են ածւում առաջին անգամ ու յաճախակի Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւններում, օրինակ՝ Սահմ. իմ. էջ 196, 197 եւն, Մեկն. ի Վերլ. էջ 558, 581 եւն։ Ըստ երեւոյթին, թարգմանութիւնների յունաբան այս երրորդ շերտին են պատկանում Նոննոսի ու Արիստոտէլի “Պատմութիւն յաղագս աշխարհի„ հայերէն թարգմանութիւնները, որոնք եւս ունեն “շարամերձիմ, շարամերձութիւն„ բառերը, տես Ար. Աշխ. 608, Նոննոս 59։ Թրակացու քերականութեան մէջ συναπτικός թարգմանուած է “բաղմատ„ (էջ 35, 36), իսկ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ՝ συνάπτω, συνάφεια = “շարայարեմ, շարայարութիւն„, էջ 51, 53 եւն։

Յունարէն ∂ ἔν τινι Արիստոտէլի Ստորոգութեանց մէջ թարգմանուած է “նումէքն„ (էջ 360 եւն), իսկ Էլիասի մէջ “յումէք„ (պէտք է լինի՝ “յումէքն„)։ Այս փոփոխութիւնը եւս թւում է նախամտածուած, Ն եւ ըն նախդիրները (= յուն. ἐν), որ սովորական են յունաբան առաջին եւ երկրորդ շերտերի մի շարք

թարգմանութիւններում, այսպէս՝ Թր. քեր., էջ 15, 30, Ստ. Ար., էջ 360, 363, 364, 366, 367 եւն., Ար. պէր. 487, 488, 490, 491 եւն., Տիմ. Հակաճ. 38, 39, 48, 51, 52 եւն., Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի թարգմանութիւններում գրեթէ գործածուած չեն։ Նախորդ հնագոյն թարգմանութիւնների ազդեցութեանը պէտք է վերագրել, որ այդ նախդիրը այս վերջին թարգմանութիւններում պահպանուել է միմիայն Եղիասի Ստորոգութեանց մեկնութեան մէջ "նենթակայում" դարձուածքում. էջ 62, 63, 66 եւն։ Պորփիւրի Ներածութիւնը եւս ունի "նենթակայում" էջ 239 եւ "ներկոյունց" էջ 230, սակայն որոշ հիմքեր կան ենթադրելու, որ այս երկի թարգմանութիւնը, ըստ երեւոյթին, սերտ առընչութիւն ունի յունաբան թարգմանութիւնների առաջին ու երկրորդ շերտերի հետ եւ, հաւանաբար, աւելի հին է, քան Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի թարգմանութիւնները։

Թրակացու քերականութեան մէջ ն եւ ըն նախդիրները համապատասխանում են յաճախ յունարէն ἐκ եւ ἀπὸ նախդիրներին. այսպէս՝ նեցէ ἐξ ἑνός Թր. 9, ներկուց ἐκ δύο, 16 եւ 20, ըն տեղւոյ ἐκ τόπου 32, նոգւոյ ἀπὸ ψυχῆς 18, նիմեքէ ἀπό τινος 19, նորմէ ἀφ' οὗ 23, նիմոյ ἀπὸ τοῦ ἐμοῦ 29 եւն։ Ն եւ ըն նախդիրների այդ իմաստով գործածութիւնը յատուկ է միայն Թրակացու քերականութեանը, խիստ հազուադէպ է Ցամբղիքեան խմբի թարգմանու-

թիւնների համար (Ար. Ստ. ունի "Նոյոց" էջ 383) եւ բոլորովին անգործածական Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւններում։

4. Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանիչները, ծանօթ լինելով Յամբղիքեան խմբի թարգմանութիւններին, մեծ չափերով օգտուել են այդ թարգմանութիւնների յունաբան յատուկ բառապաշարից։ Արիստոտէլի իմաստասիրութեան յատուկ գաղափարներն այս երկու խումբ թարգմանութիւններում արտայայտուած են մեծ մասամբ միեւնոյն բառերով եւ այդ հանգամանքը, բնականաբար, առիթ է ծառայել ենթադրելու, որ նրանք միեւնոյն իմաստասիրական դպրոցի ու անգամ միեւնոյն թարգմանչի աշխատութիւնն են։ Սակայն հարեւանցի ուսումնասիրութիւնն անգամ բաւական է համոզուելու համար, որ այդ երկու խումբ թարգմանութիւնները լեզուական իրանց առանձնայատկութիւններով իրարից շատ տարբերւում են եւ ունին միայն իմաստասիրական բառապաշարի որոշ նոյնութիւն։ Իմաստասիրական այդ բառերը, որ յատուկ են Յամբղիքեան խմբի թարգմանութիւններին եւ գործ են ածուած Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի թարգմանութիւններում, խիստ շատ են։ Այդ ընդհանուր բառապաշարի բառերից են[1], օրինակ՝ 1. Նախ-

[1] Բացի Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբին պատկանող մեկնութիւնների թարգմանութիւններից, ներքեւի օրինակներում մատնացոյց են արուած նաեւ Պորփիւրի Ներածութեան ու Արիստոտէլի Յաղագս աշխարհի թարգմանութիւն-

երգան προοίμιον Վերլ. 557, Էլ. 24, նախերգանութիւն ԴՊորփ. 281. 2. տարբերութիւն διαφορά Ներ. Պորփ. 227, ԴՊորփ. 254, Վերլ. 587, Ար. Աշխ. 613, Էլ. 96 (նաեւ նմանոս էջ 24). 3. ներհակ ἐνάντιος Ներ. Պորփ. 233, Ար. Աշխ. 611, Էլ. 103, ներհական Ար. Աշխ. 616, Էլ. 129, ներհակութիւն ἐναντιότης Էլ. 134, ներհակաբար Վերլ. 595, („ներհակ" ունի նաեւ նմանոսը՝ էջ 64). 4. մակացու ἐπιστήμων ՍՀՄ. 180, Ար. Աշխ. 604 (նաեւ նմանոս էջ 11), մակացութիւն ἐπιστήμη Ներ. 233, ԴՊորփ. 256, ՍՀՄ. 120, Վերլ. 564, Էլ. 46, մակացուցանել ἐφιστάναι Էլ. 100[1]. 5. ստորոգութիւն κατηγορία Ար. Ստ. 362, ԵՍտ 410, Պեր. 494, Ներ. Պորփ. 227, ԴՊորփ. 254, Վերլ. 561, Էլ. 31, նոյն այս խումբն ունի նաեւ՝ ստորոգումն, ստորոգիլ եւն. 6. արտունող Ար. Ստ. 373, արտունութիւն ὑπεροχή ՍՀՄ. 156, արտօնութիւն Ար. Աշխ. 621. 7. հակակայ ἀντικείμενος Ար. Պեր. 511, Ար. Ստ. 396, ԵՍտ. 426, ԴՊորփ. 318, Ներ. Պորփ. 237, հակակայիմ ἀντικεῖμαι Ար. Պեր. 474, ԵՊեր 512, ԵՍտ 425, Ար Աշխ. 619, Վերլ. 576. 8. վերլուծական ἀ-αλυτικός Ար. Պեր. 474, ԵՊեր. 553, ԴՊորփ. 258, Վերլ. 557, վերլուծութիւն, վերլուծութիւնք ἀναλυτικά Էլ. 17, ԴՊորփ. 251,

---

Ներքը, որոնց թարգմանման ժամանակաշրջանի մասին խօսելու ենք առանձին (տես ներքեւ՝ § 47 եւ § 48)։

[1] Վերջիններու շուրջ բառը տես նաեւ վերեւ այն աշխատութեան մէջ՝ § 42, գ, 2։

ἀνάλυσις Ար. Աշխ. 611, վերլուծանիմ ἀναλύω ՍՀմ. 138, Վերլ. 563, Տիմ. 96. 9. իրողութիւն πρᾶγμα, πραγματεία Ար. Պեր. 487, ՑՍտ. 425, ԴՊորփ. 327, Ներ. Պորփ. 227, Վերլ. 558, Էլ. 24, 44, ՍՀմ. 195, 121 (նաեւ Նոննոս 37). 10. շարաբանութիւն συλλογισμός ՑՊեր. 511, ԴՊ 305, Էլ. 17, 21, շարաբանեմ συλλογίζω ՍՀմ. 122, (συλλογιστικοί բաղբանականք Թր. 35, 37). 11. շարաբառնամ συναναιρέω Ար. Ստ. 382, Ներ. Պորփ. 241, ԴՊորփ. 299, Էլ. 84, շարաբառնիմ συναναιροῦμαι Ներ. Պորփ. 241, ԴՊորփ. 299, Էլ. 84. 12. հակառութիւն ἀντίφασις Ար. Պեր. 472, ՑՊեր. 511. Վերլ. 574. Էլ. 62, նաեւ հակ նախադրութեամբ ուրիշ բառեր, ինչպէս՝ հակորոշեմ, հակորոշումն, հակադարձութիւն, հակադարձ, հակադարձիմ եւն։

Արիստոտէլի Ստորոգութեանց թարգմանութեան ազդեցութեանը պէտք է վերագրել նաեւ Էլիասի Ստորոգութեանց մեկնութեան մէջ "մակ աւելեաց" խրթին յունաբանութիւնը (= ἐπὶ πλεῖστον), Էլ. էջ 85։ Յունարէն ἐπὶ նախդիրը հայերէն թարգմանուած է մակ միմիայն Յամբղիքեան խմբին պատկանող Արիստոտէլի Յաղագս մեկնութեան ու Ստորոգութեանց մէջ եւ պարզապէս այս հնագոյն թարգմանութիւնից է քաղուած Էլիասի համապատասխան դարձուածքը Էլ. 85, 17 = Ար. Ստ. 363, 2 ։

5. Սահմանք իմաստասիրութեան երկում կայ ուշագրաւ մի հատուած, որին համապատաս-

խանում է Պէրիարմենիաս գրոց մեկնութեան մէջ գտնուող հետեւեալ հատուածը։

*Սահմ. իմաստ., էջ 160.*

"Արդ ստորակայեցի ոմն Սիմոն արուեստիւ կարուակ իսկ բարւոք բարի՝ արուեստիւ յոռի։ Արդ ի վերայ սորա առանձնաբար ասացեալքն ոչ կարող գոն միաւորաբար ասել. որգոն. յորժամ ասեմք Սիմոն կարուակ է, եւ Սիմոն բարի է։ Արդ զայսորիկ զառանձնաբար զասացեալսն՝ ոչ կարող գոյ միանգամայն յարալեբար ասել. եթէ Սիմոն կարուակ բարի է. վասն զի ըստ արուեստին փցուն զնա ստորաբերեցուք"։

*Մեկն. Պէր. Գրոց, էջ 515.*

"Իսկ կարուակն եթէ առանձինն ճշմարիտ. այլ եւ բարին զուգմամբ առանձինն ճշմարիտ, ոչ եւս ի հարկէ բաղադրեալք սոքա ճշմարտեսցեն։ Քանզի Սիմոն սոկրատական եւ կարուակ եղով՝ ճշմարիտ. եւ բարի՝ դարձեալ ճշմարիտ՝ այլ ոչ եւս ճշմարիտ, Սիմոն կարուակ բարի. քանզի անխնամութիւն կարուակութեանն՝ ոչ եւս բարի. այլ յոչ բարի զարուեստն մակացութե. իսկ բարի Սիմոն՝ ըստ խնամ առնելոյ իմաստասիրութեան"։

Նիկ. Ադոնցն իր "Արուեստ Դիոնիսեայ քերականի" աշխատութեան մէջ (էջ CXCII) նկատել է այս հատուածների նմանութիւնը եւ ենթադրում է, որ Սիմոնի կարուակի այս օրինակը ցոյց է տալիս թէ հեղինակների եւ թէ թարգմանիչների սերտ մերձաւորութիւնը։ Այդ ենթադրութիւնը թւում է ինձ ոչ հիմնաւոր։ Սոկրատական Սիմոնի յիշատակութիւնը, որպէս օրինակ վերոյիշեալ հատուածներում, ինչպէս եւ, ընդհանրապէս, որոշ հատուածների բովանդակութեան նմանութիւնները միեւնոյն կամ

տարբեր դպրոցների իմաստասիրական երկերում, երբեք չեն կարող կուռ ծառայել հեղինակների մերձեցման, եթէ չկան որեւէ այլ ծանրակշիռ հիմքեր այդպիսի մերձեցման համար։ Սոկրատական Սիմոնի յիշատակութիւնը տարբեր հեղինակների վերոյիշեալ հատուածներում կարելի է բացատել այլ կերպ. կամ Նորպղատոնական Դաւիթ մեկնիչը օգտուած պիտի լինի Յամբղիքոսի περὶ ἑρμηνείας գրոց մեկնութիւնից կամ պէտք է ենթադրել, որ այդ նմանութիւնը ծագում է անկախ կերպով որեւէ այլ սկզբնական ու ընդհանուր աղբիւրից։ Ինչ վերաբերում է "կարուակ" բառին = յուն. σχυτεύς, որը գործ է ածուած՝ Ար պէր. 477. Յպէր. 515, Սհմ. 180, կարուակութիւն Յպէր. 515, լեզուական այդ նմանութիւնը եւս չի կարող հիմք ծառայել թարգմանիչների մերձեցման։ Դաւիթ Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանիչները, ինչպէս տեսանք, լայն չափով օգտուել են Յամբղիքեան հնագոյն խմբի թարգմանութիւններից։ Ուրեմն "կարուակ" սակաւագիւտ բառի գործածութիւնը Սահմանք իմաստասիրութեան երկում կարելի է վերագրել Յամբղիքեան խմբի թարգմանութիւնների ազդեցութեանը։ Նոյն ձեւով, մեծ մասամբ, պէտք է բացատրել եւ ուրիշ յունաբան հազուագիւտ բառերի հանդիպումը թարգմանական այս տարբեր խմբերում։ Այդպիսի բառերից է, օրինակ, նաեւ եղջերուաքաղ τραγέλαφος բառը, Ար. պէր. 493, Սհմ. 121, Դպորփ. 270, Յպէր. 494։

6. Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւններում, որ կազմում են յունաբան թարգմանութիւնների երրորդ շերտը, բնականաբար, շարունակել են մշակել ու հարստացնել յունաբան առանձնայատուկ լեզուն ու բառամթերքը։ Այս թարգմանութիւններում կան մի խումբ յունաբան բառեր, որ չեն հանդիպում նախկին թարգմանութիւններում եւ թւում են կազմուած յունաբան լեզուի զարգացման այս շրջանում։ Եթէ ճիշդ համարուի իմ տեսակէտը, որ յունաբան լեզուն մեր հնագոյն մատենագրութեան մէջ ունեցել է իր զարգացման երեք առանձնայատուկ շրջանները, այդ դէպքում՝ պէտք է յունաբան լեզուի ուսումնասիրութիւնն աւելի եւս խորացնել եւ, եթէ հնարաւոր է, փորձել ամէն անգամ որոշելու յունաբան զանազան խումբ բառերի ծագման ժամանակը։ Լեզուական ուսումնասիրութիւնն այս ուղղութեամբ կարող է որոշ նշանակութիւն ունենալ հայոց լեզուի պատմական քերականութեան համար, նաեւ կարող է կռուան ծառայել որոշելու յունաբան այլեւայլ աստուածաբանական թարգմանութիւնների մօտաւոր ժամանակաշրջանը։ Որքան էլ յունաբան բառերը համարուին անհարազատ ու խորթ, յամենայն դէպս, հայոց լեզուի պատմական քերականութիւնը չի կարող անտես առնել այդ բառապաշարը, որովհետեւ այս վերջինը, որպէս գիտական եզրերի բառամթերք, դարերի ընթացքում ապացուցել է իր կենսունակութիւնը, կազմել է հայոց լեզուի անքակտելի մասը եւ այժմ էլ մուտք

է գործել աշխարհաբար լեզուի մէջ ու գտնել նրա գիտական բառապաշարի պատկառելի հիմքը։

Դաւիթ-Ոլիմպիոդորոս խմբի թարգմանութիւնները ունեն, ինչպէս ասացի, բազմաթիւ յունաբան բառեր, որ չեն հանդիպում նախորդ թարգմանութիւններում։ Թւում է ինձ, որ այս բառերի մեծագոյն մասն առաջին անգամ կազմուած ու գործածուած պիտի լինեն հենց այս թարգմանութիւնների ժամանաշրջանում։ Այդպիսի առանձնայատուկ բառեր են, օրինակ՝ 1. բնաբանել φυσιολογεῖν Էլ. 24, 31 (նաեւ Նոննոս 39), բնաբանական φυσιολογικός Ահմ. 127 (նաեւ Նոննոս 39), բնաբանականք τὰ φυσιολογικά Էլ. 24, ի բնաբանութիւնսն ἐν φυσικοῖς λόγοις ԴՊորփ. 271. DPorph. 109, 31, բնաբանութիւն φυσιολογία Էլ. 24[1]. (յունաբան թարգմանութիւնների առաջին շերտում φυσιόλογος, φυσιολογία թարգմանուած են՝ բնախօս, բնախօսութիւն Փիլ. լին. 96, Փիլ. նախ. 75, Փիլ. այլաբ., Պիտ. 342). 2 տեսակարարեմ εἰδοποιῶ Ներ. Պորփ. 236, ԴՊորփ. 320, Ահմ. 178, Վերլ. 571, Էլ. 56, տեսակարարու εἰδοποιός Ներ. Պորփ. 237, Էլ. 68, տեսակարար εἰδοποιός Ներ. Պորփ. 233 (նախկին թարգմանութիւններում εἰδοποιῶ թարգմանուած է՝ տեսակագործեմ Ցպէր. 518, Փիլ. նախ. 4, Տիմ.

---

[1] Բայց Էլ. 31 ունի ի բնաբանութեան — յուն. ἐν τοῖς Φυσικοῖς El. 124, 12, նաեւ բնաբանական Էլ. 38 — τὸ φυσικόν El. 128, 26։

Հակաճ. 195, 20), 3. *յարատրեմ παραδίδωμι* Սհմ. 135 են, Էլ. եւն. 4. *կենդանաբոյս ζωόφυτον* Սհմ. 206, Դպորփ. 296, 5. *երեւակայութիւն*[1] *φαντασία* Սհմ. 181, 185, Վերլ. 559, *երեւակայեմ φαντάζω* 193, 6. *եզրակացութիւն*[2] *συμπέρασμα* 185, Դպորփ. 267, Վերլ. 559 (*նաեւ բաղեզերումն, բաղեզերութին* Վերլ. 562, 583), *եզերակացութիւն, եզրակացութիւն* Էլ. 27, 28, 7. *կորնըթարդ* Սահմ. 144, *կորընթի κυρτός* Էլ. 127, 8. *համալսարան ἀκροατήριον* Սհմ. 128 (*նաեւ* Նոննոս 35, 10), 9. *ուղղորդագնաց ὀρθοπεριπατητικός* Սհմ. 137, Առ. Հինգ 217, Դպորփ. 291, 10. *լայնեղունկն, πλατυώνυχος* Սհմ. 137, Առ. Հինգ 217, Դպորփ. 291, 11. *մակամտածութիւն ἐπίνοια* Սհմ. 193, Դպորփ. 270, 12. *բացալինիմ ἀπογίνομαι* Ներ. Պորփ. 239, Դպորփ. 341, Էլ. 95, 13. *բացագործեմ ἀπεργάζομαι* Սհմ. 160, Ար. Աշխ. 615, Դպորփ., 14. *հանուր καθόλου* Սհմ. 126, Դպորփ. 255, Վերլ. 572, *հանրական καθολικός* Սհմ. 159, *հանրականք τὰ καθόλου* Էլ. 31 (*ունին նաեւ ընդհանուր, ընդհանրական, ընթանրական*), 15. *յարաքարշեմ παρέλκω* Էլ. 115, *ἀνθέλκω* Դպորփ.

---

[1] *Φαντασίαν παρέχουσι* (El. 172, 10) Էլիասի Ստորոգութեանց մեկնութեան մէջ թարգմանուած է՝ «զբաղումն իմն եւ կարծիս տան», Էլ. 93։

[2] Եզրակացութիւն — συμπέρασμα թւում է ինձ աղճատուած. Հնագոյն ձեռագրերում թերեւս գտնուի այս բառի ուղիղ ընթերցուածը, որ պիտի լինի *եզրակութիւն* :

264, 16. *յարածեմ* *παράγω* Էլ. 23, Առ. Հինգ 218, 17. *ենթալուսնեայ* *ὑπὸ σελήνην* Էլ. 61, Դպորփ. 265, 18. *անհատել* *ἀτομοῦν* Ներ. Պորփ. 240, Դպորփ. 279, 322 ևն, 19. *եռոտնիք* *τρίπους* Էլ. 4, *եռոտնեայք* Ընանուն՝ Հատուած ինչՍտոր. մեկնութեան 140, *եռոտանի* Նոննոս 10 ևն., 20. *միայնագիրք* *μονόβιβλος* Էլ. 33, *միայնագրում* Վերլ. 587, 21. *գրանոց* *βιβλιοθήκη* Էլ. 40, Վերլ. 563, 22. *աներկրաչափ* *ἀγεωμέτρητος* ՍՀմ. 128, Էլ. 21։

§ 45. **Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի հայերէն մեկնութիւնները չեն կարող բոլորն էլ միասին համարուել միևնոյն թարգմանչի աշխատութիւն։** — Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերն են, ինչպէս վերև յիշեցի՝ 1. Սահմանք իմաստասիրութեան։ 2. Վերլուծութիւն Ներածութեան Պորփիւրի։ 3. Առածք Հինգ և վասն բաժանման։ 4. Մեկնութիւն չորեքտասան գլխոց Արիստոտէլի ի Վերլուծականն։ 5. Մեկնութիւն Ստորոգութեանց Արիստոտէլի ընծայեալ իմաստասիրի։ 6. Հատուած ինչ մեկնութեան Ստորոգութեանցն Արիստոտէլի[1]։

1. Արդ՝ վերոյիշեալ երկերից կարող են միևնոյն թարգմանչի աշխատութիւն համարուել առաջին երկուսը, որովհետև սրանց յունաբան բառապաշարը գրեթէ միևնոյնն է, նաև նման հատուածներն այս երկերում թարգմանուած են յունարէնից միակերպ։ Այսպէս՝

---

[1] Այս երկերի մանրամասն վերնագրերը տես այս աշխատութեան մէջ՝ § 8։

Սահմ. իմաստ., էջ 133.

"Եւ պարտ է գիտել, եթէ զսահման եւ զբաժանումն յիշէ Պղատոն։ Զսահման ի Փեդոնի[1] տրամաբանութեանն՝ ասելով, թէ Ով մանուկ դու, մի է սկիզբն գեղեցկաբար խորհելոյն, գիտել յաղագս որոյ է մտածութիւնն. ապա թէ ոչ՝ Հարկ է յամենայնէն վրիպել"։

Դ.Պորփ., էջ 264.

"Եւ ասի գիտաւորութիւն յարաքարչել զմեզ առ ինքն. վասն զի ըստ Պղատոնի մի է սկիզբն ճշմարիտ խորհելոյ՝ գիտել յաղագս որոյ է մտածութիւնն. ապա թէ ոչ՝ Հարկ է յամենայնէն վրիպել"։

Սահմ. իմաստ., 133.

"Իսկ զբաժանումն յիշէ ի Սոփեստեսյ տրամաբանութեանն ասելով, թէ Ըստ բաժանական Հնարս ոչինչ պանծացի փախչել"։

Դաւ. Պորփ., 302.

"Եւ զի ախորժելի է Պղատոնի ածով առնել զբաժանումն, ինքն իսկ յայտ արար ասելով. Զի ըստ բաժանականն, ասէ, Հնարս ոչինչ պանծասցի փախչել"։

2. Վերլուծականքի մեկնութեան թարգմանութիւնը եւս յունաբան իր բառապաշարով շատ մօտ է վերոյիշեալ այս թարգմանութիւններին, սակայն կան եւ լեզուական որոշ տարբերութիւններ, ուստի դժուար է անվերապահօրէն այս թարգմանութիւնը նոյնպէս վերագրել նորպղատոնական մեկնիչ Դաւթի երկերի թարգմանչին։ Ներքեւ դէմ առ դէմ դրուած են այս թարգմանութիւնների մէջ Հանդիպող նման Հատուածները, որոնք լեզուական տեսակէտից կամ կատա-

[1] Սխալ է, յունարէն բնագրի Համաձայն պէտք է լինի ի Փեդրոսի։

րնլապէս իրար համապատասխանում են կամ երբեմն տարբերւում.

Սահմ. իմաստ., 185.

«Քանզի պարտ է գիտել զհինգ գիտական զօրութիւնս. զզգայութիւն, զերեւակայութիւն, զկարծիս, զտրամախոհութիւն, զմիտս»։

Վերլ. մեկն., 559.

«Քանզի հինգ են ամենեքեան, որովք ճանաչեմք ինչ եւ գիտեմք. զգայութիւն, երեւակայութիւն, կարծիք, տրամախոհութիւն, միտք»։

Սահմ. իմաստ., 185.

«Որգոն՝ հոգի ինքնաշարժ, ինքնաշարժն մշտաշարժ, մշտաշարժն անմահ է»։

Վերլ. մեկն., 585.

«Որգոն՝ անձն ինքնաշարժ, ինքնաշարժն մշտաշարժ, մշտաշարժն անմահ ապա ուրեմն անձն անմահ»

Սահմ. իմաստ., 214.

«Որպէս զի մի՛ զսուտ գիտութիւն ի կարծեաց ընկալցուք, եւ մի՛ չար ինչ գործեսցուք»։

Վերլ. մեկն., 559.

«Որպէս զի մի՛ զսուտ գիտութիւն ընկալցուք, եւ մի չար ինչ գործեսցուք»։

Դաւ. Պորփ., 258.

«Իսկ հաւատալն եղակի գոյ, կամ ի հանրականացն զմասնականսն ցուցանել եւ հաւատարմացուցանել, կամ ի մասնականացն զհանրականսն, կամ ի զուգէն զզոյգն»։

Վերլ. մեկն., 584.

«Քանզի ամենայն հաւատ՝ կամ ի հանգիտէն զհանգէտն յարդարէ, կամ ի նուազէն զմեծն, եւ կամ ի մեծէն զնուազն»։

Դաւ. Պորփ., 258.

«Արդ յորժամ ի հանրականէն զմասնականսն

Վերլ. մեկն., 584.

«Իսկ որք ի մեծէն զնուազն հաւատացուցանեն,

ցուցանէ եւ հաւատարմացուցանէ, իսկապէս առացուցական կոչին»:

այնոքիկ բաղհաւաքուԹեաւին»:

Դաւ. Պորփ., 259.

«Եւ յորժամ մասնականաւն զընդհանուրն հաւատարմացուցանեմք, այնպիսին մակածական կոչի. որպէս յորժամ կամելով զոք հաւաստացուցանել՝ Թէ ամենայն կենդանի զներքին կլափն շարժէ, ի մասնականացն զայսոսիկ ցուցանեմք ասելով՝ Թէ վասն զի մարդ եւ ձի զներքին կլափն շարժեն, ապա ուրեմն ամենայն կենդանի զներքին կլափն շարժէ: . . . .

. . . . . . . . . .

Ո՛չ է ճշմարիտ. քանզի կոկորդիլոս գազանն եւ փիւնիկն հաւ ոչ շարժեն զներքին կլափն, այլ զվերինն»:

Վերլ. մեկն., 584.

«Իսկ որ ի մասնաւորէն զմեծն յարգարէ, մակածուԹիւն ասի. որգոն՝ վասն զի մարդ եւ ձի զներքին կլափն շարժեն, որ ոչ է հարկաւոր փիւնիկաԹեւի եւ կոկորդիլոսի եւ գուճոցի (ուրիշ ընԹերցուած՝ գաճայլի), որք զվերին կլափն շարժեն»:

Դաւ. Պորփ., 259.

«Իսկ յորժամ հաւասարաւն զհաւասարն ցուցանեմք, յայնժամ յարացոյց կոչի, որպէս յորժամ ոք կամելով ոչ տալ Դիոնիսիոսի մարմնապահս ասելով. Արք աԹենացիք, ոչ տացուք Դիոնիսիոսի Թիկնապահս. վասն զի եւ Պիսիստրատոս առեալ բռնացաւ: . . .

Վերլ. մեկն., 584.

«Արդ որ ի հանգիտէն զհանգէտն յարգարէ, ասի յարացոյց. որգոն՝ ոչ տացուք ԴիոնեսիոսուՄ Թիկնապահս մարմնոյ. վասն զի եւ Պիսիստրատոս առեալ բռնացաւ: Քանզի ոչ հարկաւոր է՝ Թէ Պիսիստրատոս բռնացաւ, եւ Դիոնեսիոս բռնանայ»:

. . . . . . . . . . .

Ո՛չ է ճշմարիտ. քանզի ոչ եթէ յորժամ Պիսիստրատոս բռնացաւ, եւ Դիոնէսիոս բռնացաւ„:

3. Էլիասին ընծայուած Ստորոգութեանց մեկնութեան մէջ եւս Նրա յունաբան բառամթերքը պատկանում է, մեծ մասամբ, Դաւիթ մեկնիչի երկերի Հայ թարգմանութեանց լեզուախմբին։ Սակայն Նրա մէջ կան եւ որոշ նշաններ, որոնք Հիմք կարող են ծառայել ենթադրելու, որ այս մեկնութիւնը կարող է եւ չլինել միեւնոյն թարգմանչի աշխատութիւն։ Ամենաուշագրաւ նշանն այդ տեսակէտից այն է, որ Նրա Հայերէն թարգմանութեան մէջ մի քանի տեղ յունարէն բնագիրը փոփոխուած է եւ Սոկրատ փիլիսոփան փոխարինուած է օրինակներում Դաւիթ փիլիսոփայով։ Այսպէս՝

| | |
|---|---|
| El. in Categ., էջ 169, 7–8. | Էլ. Ստ. մեկն., 88, 14–15. |
| ’Αντὶ τοῦ εἰπεῖν ‘κάλεσον τὸν Σωκράτην’ λέγω ‘κάλεσον τὸν φιλόσοφον’. | “Փոխանակ ասելոյն “կոչեա՛ զԴաւիթ„ ասեմք “կոչեա՛ զփիլիսոփայն„: |
| El. in Cat, էջ 170, 4–5. | Էլ. Ստ. մեկ. 89, 18. |
| Ὥσπερ Σωκράτης καὶ Ἄργος ὁ κύων καὶ Ξάνθος ὁ ἵππος. | “Որպէս է Դաւիթ եւ Արգոս շուն եւ Նշխարն պիտակ ձի„: |
| El. in Cat., 187, 27–30. | Էլ. Ստ. մեկն., 119, 9–12. |
| Καὶ ὁ λόγος δὲ διωρισμένος ἐστίν, εἴγε πάντως μεταξὺ | “Բայց եւ բան տարորոշեցեալ է. վասն զի ընդ |

δύο συλλαβῶν ἐστι σιωπή. ἐν γὰρ τῷ φίλος τῆς φι συλλαβῆς ἡ ἐκφώνησις ἄλλη ἐστὶ παρὰ τὴν λος ἐκφώνησιν τῆς συλλαβῆς.

մէջ ամենայն երկուց փաղառութեանց լռութիւն է. որպէս ի Դաւիթ անուանն. քանզի ի "Դաւ" փաղառութեանն այլ արտաձայնութիւն է եւ ի "ւիթ" փաղառութեանն այլ արտաձայնութիւն":

Այս փոփոխութիւնները, որ, ըստ երեւոյթին, թարգմանչինն են եւ ոչ յետագայ ժամանակների ներմուծումներ, մի ակնարկ են, որ Էլիասի Ստորոգութեանց մեկնութիւնը կարող է թարգմանուած լինել Դաւթի երկերի թարգմանութիւններից յետոյ, երբ նորպղատոնական Դաւիթ մեկնիչն արդէն հռչակ էր ստացել հայ իմաստասիրական մատենագրութեան մէջ։ Հաւանօրէն, Դաւիթ փիլիսոփայի երկերը թարգմանելուց յետոյ միայն կարեւոր է համարուել թարգմանել նաեւ նրա ուսուցիչ Էլիաս-Ոլիմպիոդորոսի Ստորոգութեանց մեկնութիւնը։

Նոյն այդ ենթադրութիւնը կարծես թէ հաստատւում է նաեւ այդ թարգմանութիւնների յունաբան բառապաշարի մանրազննին քննութեամբ։ Թէեւ նրանց մէջ, մեծ մասամբ, միեւնոյն յունաբան բառերն են գործածուած, սակայն կան երբեմն եւ որոշ ուշագրաւ տարբերութիւններ։ Այսպէս՝

1. ἀντιπαράστασις հակայարակացութիւն Էլ. 133 12, 111 20, 112 26, 113 7, նաեւ հա-

կայարասաստութիւն Էլ. 135 2, իսկ ընդդիմայարակայութիւն[1] Սհմ. 124.

2. ἔνστασις ներկացութիւն, ներակացութիւն. Էլ. 111 23, 133 13, նաեւ ընդդիմակացութիւն Էլ. 116 15, ներստասութիւն[2] Էլ. 134 2, իսկ ընդդիմակայութիւն[1] Սահմ. 124.

3. βάναυσοι τέχναι ձեռնարհեստականք Էլ. 20, ձեռականք արհեստք Սհմ. 184.

4. ἀναλογία վերաբանութիւն Էլ. 49, 50, 87. Նախկին թարգմանություններում՝ համեմատութիւն.

5. ἐν ῥοῇ καὶ ἀπορροῇ ի հոսման եւ ի ծորման Սահմ. 125 32, 126 11, ի ներհոսման եւ ի բացահոսման Էլ. 102 11։ Բացի վերոյիշեալ նկատառումներից՝ ուշագրաւ է նաեւ այն, որ յունարէն միեւնոյն հատուածները թարգմանուած են Դաւթի ու Էլիասի թարգմանութիւններում՝ երբեմն բառացի իրար նման, երբեմն էլ տարբեր։ Եթէ այդ թարգմանութիւնները վերագրելու լինենք զանազան թարգմանիչների, համարելով Էլիասի մեկնութիւնը յետնագոյն

---

1 Թւում են աղճատուած. պէտք է լինի՝ ընդդիմայարակացութիւն, ընդդիմակացութիւն։

2 "Ներստասութիւն" եւ "Հակայարասաստութիւն" սխալ թարգմանութիւն են։ Ըստ երեւոյթին, թարգմանիչը յունարէն բնագրում ἀντιπαράστασις-ի ու ἔνστασις-ի փոխարէն ունեցել է աղճատուած բառեր՝ ἀντιπαράταασις եւ ἔντασις։ Հմմտ.՝ տատուկութիւն — ἐπίτασις Ներ. Պորփ. 236, տատուկութիւն եւ մակատասութիւն — ἐπίτασις Թր. 15 եւ 34։

թարգմանութիւն, այդ դէպքում՝ պէտք է նախ ընդունենք, որ Էլիասի թարգմանութեան մէջ նման հատուածները քաղուած պիտի լինեն Դաւթի երկերի թարգմանութիւնից։ Նման ու համապատասխան այդ հատուածները հետեւեալներն են.

Էլիաս, 36, 2–5.

«Վասն զի ամենայն ինչ առ ի դիտաւորութիւն հայի, որպէս եւ Պղատոն ասէ. 'Ո՛վ մանուկ դու, մի է սկիզբն գեղեցկաբարն խորհելոյ· գիտելն յաղագս որոյ է մտածութիւնն. ապա եթէ ոչ՝ հարկ է յամենայնէն վրիպելոյ'»

Սահմ., 133, 19–23.

«Եւ պարտ է գիտել, եթէ զսահման եւ զբաժանումն յիշէ Պղատոն. զսահման ի Փեդրոսի արամաբանութեանն ասելով, թէ 'Ո՛վ մանուկ դու, մի է սկիզբն գեղեցկաբար խորհելոյն. գիտել յաղագս որոյ է մտածութիւնն. ապա թէ ոչ՝ հարկ է յամենայնէն վրիպելոյ'»

Էլիաս, 5, 3–6.

«Զոր առանձինն յանդիմանէ Պղատոն զերկաքանչիւրսն՝ եթէ Որպէս հաստատեալք ասէք ոչ գոլ հաստատուն, եթէ որպէս ոչ հաստատեալք։ Եթէ որպէս հաստատեալք՝ ահա՛ է հաստատուն, ապա եթէ որպէս ոչ հաստատեալք՝ ոչ հաւանիմք ձեզ ոչ հաստատելոյդ, եթէ է անհաստատութիւն»։

Սահմ., 132, 10–17.

«Առ որս հանդիպի Պղատոն ախտացելոյ առ ասացելոյ նոցա ոչ գոլ հաստատուն, ասելով՝ Եթէ զիարդ ասէք ոչ գոլ հաստատուն. որպէս հաստատեալք, եթէ որպէս ոչ հաստատեալք։ Եւ եթէ որպէս հաստատեալք, յայտ է թէ հաստէք, եւ է հաստատուն։ Իսկ եթէ որպէս ոչ հաստատեալք, ո՞վ հաւատասցէ ձեզ յասելդ ձայդ, ոչ յաստելոյդ եւ ոչ գիտացելոյդն»։

*թեամբ, տակաւին եւս նոր գոյով համբակ, ապա եթէ ոչ՝ փախիցէ ի քէն ճշմարիտն, թախանձութիւն կոչեաց զհեռակացութիւն իւրացն՝ այսինքն զբանականն»։*

*կաւին եւս նորագոյնդ ես, ապա թէ ոչ՝ փախիցէ ի քէն։ Ճշմարտաթախանձութիւն կոչեցեալ զբացագունութիւն իւրացն, իսկ կրթութիւն զգիտութիւն գոյիցն»։*

4. Դաւիթ-Ոլիմպիոդորոսի իմաստասիրական դպրոցի երկերի խմբին պատկանում է, անտարակոյս, նաեւ «Հատուած ինչ մեկնութեան Ստորոգութեանցն Արիստոտելի», որ տպագրուած է Էլիասի Ստորոգութեանց մեկնութեան վերջում (էջ 140—149)։ Ինչպէս վերոյիշեալ թարգմանութիւնները, նոյնպէս եւ այս հատուածի թարգմանութիւնը, ընդհանուր առմամբ, ունին յունաբան բառապաշարի ու լեզուական առանձնայատկութիւնների նմանութիւններ, որովհետեւ յունաբան դպրոցի զարգացման միեւնոյն երրորդ շրջանի արտադրութիւններ են։ Սակայն ուշադիր քննութիւնը ցոյց է տալիս, որ Անանունի մեկնիչի հատուածի թարգմանութիւնը հազիւ թէ կարելի լինի վերագրել Դաւթի Սահմանքի կամ Էլիասի Ստորոգութեանց մեկնութեան թարգմանիչներին։ Այս ենթադրութեանը հիմք են ծառայում, ամէնից առաջ, յունարէն նման հատուածների տարբեր թարգմանութիւնները յիշեալ երկերում։ Այսպէս.

*Անան. մեկն., էջ 142–143.*

*«Արդ են Ինդանիկեցիք՝ Արիստոքսենոս եւ Կղէոմբրոտոս, որոյ ընթերցեալ*

*Սահմ., էջ 164.*

*«Եւ պարտ է գիտել, եթէ այն Կղէոմբրոտոս ամբրակիացի կարծելով,*

զՊղատոնական գիրսն, որ վասն խոկման մահուն, եւ ոչ իմացեալ զասացեալսն՝ ընկեց զինքն ի պարսպէն։ Վասն որոյ ասացեալն է ի Պասիլէ. Ոնրկրեսչքիր, Կղէոմպրոտոս Ամբրակիացի վազեալ ի բարձր պարըսպէն ի գետին, արժանի ոչինչ գործեաց մահու, այլ զՊղատոնին, որ վասն հոգւոյ գրեր՝ ընթերցեալ»։

եթէ Պղատոն զբնաւորական մահուանէն հրամայէ խոկալ իմաստասիրին, ընկեցեալ զինքն ի պարսպէն վախճանեցաւ. Վասն որոյ ասէ Կալիմաքոս, Ուրախացիր ով արեգակն, Կղէոմբրոտոս Ամբրակիացի վազեալ ի բարձրաբերձ պարըսպաց ի դժոխս, արժանի ինչ ոչ ունեալ մահու, այլ շար զՊղատոնի զյաղագս հոգւոյ գիրն ընթերցեալ»։

*Անան. մեկն., 147, 9—17.*

«Եթէ ոչ վասն թշնամութեան Պղատոնի չինեաց Արիստոտէլէս զԼիկիոնն. քանզի Աթենացիք գարշեալ կոչէին զնա՝ ասաց, եթէ քաւ լիցի ինձ գալ յայն քաղաք, ուր նախանձ ի նախանձու վերայ ծերանայ եւ զրպարտութիւնն ի զրպարտութեան վերայ[1]։ Այսուիկ յայտնեաց զբազմութիւն զրպարտողացն. զրպարտողս զնոսա կոչեաց վասն Սոկրատայ, զի ետուն նմա ի բանդին զկոնիոնն»։

*Էլիաս, 30, 11—17.*

«Քանզի յետ մահուանն Սոկրատայ, ելեալ յԱթենից՝ ամծիւր ի Քաղաքիդում, եւ վերստին կոչելով որ յԱթենս եւ ոչ հաւանեալ՝ գրեաց այսպէս. Ոչ հաւանեցուցից զԱթենացիս երկիցս մեղանչել զիմաստասիրութիւն, առ որս խոզատանձ ի վերայ խոզատանձի ծերանայ եւ թուզ ի վերայ թզոյ[1]։ ՚Թուզ ի վերայ թզոյ, գրելով՝ զզրպարտողսն նշանակեաց»։

Համեմատէ նաեւ հետեւեալ նման հատուածները՝ Անան. մեկն. $144_{30}$—$145_{2}$, Էլ. $5_{3-6}$

[1] Էլիասի յունարէն բնագիրն ունի՝ «ὄχνη ἐπ' ὄχνῃ γηράσκει, σῦκον δ'ἐπὶ σύκῳ»։

եւ Սահմ. 132 10–17, Անան. Մեկն. 148 6–7, Էլ. 53 13–14 եւ Սահմ. 133 34։

Ուշադրութեան արժանի են նաեւ Անանուն Մեկնիչի ու Էլիասի Ստորոգութեանց մեկնութիւնների մէջ լեզուական հետեւեալ տարբերութիւնները.

1. Յունական իմաստասիրական դպրոցների անունները Էլիասի թարգմանը միշտ հայացնում է, իսկ Անանուն Մեկնիչի թարգմանը գործ է ածում նրանց յունական անունները։ Այսպէս՝

ա. Ἐφεκτικός Արգելական Էլ. 5 24, 6 12, 11 9, Եփեկտիկեան Անան. 140, 142, 144, 145, 147, բ. Ἡδονικός Հեշտական Էլ. 8, 11, Իդոնիկեան Անան. 141, 142, 143, գ. Κυνικός Շնական Էլ. 4, 6, 11, կիւնիկեցի Անան. 141, “կիւնիկեցիք, այսինքն՝ Շնականք„ Անան. 147, դ. Περιπατητικός Ճեմական Էլ. 1, 9, 10 եւն, պերիպատիկեանք Անան. 145, 146, 147, “Արիստոտէլականք, այսինքն՝ Ճեմականք„ Անան. 142[1]։

2. Թէեւ Անանուն Մեկնիչի Ստորոգութեանց մեկնութեան հատուածի յունարէն բնագիրը գտնուած չէ, բայց թւում է ինձ, որ ներքեւ առաջ բերուած օրինակները եւս պէտք է լինեն յունարէն միեւնոյն բառերի ու նախադասութիւնների տարբեր թարգմանութիւնները։ Այսպէս՝

---

[1] Դաւիթ - Ոլիմպիոդորոսի խմբի միւս երկերում նոյն բառերը թարգմանուած են՝ Շնականք Սահմ. 166, ԴՊ. 272, Ճեմականք Սահմ. 167, ԴՊորփ. 280, 307, 325, 326, “Եփեկտիկոսացն փիլիսոփայից„ Վերլ. Մեկն. 579։

ա. *αἱρεσιάρχης* *հերձուածապետ* Էլ. 3, *սկզբնաւոր հերձուածին* Անան. 141, *նաեւ հերձուածապետ* Անան. 147, բ. *ἀπὸ τῆς πατρίδος* (El. 108 30, 113 12) *ի հայրենեաց* Էլ. 3, 10, *ի գաւառէն* Անան. 141, 147, գ. *ἀπὸ τοῦ τρόπου τῆς ζωῆς* (El. 111 2) *ի յեղանակէ վարուցն* Էլ. 6, *ի յեղանակէ կենացն* Անան, 141, 147, դ. *ἀπὸ τινος συμβεβηκότος* (El. 112 18) *յումեմնէ պատահմանէ* Էլ. 9, *յիմեքէ պատահմանէ* Անան. 142, ե. *διττὴ γὰρ ἡ ἀναίδεια. ἡ μὲν χείρων τῆς αἰδοῦς ἡ δὲ κρείττων* (El. 111 14) “*քանզի երկակի է անպատկառութիւն՝ մին յոռեգոյն քան զամաւթ եւ մին է լաւագոյն*„ Էլ. 7 11–18, *իսկ* Անան. 141 11–12՝ “*անամաւթութիւնն կրկին է՝ կամ ի վեհագոյնն կամ ի վատթարագոյնն*„, զ. *δι᾽ εὐγνωμοσύνην μαθητῶν* (El. 128 1) *յաղագս բարեմտութեան աշակերտաց* Էլ. 37 12–13, *վասն բարեբարութեան աշակերտացն* Անան. 148 22-23, է. *ποιητής* *բառը, որ Թրակացու քերականութիւնից սկսած յունաբան բոլոր շերտերի երկերում թարգմանուած է* “*քերդող*„. *Անանունի Ստորոգութեանց մեկնութեան հատուածի մէջ թարգմանուած է* “*արարիչ*„՝ *էջ* 144 6՝ “*իբրու թէ յարարչէն իսկ ասացեալ՝ միշտ յարախրախանալ յաղագս հիւրուց եւ բարեկամաց ելամտից*„:

5. *Այն աշխատութեան առաջին մասում ցոյց արուեց արդէն, որ Արիստոտէլի իմաստասիրութեան վերաբերեալ հնագոյն հայերէն եր-*

կերը, որոնք վերագրուած են եղել, մեծ մասամբ, Դաւիթ Անյաղթ փիլիսոփային, թարգմանուած են յունարէնից եւ զանազան հեղինակների աշխատութիւն են։ Իսկ այժմ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբին պատկանող հայերէն թարգմանութիւնների մանրազննին քննութեամբ լուսաբանւում է եւ մի այլ կարեւոր խնդիր, — որ յունաբան երրորդ շերտի այս թարգմանութիւնները ոչ միայն տարբեր են յունաբան առաջին եւ երկրորդ շերտերի թարգմանութիւններից, այլ եւ իրանք իսկ, լինելով լեզուական տեսակէտից խմբակից, չեն կարող համարուել միեւնոյն թարգմանչի աշխատութիւն։ Ուրեմն, ինչպէս տեսնում ենք, կատարելապէս սխալ է դրւում իմաստասիրական երկերի թարգմանութեան վերաբերեալ խնդիրը, երբ բանասիրական այս կամ այն աշխատութեան մէջ խօսք է լինում շարունակ արիստոտէլեան երկերի ու մեկնութիւնների հայ թարգմանչի մասին։

§ 46. Յունարէն համանման հատուածների թարգմանութիւնը յունաբան զանազան շրջանների թարգմանութիւններում։ — Յունաբան հնագոյն թարգմանութիւնները ծագել են, ինչպէս տեսանք, ոչ թէ միանաբար ու միաժամանակ վեցերորդ, եօթներորդ կամ ութերորդ դարում, այլ զանազան ժամանակաշրջաններում, եւ բաժանւում են երեք տարբեր շերտերի։ Արդ՝ այս հիմնական եզրակացութեանը յանգելուց յետոյ, կարծում եմ, որ դժուար չէ բացատրել նրանց մէջ հանդիպող համանման հատուածների թարգմանու-

թեան այն կապն ու առընչութիւնը, որ նկատուած են մասամբ բանասիրական նորագոյն աշխատութիւններում։ Համանման այդ հատուածները են.

1. *Սահմ.*, 165, 16—19. *Պիտ.*, 360, 20—21.

«Որպէս եւ Թէոգնիս յայտ առնէ ցոմն Կիւռնոս ասելով՝ թէ պարտ է յաղքատութենէ փախչել եւ ի միծանիուեղն անկանել ծովս, եւ ի վիմաց, Կիւռնէ, հոսիլ յարեգակնակոխս»[1].

«Արժան է յաղքատութենէ փախչել, եւ ի մեծն անկանել ծով եւ կամ ի վիմաց հոսիլ ի բարձանց»։

Եթէ չեմ սխալւում յունարէն համանման այս հատուածների տարբեր թարգմանութիւնը մատնանշուած է Ադ. Բաումգարտների Über das Buch "Die Chrie" ուսումնասիրութեան մէջ[2]։ Դժբախտաբար, այդ աշխատութիւնը չունեմ այժմ ձեռքիս տակ։ Ամենաուշագրաւն է այս հատուածներում յունարէն ἠλίβατος բառի տարբեր թարգմանութիւնը՝ արեգակնակոխ եւ բարձր։ 'Ηλίβατος այս բառը, ինչպէս յայտնի է, հասկացուել է յունարէնում երկու տարբեր իմաս-

---

[1] Այս հատուածի յունարէն բնագիրը տես Dav. Prolegom., էջ 32 19—23՝

"'Ως καὶ ὁ Θέογνις τοῦτο δηλοῖ πρὸς Κύρνον τινά οὕτω λέγων·

Χρὴ πενίην φεύγοντα καὶ ἐς μεγακήτεα πόντον
'Ρίπτειν·καὶ πετρῶν, Κύρνε, κατ' ἠλιβάτων".

[2] Տես Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, 1886, էջ 457—515։

տով՝ կամ իբրեւ ἠλίτο-βατος = «անմատչելի, խիստ բարձր» եւ կամ իբրեւ ἠλιό-βατος = «արեգակնա-ճեմ, արեգակնա-կոխ»[1]։ Արդ՝ «Ցաղագս Պիտոյից» երկի թարգմանն այդ բառը հասկացել է առաջին իմաստով, իսկ Սահմանքի թարգմանը՝ երկրորդ իմաստով։ Աւելի քան պարզ է, որ այդ թարգմանները պէտք է լինեն տարբեր անձնաւորութիւններ։ Արդ՝ քանի որ սոյն իմ աշխատութեան մէջ ցոյց է տրուած արդէն, որ «Յաղագս Պիտոյից» գրուածքը յունաբան առաջին շերտի թարգմանութիւն է, իսկ Սահմանքը՝ երրորդ շերտի, եւ որ այդ թարգմանութիւնները ծագել են տարբեր ժամանակաշրջաններում, շատ պարզ ու հասկանալի է այժմ՝ թէ այդ թարգմանութիւնների եւ թէ դրանց թարգմանիչների իրարից տարբեր լինելը, եւ այդ խնդիրը պէտք է համարել ըստ իս վերջնականապէս լուսաբանուած ու լուծուած։

2. Մի ուրիշ նոյնքան հետաքրքրաշարժ հաստուած մատնացոյց է արել Նիկ. Ադոնցն իր «Արուեստ Դիոնիսեայ քերականի» աշխատութեան մէջ.

| Սահմ., էջ 182, 9—11. | Թրակ., էջ 42, 15—18. |
| --- | --- |
| «Արհեստ է՝ բաղկացութիւն ի հասողութենէ նախաներհմտութեամբ նախա- | «Արուեստ է՝ բաղկացութիւն ի թողմանէ նախակրթեալ առ ի պիտանա- |

[1] Տե՛ս Dr. W. Pape's Griechisch-Deutsches Handwörterbuch, Bd. I, 1888, էջ 1161։

կրթեալ առ ի պիտանա- ցու ինչ իրս, որ ի կենցա-
ցու ինչ կատարումն, որ ի զուամ»՝
կենցաղումս»[1]։

Իսկապէս՝ այս հատուածը ոչ թէ Թրակացու քերականութեան հայերէն բնագրի մէջ է գտնւում, այլ Դաւիթ փիլիսոփայի քերականի մեկնութեան մէջ[2], սակայն Նիկ. Ադոնցը կարծում է, որ նոյն հատուածը եղած պիտի լինի Թրակացու քերականութեան յաւելուածում, որտեղից եւ, հաւանաբար, քաղել է Դաւիթ փիլիսոփան։ Արդ՝ այս հատուածում ուշադրութեան արժանի է, ամէնից առաջ, ինչպէս շատ ուղիղ դիտել է Նիկ. Ադոնցը, κατάληψις յունարէն բառի տարբեր թարգմանութիւնը՝ հասողութիւն եւ թողումն։ Սահմանքի թարգմանը κατάληψις բառը հասկացել է καταλαμβάνειν = հասկանալ, հասու լինել բայից, իսկ միւս թարգմանը՝ καταλείπειν = թողուլ բայից։ Միանգամայն պարզ է, ինչպէս եւ ճիշտ եզրակացնում է Նիկ. Ադոնցը, որ այս հատուածների թարգմանները պէտք է լինեն տարբեր անձնաւորութիւններ։ Սակայն Նիկ. Ադոնցը ենթադրում է միեւնոյն ժամանակ, որ այդ թարգմանութիւնները մնացած միւս մասերում այնքան են իրար համապատասխան, որ կարող են լինել միեւնոյն գրական

---

1 Յունարէն բնագիրը տես Dav. Proleg., էջ 144 5—6․ “τέχνη ἐστὶ σύστημα ἐκ καταλήψεων ἐμπειρίᾳ συγγεγομνασμένη πρός τι τέλος εὔχρηστον τῶν ἐν τῷ βίῳ„.

2 Նիկ. Ադոնց, Արուեստ Դիոնիսեայ քերականի էջ 80։

դպրոցի արտադրութիւն։ Այս ենթադրութիւնն ըստ իս պէտք է համարել այժմ անընդունելի, քանի որ գիտենք արդէն, որ Սահմանքը եւ Թրակացու քերականութիւնը տարբեր ժամանակի ու յունաբան տարբեր դպրոցների թարգմանութիւններ են։

3. Եղիասը եւս իր Ստորոգութեանց մեկնութեան մէջ ունի երկու հատուած, որ գտնւում են նաեւ Թրակացու քերականութեան մէջ։

*Եղիաս*, 55, 2—6.

"Եւ ոչ զքերդողս պարտ է ընդունել, որք հակառաչեն զյարանուանն անուանականաց եւ բայականաց. քանզի է փափկանէս ի փափկութենէ եւ Առուածանէս յառուածոյ. իսկ բայականք՝ ի սիրելոյ սիրեմ եւ յիմանալոյ իմաստուն. զոր պարտ է զանոնայնս յարանունս կոչել. իսկ նոքա զոմանս անուանականս կոչեն եւ զոմանս բայականս":

*Թրակ*. 15, 23-16, 6.

"Յարանուն է որ յար յանուն ինչ քերդոցեալ է, որպիսի Տիրիճան, Խորախձան։

Բայածական է որ ի բայէ ածանցեցեալ է, հիբար սիրուն, իմաստուն, մարթուն":

*Եղիաս*, 51, 21—24.

"Եւ կամ ըստ իրաց հաղորդին եւ ըստ անուան զանազանին, եւ լինին բազմանունքն՝ որպէս խաղ, գալարք, մարտացու, փողակաւոր, սուսեր, նրան[1]":

*Թրակ*., 19, 9—12.

"Փաղանուն է որ ի զանազան անուանս զնոյն ցուցանէ. որգոն՝ խաղ, գալարք, մարտացու, փողակաւոր, սուսեր, նրան":

---

[1] Տե՛ս նաեւ Եղիաս 55, 11։

Նիկ. Ադոնցը, որ վերոյիշեալ իր աշխատութեան մէջ քննութեան է առել այս հատուածները (էջ CLXX—CLXXII), մատնանիշ է անում, որ յունարէն θέων եւ Τρύφων անուններն Էլիասի մեկնութեան մէջ թարգմանուած են՝ Աստուածանէս եւ Փափկանէս, իսկ Թրակացու քերականութեան մէջ՝ Տիրիճան եւ Խրախճան։ Բայց յունարէն ξίφος, μάχαιρα, σπάθη, ἄορ եւ φάσγανον բառերը թարգմանուած են թէ Էլիասի եւ թէ Թրակացու նոյն երկերում միատեսակ՝ դալապր, մարտացու, սուսեր, խադ եւ նրան։ Նիկ. Ադոնցի կարծիքով, երկրորդ հատուածում բառացի այդ նմանութիւնը կարելի է բացատրել երկու կերպ՝ կամ թարգմանութիւնները միեւնոյն անձի աշխատութիւն են եւ կամ Էլիասի թարգմանը օգտուած պիտի լինի Թրակացու քերականութեան հայերէն թարգմանութիւնից։ Ինչ վերաբերւում է θέων եւ Τρύφων անունների տարբեր թարգմանութեան, Նիկ. Ադոնցը հնարաւոր է համարում, որ միեւնոյն թարգմանը նոյն անունները կարող էր թարգմանել մի դէպքում՝ Տիրիճան ու Խրախճան, կամենալով հայացնել յունական այդ անունները, իսկ մի այլ դէպքում՝ Աստուածանէս եւ Փափկանէս, աշխատելով պահել նոյն անուններն անփոփոխ՝ համապատասխան յունարէն բնագրին։ Կարեւոր այս խնդրի վերջնական լուծումը նա թողնում է անորոշ, մինչեւ որ երեւան կը գան նոր փաստեր ու տուեալներ, որոնք ցոյց կը տան Էլիասի թարգմանչի կախումը Թրակացու քերականութեան թարգմանութիւնից։

Քանի որ սոյն իմ աշխատութեան մէջ ցոյց տրուեց արդէն, որ Թրակացու քերականութիւնը յունաբան առաջին շերտի թարգմանութիւններից ամենահինն է, մինչդեռ Եղիասի Ստորոգութեանց մեկնութիւնը որոշուեց, որպէս յունաբան դպրոցի երրորդ շերտի աշխատութիւն, թարգմանուած շատ աւելի ուշ՝ մի այլ ժամանակաշրջանում, ուստի խօսք անգամ չի կարող լինել, որ Թրակացու քերականութեան ու Եղիասի Ստորոգութեանց մեկնութեան թարգմանները լինեն միեւնոյն անձը։

Ըստ երեւոյթին, բազմանուն կամ փաղանուն գաղափարի սահմանման համար ընդհանուր ընդունուած բացատրութիւն է համարուել, Թրակացու քերականութեան ազդեցութեամբ, “խաղ, դալար, մարտացու, վաղակաւոր, սուսեր, նրան„ վերոյիշեալ օրինակը։ Նոյն այդ օրինակը ծանօթ է եղել նաեւ Περὶ ἑρμηνείας գրոց մեկնութեան թարգմանչին, որը խօսելով բազմանունութեան մասին, ասում է՝ “Իսկ ի բազմանունութենէ, որպէս եւ սուսերն եւ նրան միեւնոյն ելով՝ զանազան զմանէ ստորոգին անուանք„ (էջ 498, 9–11)։ Այս ընդհանուր օրինակը ցոյց է տալիս միայն, որ յունաբան երկրորդ եւ երրորդ շրջանների թարգմանիչները ծանօթ են եղել Թրակացու քերականութեան հնագոյն թարգմանութեան, եւ նրանք, ինչպէս տեսանք, գործ են ածել յաճախ նրա քերականական յատուկ եզրերը։

Կարեւորը սակայն Եղիասի մեկնութեան

մէջ ո՛չ թէ այդ նմանութիւններն են, այլ նրա յունաբան լեզուի ու քերականութեան վերեւ մատնանշուած այն էական առանձնայատկութիւնները, որոնք տարբերում են նրան Թրակացու քերականութեան եւ միւս հնագոյն թարգմանութիւններից։ Այդ ակներեւ տարբերութիւնները նկատելի են նոյն իսկ վերոյիշեալ հատուածներում։ Այսպէս՝ ῥηματικός եզրը թարգմանուած է Էլիասի մեկնութեան մէջ՝ բայական, իսկ Թրակացու քերականութեան մէջ՝ բայածական. նմանապէս՝ հակ նախադրութիւնը հակորոշել բայի մէջ (Էլ. 55, 2) յատուկ է, ինչպէս գիտենք, յունաբան երկրորդ եւ երրորդ շրջանների թարգմանութիւններին, իսկ Թրակացու քերականութեան մէջ, ինչպէս եւ յունաբան առաջին շրջանի թարգմանութիւններում, այդ նախադրութիւնը դեռ եւս գործածական չէր։ Ինձ թւում է, որ Թրակացու եւ Էլիասի թարգմանութեան խնդիրը եւս վերջնականապէս լուծուած պիտի համարենք այն իմաստով, որ այդ թարգմանութիւնները տարբեր ժամանակաշրջանների ու տարբեր թարգմանիչների աշխատութիւն են։

4. Էլիասի Ստորոգութեանց մեկնութեան մէջ, ինչպէս տեսանք (§ 44, 3), Արիստոտէլի Ստորոգութեանց հայերէն թարգմանութեան բնագիրն ամբողջովին քաղուած էր Ցամբղէքեան խմբի հնագոյն թարգմանութիւնից։ Նոյն մեկնութեան հայերէն բնագրի քննութիւնը ցոյց է տալիս, որ Էլիասի թարգմանը ծանօթ է եղել

նաեւ յամբղիքեան խմբի Արիստոտէլի «Ցաղագս մեկնութեան» գրոց հայերէն թարգմանութեան, որից նա քաղել է հետեւեալ հատուածը.

| Ըլիաս. 126, 8—11. | Ցաղ. մեկն., 464, 16—17. |
| --- | --- |
| «Իսկ ներքոյ Ցաղագս մեկնութեան բան անուանց գլխաւորագրեցելոյն եւ զնշանակմանն. քանզի սահմանելով ասէ, եթէ բան է ձայն նշանական, որոյ մասանցն իմն նշանակ է զատ»: | «Բան է ձայն նշանական, որոյ մասանցն իմն նշանական է զատ»: |

Արիստոտէլի Վերլուծականքի մեկնութեան թարգմանը եւս ունի Արիստոտէլի «Ցաղագս մեկնութեան» գրուածքից հատուածներ, սակայն այդ հատուածները համապատասխան չեն յամբղիքեան խմբի թարգմանութեան։

| Վերլ. մեկն., 574, 21—24. | Ցաղ. մեկն., 476, 29—31. |
| --- | --- |
| «Քանզի Ցաղագս մեկնութեան ասէ, թէ Այսոքիկ՝ որպէս ի վերլուծականն գոն ասացեալ, նոյնպէս գտանեցին»։ | «Արդ այսոքիկ՝ որպէս ի Վերլուծականս ասի, այսպէս գտանել է»։ |

| Վերլ. մեկն., 574, 21—24. | Ցաղ. մեկն., 476, 29—31. |
| --- | --- |
| «Իսկ Ցաղագս մեկնութեան այսպէս սահմանէ զնա ասելով, Տրամաբանական է՝ հարցումն պատասխանւոյ միոյ նախադասութեան, կամ միոյ մասնական հակասութեան»։ | «Արդ եթէ հարցումն տրամաբանական ըն պատասխանատուութեան է խնդիր, կամ առարկելոյն, եւ կամ միւսոյ մասին հակասութեան»։ |

Ուշադրութեան արժանի են այս հատուածներում, գլխաւորապէս, "նախադասութեան" եւ "առարկելոյն" բառերը, որոնք յունարէն միեւնոյն πρότασις բառի թարգմանութիւնն են։ Առարկութիւն բառը նախադասութեան իմաստով գործ է ածուել նաեւ Περὶ ἑρμηνείας գրոց մեկնութեան թարգմանութեան մէջ, տե՛ս 486, 19—20՝ "առանց նախադասութեանց կամ առարկութեանց"։

§ 47. Պորփիւրի Ներածութեան հայերէն թարգմանութիւնը թուում է թէ աւելի հին է, քան Դաւիթ-Անյաղթողական խմբի թարգմանութիւնները։ — Յունաբան թարգմանութիւնների ու նրանց թարգմանիչների խնդիրը, ինչպէս տեսնում ենք, շատ աւելի բարդ ու խրթին է, քան ենթադրել է մեր մատենագրական աւանդութիւնը։ Այդ տեսակէտից, առանձին ուշադրութեան արժանի է Պորփիւրի Ներածութեան թարգմանութիւնը, որն այդ բարդ հարցերից թւում է ինձ ամենադժուարը։

Առաջին հայեացքից կարող է թուալ, որ այդ թարգմանութիւնը վերագրուելու է նոյն անձին, որը թարգմանել է Դաւիթ մեկնիչի նոյն այդ Ներածութեան վերլուծութիւնը։ Վերլուծութեան թարգմանը Ներածութեան բնագրի բոլոր մեկնելի հատուածները բառացի ու գրեթէ անփոփոխ քաղել է հենց այդ թարգմանութիւնից, եւ այն վերջինների յունաբան բառապաշարը, բնականաբար, ազդել է եւ Վերլուծութեան լեզուի վրայ։ Հնագոյն ձեռագրերում

այս երկու թարգմանութիւնները գտնւում են իրար կից՝ նախ՝ Ներածութեան բնագիրը եւ ապա՝ Դաւիթ մեկնիչի վերլուծութիւնը։ Այս բոլոր նշանները, միասին առնուած, տպաւորութիւն են ստեղծում, իբր նրանք միեւնոյն թարգմանչի գործ են։ Սակայն այս շտապ ու դիւրին ենթադրութեան դէմ ծագում են մի շարք ծանրակշիռ կասկածներ, երբ դիմում ենք նրանց յունաբան լեզուի ու քերականութեան մանրախոյզ ու մանրամասն քննութեան։ Ուսումնասիրութեան ընթացքում երեւան են գալիս սրանց յունաբան բառամթերքի ու քերականական առանձնայատկութիւնների մէջ լեզուա-քերականական բնորոշ խոտորումներ ու տարաձայնութիւններ, որոնք հազիւ թէ որեւէ այլ կերպ բացատրուեն, քան նրանց թարգմանման ժամանակի ու թարգմանների տարբերութեամբ։ Ներքեւ առաջ եմ բերում լեզուա-քերականական այդ շեղումներից մի շարք օրինակներ, որոնք յատուկ են Պորփիւրի Ներածութեան թարգմանութեանը։

1. Ուշադրութեան արժանի են, ամէնից առաջ, Պորփիւրի Ներածութեան թարգմանութեան մէջ յունաբան այն առանձնայատուկ բառերը, որոնք, տարբերուելով Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի միեւնոյն նշանակութիւնն ունեցող բառերից, համապատասխանում են, մեծ մասամբ, նախկին հնագոյն թարգմանութիւնների ուրոյն բառապաշարին։ Այդ կարգի բառերից են. — ὑπερβεβηκὸς γένος վերանցեալ սեռ

Ներ. 231, 4, 232, 14, *իսկ գերազանցեալ սեռ* Դ.Պորփ. 284, 26 եւն, 289, (=DPorph. 131, 13 եւն, 137, 9), *վերանցեալ ունի* Տիմ. Հակ, 86 21։ Բ. *ὑποβεβηκὸς εἶδος վայրանցեալ տեսակ* Ներ. 231, 6, *իսկ ի ներքոյ տեսակ* Դ.Պորփ. 295, 19, 296, 7 (=DPorph. 147, 10, 148, 5), Տիմ. Հակ. *ունի «զի վայրանցեալն ի ստորագոյն մասունս երկրի ինքն է եւ վերանցեալն գեր զամենայն երկինս»* 176, 28–30, *վայրանցութիւն* 177, 34[1]. Գ. *σχέσις կալումն* Ներ. 228, 7, *բաղաղանութիւն* Դ.Պորփ. 273, 35, 295, 26 եւն (=DPorph. 111, 31. 32, 147, 15 եւն), Սահմ. 196, 11, 197, 12, (=DProl. 60, 27, 61, 20), *սակայն կալումն* Դ.Պորփ. 331, 18, *կալք* Թր. 32, 7, *σχετικῶς ըստ կալման* Էլ. 84, 17. 18, 101, 23. 28 (=El. 167, 3. 5, 177, 16. 19). Դ. *περιληπτικόν բագձաձական* Ներ. 233, 17, *բակձաձական* Թր. 18, 4, *բակձաձելով* Խրեն. Ընդ. Հերձ. 168, 5. Ե. *τὸ ἄνω, τὸ κάτω վերին, վայրին* Ներ. 233, 22. 35, *բայց վերին, ներքին* Էլ. 135, 8 եւն (=Էլ. 197, 15), *πρὸς τὰ ἄνω, πρὸς τὰ κάτω առ վերագոյնն, առ ստորնագոյնն*

---

[1] Վայր նախադրութեան գործածութիւնը սովորական է Տիմոթէոսի Հակաճառութեան թարգմանութեան մէջ, օրինակ՝ վայրաբուսեալ 143, 17, վայրանկեալ 176, 16, վայրկեալ 213, 17, վայրերթեալ 311, 21, վայրասուեալ 304, 12, վայրաբերեմ 198, 27, վայրիջութիւն 9, 20, 132, 23 եւն. Միւս թարգմանութիւններում վայր նախադրութեան գործածութիւնը հազուադէպ է, տե՛ս՝ վայրաբերութիւն Պիտ. 424, 8, վայրաբերեալ Պիտ. 517, 20, վայրիջութիւն Մեկն. ի Վերլ. 588, 16, «վերանկնել կամ վայրանկնել» Յպէր. 513, 20։

ԴՊորփ. 295, 25. 30, 296, 1 (= DPorph. 147, 16. 17. 18). Ձ. ἀναγκαῖος *հարկաւոր* Ներ. 227, 3, *իսկ կարեւոր* ԴՊորփ. 267, ὄντος ἀναγκαίου *ելոյր հարկաւորի* Ներ. 227, 3, *գոլով կարեւոր* ԴՊորփ. 267, 7[1]. Է. παράστασις *յանդիմանակացութիւն* Ներ. 250, 23, *իսկ* παρίστημι *յարկացուցեմ* ԴՊորփ. 309, 16, Էլ. 39, 2, *նաեւ* Թր. 22, 14. Ը. παράδοσις *ընձեռութիւն* Ներ. 227, 9, *գործ է ածուած, գլխաւորապէս, առաջին եւ երկրորդ շրջանի յունաբան թարգմանութիւններում՝* Փիլ. Լին. էջ 412, Փիլ. Էլ. 444, Իրեն. *ընդդէմ* Հերձ. 37, *ընձեռեմ* Պիտ. 341, Ար. Սա. 364, ԾՍա. 411, ԾՊէր. 522, Տիմ. Հակ. 236, 237, *իսկ* παραδίδωμι *յարատրեմ* Սահմ. 135, 23 (= DProl. 11, 5), Էլ. 71, 3 (= El. 153, 10), *աւանդեմ, աւանդութիւն* Էլ. 103. 120 (= El. 178, 188). Թ. ἡμίονος *իշակէս* Ներ. 246, 20. 23, *իսկ ջիսէշ* Սահմ. 140, 36 (= Prol. 14, 36). Ժ. τέμνω, διαιρέω, τομή, τμῆμα, διαίρεσις Ներ. *կտորեմ* 231, 29, 236, 35, 241, 22, *կտորումն* 233, 20, διαιρεθῆναι *կտորիլ* Թր. 21, 14, *իսկ հատանեմ, հատած, հատումն, բաժանումն եւն* Դաւիթ-

---

[1] Ներածութեան մէջ «ելոյր հարկաւորի» թարգմանութիւնը, ըստ երեւոյթին, խորթ է թուացել Դաւիթ Վերլուծութեան թարգմանչին. «Հարկաւոր» բառի փոխարէն նա գերադասել է գործածել «կարեւոր» բառը. իսկ «եղ» բայի փոխարէն՝ «գոլ» ԴՊորփ. 267։ Ուշադրութեան արժանի է նաեւ հետեւեալ դարձուածքը՝ «կարեւորապէս որ ընդ մէջն կայ՝ վախճանի, այսինքն հարկաւորապէս» ԴՊորփ. 267, 27—28.

Ոլիմպիոդորոսի խմբի երկերում. Յն. εἷς, μία, ἕν մու՝ Նեմ. 233, 16, գործ է ածուած յունաբան առաջին եւ երկրորդ շերտերի թարգմանութիւններում՝ Թր. 8, 15, 21, 29, Փիլ. Լին. 332, Պիտ. 398, 501, 503, 527, Տիմ. Հակաճ. 65, 68, 176, 201 եւն յաճախ, Ար. Պէր. 464, 468, մում 468, 17, մոյր 476, 32 եւն, Յպէր. 533, 547 եւն, իսկ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերում այլեւս չի հանդիպում։

2. Լեզուական այս նկատառումներից անկախ աւելի եւս մեծ կարեւորութիւն ունեն Ներածութեան թարգմանութեան քերականական առանձնայատկութիւնները, որոնք ունեն հնութեան պարզ նշաններ, բնորոշ են, մասամբ, միայն այս թարգմանութեան համար եւ գործածական չեն այլեւս Դաւթի Վերլուծութեան մէջ, ինչպէս եւ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի միւս թարգմանութիւններում։

ա. Այդ տեսակէտից ուշագրութեան արժանի է, ամէնից առաջ, սեռական հոլովի վերջաւորութեան ր տառը, որ գործ է ածուած միայն Ներածութեան բնագրում. օրինակ՝ ելոյր էջ 227, կոչեցելոյր, սեռոյր, ասացելոյր 228, Սոկրատոյր, Պղատոնոյր, մարդոյր, միայնոյր, մարդոցրն 229, եւ նոյն վերջաւորութիւնները կրկնուում են շարունակ ամբողջ երկում։ Դաւթի Վերլուծութեան թարգմանութեան մէջ այդ վերջաւորութիւնները հանդիպում են միայն տեղ տեղ՝ Ներածութեան բնագրից քաղուած հա-

տուածներում, բայց ոչ բուն մեկնութեան մէջ.
չկան նրանք եւ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի
միւս թարգմանութիւններում։ Թէեւ յունաբան
երկերի հրատարակութիւնները դեռեւս գիտա-
կան բնոյթ չունեն եւ համեմատութեան չեն
առնուած ձեռագրական բոլոր տարբեր ընթեր-
ցուածները, բայց որքան ես ծանօթ եմ հնագոյն
ձեռագրերին՝ նրանց մէջ եւս սեռականի ար-
տասովոր այդ վերջաւորութիւնները գտնւում են
միմիայն Ներածութեան բնագրում։ Դժուար է
ենթադրել, որ դրանք խմբագրուած ու փո-
փոխուած լինեն յետագայ ժամանակներում
յատկապէս Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի եր-
կերում, ուստի հաւանական է թւում ինձ,
որ վերոյիշեալ թարգմանութիւնները համա-
րուելու են տարբեր թարգմանիչների աշխատու-
թիւն։

է. Ներածութեան թարգմանութեանը յա-
տուկ է նաեւ հետեւեալ տառացի դարձուածքը
ἐν τῷ τί ἐστι թարգմանուած է “ի ներում
զինչէն” եւ ἐν τῷ ὁποῖόν τί ἐστι “ի ներում
որպիսիինչէն” Ներ. 229, 230, 244 եւն.։
Դաւթի Վերլուծութեան թարգմանը, քաղելով
օտարոտի այդ յունաբանութիւնները Ներածու-
թեան բնագրից, ինքը երբեմն փոփոխում է
այդ խրթնաբանութիւնները եւ նոյն եզրները
թարգմանում՝ “ի ներ զինչէումն” եւ “ի ներ
որպիսիինչէումն” ԴՊորփ. 256, 288 եւն., իսկ
Սահմանաց թարգմանն աւելի եւս հայացուած
ձեւով ունի “ի զինչէումն” Սահմ. 122, նաեւ

Գ. Պորփ. 356։ “ներում„ եւ “ի ներում„ յունաբանութիւնները միւս թարգմանութիւններից եւ ոչ մէկում գործածական չեն. մի անգամ միայն Արիստոտէլի “Ցաղագս մեկնութեան„ բնագրում պատահում է “ներում բարւոյն„ ասացուածքը, որ թւում է աղճատուած կամ կասկածելի (տե՛ս Fr. C. Conybeare, Anecdota Oxoniensia, էջ 50։

Է. Ինչպէս վերեւ յիշեցի (§ 44, 8), Ներածութեան թարգմանը յունարէն ἐν նախդիրի դիմաց երկու անգամ միայն գործ է ածել նաեւ “ն„ նախդիրը, որ սովորական էր յունաբան առաջին եւ երկրորդ շերտերի թարգմանութիւններում։ Թւում է, որ Ներածութեան բնագիրը, ունենալով քերականական իւրայատուկ կերտուածներ, զերծ չէ եղել հնագոյն թարգմանութիւնների անմիջական ազդեցութիւնից՝ ոչ միայն իր բառապաշարի (§ 47, 1), այլ եւ քերականութեան մէջ։ Նրանց փոխադարձ առընչութեան յատկանիշներ կարող են համարուել նաեւ արուեստական յունաբանութիւնների ու քերականական անհարազատ ձեւերի հետեւեալ օրինակները. 1. οἱ κατὰ μέρος ըստմասնեայքն Ներ. 233, 12, 233, 14, 245, 29, զըստմասնէցն Ներ. 240, 13. 14, ի մասնէքն Իրեն. Ընդ. Հերձ. 31, միըստմիօջէց Ներ. 244, 30, Փիլ. Լին. 74, ըստ միօջէքն Տիմ. Հակ. 182, 5, ըստ միօջէցն Տիմ. 6, 3, ըստ բոլորէցն Ար. Պեր. 466, 24, զայլմէց Ար. Պեր. 463, 18. 22 եւն. 2. οἱ καθ᾽ ἕκαστον ըստ իւ-

ըստքանչիւրքն Ներ. 233, 13, Ար. Ստոր. 394, իսկ իւրաքանչիւրն ԴՊորփ. 290, 11. 12 (= DPorph. 138, 26. 27). 3. τὰ ὑπάλληλα ընդմիմեամբքն Ներ. 232, 18. 22, 234, 3. 4, ԴՊորփ. 294, 37, 297, 27, ԷԼ. 77, 28, 79, Ար. Ստ. 361, 7. 4. καθ' αὑτὸ ըստինքեան Ներ. 235, 35. 36, զըստնքեանն Տիմ. Հակ. 114, 1, զըստինքեանն Տիմ. Հակ. 164, 11, ԷԼ. 81. 5. մասինցն, առաջինցն Ներ. 234, 19, 232, 37, “երկնայինց եւ աստուածայնոց” Փիլ. Լին, էջ 416, անձինցն Ար. Պէր. 461 եւն։

3. Ներածութեան հայերէն բնագրի լեզուա-քերականական հետազօտութիւնն անհրաժեշտ է աւելի եւս խորացնել, համեմատելով հայերէնը յունարէն բնագրի հետ[1]։ Բայց, կարծում եմ, որ վերոյիշեալ դիտողութիւններն անգամ հիմք են տալիս ենթադրելու, որ այս գրուածքը թարգմանուած պիտի լինի Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերից առաջ, հաւանաբար, յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւնների ժամանակաշրջանում։ Դաւթի Վերլուծութեան թարգմանը ոչ թէ ինքն է թարգմանել այդ բնագիրը, այլ, ըստ երեւոյթին, օգտուել է արդէն գոյութիւն ունեցող նախնագոյն թարգմանութիւնից։ Նոյնը տեղի է ունեցել եւ Թրակացու քերականութեան հետ, որի

[1] Յունարէն հրատարակութիւնն իրերիս հետ թալանուեց Բագուի աւերածութիւնների ժամանակ, եւ այժմ, դժբախտաբար, չունէի ձեռքիս խնդրի վերջնական լուսաբանութեան համար։

թարգմանութիւնը յունաբան առաջին շրջանի աշխատութիւն է, մինչդեռ Դաւիթ քերականի մեկնութիւնը, ինչպէս կը տեսնենք, աւելի ուշ ժամանակի եւ յունաբան այլ շերտի արտադրութիւն է։

§ 48. **Արիստոտէլի “Պատմութիւն յաղագս աշխարհի„ երկասիրութեան հայերէն թարգմանութեան ժամանակը։** — Արիստոտէլին վերագրուած *Περὶ κόσμου* եւ *Περὶ ἀρετῶν* գրուածքների թարգմանութիւնները հայերէնում ունեն մի փոքր տարբեր վերնագրեր՝ “Արիստոտէլի իմաստասիրի թուղթ առ Աղեքսանդրոս թագաւոր՝ պատմութիւն յաղագս աշխարհի“ եւ “Արիստոտէլի յաղագս առաքինութեանց առ Աղեքսանդրոս թագաւոր„։

Այս թարգմանութիւնները տպագրուած են Վենետիկում Դաւիթ Անյաղթի մատենագրութեանց շարքում (Վենետիկ 1833, էջ 603—628 եւ 629—635), սակայն առանց որ եւ է բաւաբար բացատրութեան, ըստ երեւոյթին, թիւրիմացաբար։ Որքան ինձ յայտնի է, դրանց թարգմանչի մասին չկայ եւ ոչ մի վկայութիւն Հայոց մատենագրական աւանդութեան մէջ, ոչ էլ որ եւ է ակնարկ հնագոյն ձեռագիրների վերնագրերի մէջ։ Հրատարակիչների այս սխալը ունեցել է անսպասելի հետեւանքներ։ Համակերպուելով հրատարակիչներին, Դաւիթ Անյաղթի խնդրով զբաղուող բանասէրները եւս համարել են այդ թարգմանութիւնները, Արիստոտէլի երկերի միւս թարգմանութիւնների ու

մեկնութիւնների հետ միասին, միեւնոյն հեղինակի ու միեւնոյն մեկնիչի աշխատութիւն[1]։ Սակայն հարեւանցի իսկ ծանօթութիւնն այս թարգմանութիւնների հետ պէտք է համոզէր բանասէրներին, որ սրանք, թէեւ յունաբան, բայց ընթերցանութեան մատչելի թարգմանութիւններ են, ազատ լեզուական ու քերականական այն բոլոր խժդժութիւններից, որ յատուկ են, գլխաւորապէս, Արիստոտէլի միւս բնագրերի թարգմանութիւններին։ Լեզուական այդ տարբերութիւնը նկատած են եղել Հայկազեան բառգրքի աշխատակիցները, որոնք նոյն թարգմանութիւնների լեզուն համարել են՝ “ըստ բաւականին հայկաբան եւ ընտիր. իսկ Ստորոգութիւնքն, Պերիարմենիասն, եւ որ ի սոցին սակի, են անպէտ եւ անշուք հելլենաբանութիւն նիւթական„ (Հատոր առաջին, էջ 10)։ Պրոֆ. Ֆ. Կոնիբիրը, որ համեմատել է հայերէն թարգմանութիւններն Արիստոտէլի յունարէն բնագրերի հետ, ուշադրութեան առնելով սրանց ուրոյն ոճը, բաժանում է այս գրուածքները Դաւիթ Անյաղթին վերագրուած երկերի խմբից ու նրանց թարգմանման ժամանակը յետ տանում մինչեւ ութերորդ կամ իններորդ դար (Anecd. Oxon., էջ XXXII)։ Վերեւ մենք տեսանք, որ մատենագրական հայ աւանդութիւնը մեծ շփոթութիւնների տեղիք է տուել, վերագրելով յունաբան հնա-

---

[1] Տես Գալուստ Տէր-Մկրտչեան, Անանիա Շիրակացի, Վաղարշապատ 1896, էջ 35։

դոյն երկերի մեծագոյն մասը Դաւիթ Անյաղթ Հայ փիլիսոփային, մինչդեռ այդ գրուածքները տարբեր թարգմանիչների աշխատութիւն են եւ թարգմանուած են զանազան ժամանակաշրջաններում, սկսած, հաւանաբար, հինգերորդ դարի վերջերից եւ կամ վեցերորդ դարի սկզբներից։ Այս եզրակացութեան յանգելուց յետոյ՝ պէտք է այսուհետեւ անտես առնել առասպելեալ աւանդութիւնը Դաւիթ Անյաղթի մասին, եւ յունաբան ամէն մի գրուածքի թարգմանչի ու թարգմանման ժամանակաշրջանի խնդիրը որոշել համաձայն այդ նոր եզրակացութեան, հիմնուելով լեզուական ու մատենագրական տարբեր կարգի փաստերի վրայ։ Այդ տեսակէտից, Ցաղագս աշխարհի թարգմանութիւնը, ազատ լինելով յունաբան միւս թարգմանութիւնների լեզուա-քերականական խրթին անհարթութիւններից, թէեւ համեմատաբար քիչ նիւթ է տալիս բաղդատութիւնների համար, սակայն, այնուամենայնիւ, թւում է ինձ, որ նրա թարգմանման ժամանակը մօտաւորապէս որոշւում է։ Ինչպէս արդէն գիտենք, Գալուստ Տէր-Մկրտչեանը վերլուծելով “Անանիա Շիրակացի„ ուսումնասիրութեանը մէջ ցոյց է տուել, որ այս թարգմանութիւնը ծառայել է Շիրակացուն, որպէս գլխաւոր աղբիւր “Ցաղագս շրջագայութեան երկնից„ աշխատութեան համար (տե՛ս վերեւ § 36)։ Պարզ է ուրեմն, որ այս գրուածքը թարգմանուած պիտի լինի եօթերորդ կամ վեցերորդ դարում, բայց ոչ աւելի ուշ։ Թարգմանութիւնը

չի կարող լինել Շիրակացունը, անհաւանական է նաեւ որ լինի նրան ժամանակակից, որովհետեւ, ինչպէս ճիշտ դիտել է Գալուստ Տէր-Մկրտչեանը. Անանիա Շիրակացին անհրաժեշտ է համարել փոփոխել կամ բաց թողնել նրա յունաբան դժուարիմաց բառերը եւ աշխատել է պատմել քաղուածքները հայերէն աւելի եւս մատչելի լեզուով։ Ուրեմն՝ շատ հաւանական է, որ այդ թարգմանութիւնը պէտք է լինէր նախնագոյն ժամանակաշրջանի աշխատութիւն։ Ճիշտ այդ եզրակացութիւնը ստացւում է նաեւ նրա լեզուական առանձնայատկութիւնների քննութեամբ։ Առաջ եմ բերում լեզուական իմ դիտողութիւններից ամենակարեւորները.

1. Ցաղագս աշխարհի թարգմանութիւնն ունի գործածած Թրկացու քերականութեան յատուկ բառերը, ինչպէս՝ —. ἐνεστώς ներկայ Ար. Աշխ. 628, 14, Թր. 22, 23, բ. παρεληλυθώς անցեալ Ար. Աշխ. 628, 13, Թր. 23, 26, գ. μέλλων ապառնի Ար. Աշխ. 628, 14, Թր. 23, 26՝ 24, 5 եւն, դ. σύνδεσμος շաղկապ Թր. 12, 16՝ 35, Ար. Աշխ. 622, 6, շաղկապումն Ար. Աշխ. 624, 27, շաղկապեմ Ար. Աշխ. 624, 31, ե. ποιητής քերդող Թր. 1, 5, 2, 29, Ար. Աշխ. քերթող 619, 25, 627, 2. 17, զ. γραμματική քերականութիւն Ար. Աշխ. 617, 1, Թր. 1, է. ἐμμελῶς ներդաշնակապէս Ար. Աշխ. 622, 35, 626, 34, Թր. 2, 25։ Ուրեմն՝ նրա թարգմանութեան ժամանակը պէտք է դնել Թրակացու քերականութիւնից յետոյ։

2. Նոյն թարգմանութիւնն ունի այն բա-

ռերն ու նախադրութիւնները, որոնք, ինչպէս տեսանք, գործ են ածուել առաջին անգամ երկրորդ շերտի յունաբան թարգմանութիւններում (տե՛ս վերեւ § 40բ, § 42դ)։ Այդ կարգի բառերից են. ա. տարբերութիւն διαφορά Ար. Աշխ. 613, 36, ԱՍտ. 361, 8, ՑՊէտ. 496, 16, Տիմ. Հակ. 262, 31. բ. մակացու ἐπιστήμων Ար. Աշխ. 604, 13, ՑՍտ. 422, 12, մակացութիւն Ար. Ստ. 379, 4, ՑՍտ. 418, 7, Տիմ. Հակ. 105, 27. գ. ներհակ ἐνάντιος Ար. Աշխ. 611, 38, 616, 13. 19. 25, 617, 9. 17, Ար. Ստ. 369, 21, ՑՍտ. 413, 18, Ար. Պէր. 475, 22, ՑՊէր. 528, Տիմ. Հակ. 160, 5. դ. հակակայիլ ἀντικεῖσθαι Ար. Աշխ. 619, 1, Ար. Ստ. 396, 4, ՑՍտ. 425, 16, Ար. Պէր. 474, 12 են, հակակայութիւն Ար. Աշխ. 617, 22. ե. արտօնութիւն ἐξοχή Ար. Աշխ. 621, 10, արտօնող Ար. Ստ. 373, 20 եւն։

Այս բառերի գործածութիւնը Ցաղագս աշխարհի թարգմանութեան մէջ պարզ մի նշան է ըստ իս, որ սրա թարգմանման ժամանակը չի կարելի իջեցնել ցած յունաբան թարգմանութիւնների առաջին շրջանը։

3. Ուշադրութեան արժանի են նաեւ հետեւեալ սակաւագիւտ բառերը. ա. դերհիւսիսական ἀνταρκτικός Ար. Աշխ. 605, 17, ἀντι նախադրութեան այս թարգմանութիւնն առանձնայատուկ է հնագոյն թարգմանութիւններին հետեւեալ բառերում՝ ἀντωνυμία դերանուն Թր. 12, 15, 30, 1, դերանունութիւն Թր. 27, 28, 1, Փիլ. Լին. 70 (Թրակացու քերականութեան ազ-

դեցութեամբ նաեւ Ար. Պէր. 489, 11), ἀνταποδοτικόν Թր. 18, 4, 20, 18, ἀντίχριστος դերաքրիստոս Տիմ. Հակ. 37, 40, 41 եւն. ք. ζώδιον կենդանատեսակ Ար. Աշխ. 605, 27, նաեւ Շիր., Մամբ., Սահ. կթ. արմաւ., կենդանակերպ Շիր., Տիմ., իսկ կենդանակ Փիլ. եւ. 521, կենդակ Փիլ. եւ. 520, Պիտ. 489, 16, Փիլ. քհ., ք. παθητός, παθητικός Ար. Աշխ. կրական 606, 31, Ար. Ստ. 388, 6, ԵՍտ. 410, 11, կրաւորական Թր. 47 եւն.

Վերոյիշեալ բոլոր դիտողութիւններն ի մի ամփոփելով, կարծում եմ, որ Յաղագս աշխարհի թարգմանութեան ժամանակը պէտք է դնել վեցերորդ դարի երկրորդ կիսում կամ եօթերորդ դարի սկիզբներում՝ Տիմոթէոսի Հակաճառութեան եւ յամբղիքեան խմբի թարգմանութիւնների ժամանակաշրջանից սկսած մինչեւ Անանիա Շիրակացու ժամանակը։ Այս եզրակացութեամբ յիշեալ թարգմանութեան ժամանակի վերաբերմամբ ստացւում են որոշ ու հաստատուն սահմաններ, մինչդեռ առաջ այդ սահմանները մնում էին այնքան անորոշ, որ պրոֆ. Գ. Կոնիբիրը հնարաւոր էր համարել յետ տանել այդ թարգմանութիւնը մինչեւ ութերորդ կամ անգամ իններորդ դար։

§ 49. Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւնների թարգմանութեան մօտաւոր ժամանակաշրջանը։ — Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւնները, թէեւ որոշ չափով նման են իրար յունաբան իրանց բառապաշարով, սակայն, ինչ-

պէս գիտենք, չեն կարող բոլորն էլ միասին լինել միեւնոյն թարգմանչի աշխատութիւն։ Ուրեմն՝ նրանց թարգմանման ժամանակը որոշելիս՝ պէտք է աչքի առաջ ունենալ, որ կարող են նրանք եւս թարգմանուած լինել տարբեր ժամանակներում։ Մինչ այժմ արուած գետողութիւններից սրանց թարգմանման ժամանակի նկատմամբ պարզուեց միայն հետեւեալը՝ որ մեկնութիւնների այս ամբողջ խումբը, առանց բացառութեան, թարգմանուած պիտի լինի յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններից յետոյ. ուրեմն՝ ոչ աւելի վաղ, քան վեցերորդ դարի վերջերը։ Բայց մինչեւ որ ժամանակը կամ դարաշրջանը պէտք է տանել առանձին թարգմանութիւնները, այդ խնդիրը մնում է մութ ու անորոշ։ Հայ բանասէրներից ոմանք աշխատել են պարզաբանել այս հարցը, որոնելով սոյն թարգմանութիւններից առնուած քաղուածքներ կամ որոշ հետքեր եօթներորդ կամ ութերորդ դարերի մատենագրական երկերում։ Սակայն ստացուած արդիւնքները դեռ եւս գոհացուցիչ չեն։

Գալուստ Տէր-Մկրտչեանը, իր “Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս„ աշխատութեան մէջ (Վաղարշապատ 1902) մատնացոյց էր արել, որ “Հարցմունք յաղագս մարմնաւորութեանն Տեառն զանազանք՝ Վաչագանի Աղուանից իշխանի ըստ Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի եւ իմաստասիրի„ գրուածքը ծայրէ ծայր ներշնչուած է արիստոտելեան փիլիսոփայութեամբ։ Բաղդատութիւններից պարզ երեւում է, որ այս գրուածքի հեղինակին

ծանօթ են եղել յատկապէս Դաւթի Սահմանաց գիրքը եւ Պորփիւրի Վերլուծութիւնը։ Սակայն Վաչագանի Հարցումները, ինչպէս երեւում է Գալուստ Տէր-Մկրտչեանի ուսումնասիրութիւնից ոչ մի դէպքում չեն կարող վերագրուել Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսին, այլ, հաւանաբար, ծագած պիտի լինեն հայ եւ աղուան կրօնական վէճերի ժամանակ 8—10րդ դարում։ Սահմանաց եւ Պորփիւրի Վերլուծութեան ակներեւ հետքերը Հարցումներում՝ նրանց թարգմանման ժամանակաշրջանի վերաբերմամբ՝ շատ քիչ բան են աւելացնում մեր գիտցածին։ Արդէն իսկ յայտնի էր, որ Գրիգոր Մագիստրոսի “առ վարդապետն Սարգիս„ գրուած թղթում յիշուած կան եւ Դաւիթ փիլիսոփան եւ Ոլիմպիոդորոսի գրուածքը, որի թարգմանութիւնը նա վերագրել է “թարգմանչացն[1]„։

Էջմիածնայ մատենադարանի թ. 596 ձեռագրում (= Մայր Ցուցակ թ. 582) Անանիա Շիրակացու “Յաղագս հարցման եւ լուծման„ գրուածքը, ինչպէս նկատել է գարձեալ Գալուստ Տէր-Մկրտչեանը[2], ունի հետեւեալ յառաջաբանը, որ գրեթէ բառացի քաղուած է Պորփիւրի Ներածութեան բնագրից.

| Ներած. Պորփ., 227. | Ձեռ. Թ. 596, էջ 185ա. |
| --- | --- |
| “Զամենայն[ն] ասաց ի-մաստուն[ն], թէպէտեւ ան- | “Եղեալ հարկաւորի, Քրի-սաւորիէ, եւ յ՛ա՛ս Արիս- |

¹ Տես Կ. Կոստանեանց, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Աղեքսանդրապոլ 1910, էջ 66։

² Անանիա Շիրակացի, Վաղարշապատ 1896, էջ 11—12։

կաւ ի բազմաց. եթէ զինչ ընդունելութիւնն, զինչ բաղմապատիկ եւ բոլորովին յաղագս բաժանմանց եւ ապացուցից՝ պիտանացու եւ յայլ ոցայցն սեռութեանց. Համառօտ քեզ ընծեռութիւն տանելով՝ փորձեցայց ի ձեռն սակաւուց՝ իբր ներածութեան յեղանակի՝ զառ ծերունեացն ան. ցանելով բանիւ, ի խորագունիցն ի բաց կալ ի խնդրոց եւ պարզագունիցն չափաւորապէն հանդիպելով։ Արդ աստէն իսկ վաղվաղակի յաղագս հարցման եւ լուծման...»

ատէլի ստորագութեանցն վարդապետութիւն, գիտել՝ զինչ սեռ եւ զինչ տարբերութիւն եւ զինչ տեսակ. զինչ յատուկ եւ զինչ պատահումն ի սահմանացն բացատրութիւն, եւ բոլորովին յաղագս բաժանման եւ ապացուցի պիտանացու ի ելոյ ոցայցն սեռութիւն, համառօտ քեզ ընծեռութիւն տանելով՝ փորձեցայց ի ձեռն սակաւուց իբր ներածութեան յեղանակի զառ ծերունեացն անցանել բանիւ, ի խորագունիցն ի բաց կալ ի խնդրոց՝ եւ պարզագունիցն չափաւորապէս հանդիպելով։ Արդ աստէն իսկ վաղվաղակի յաղագս սեռի եւ տեսակի...»

Այս ամբողջ հատուածը չունի սակայն Էջմիածնայ մատենադարանի Գէորգեան ցուցակի թ. 267 ձեռագիրը, որը սկսւում է ուղղակի հարցումներից։ Գալուստ Տէր-Մկրտչեանը վաւերական է համարում՝ այս վերջին ձեռագրի սկզբնաւորութիւնը եւ ենթադրում, որ ո՛չ ինքը Անանիա Շիրակացին, այլ մի ուրիշը՝ Պորփիւրի ներածութեան վերայիշեալ հատուածը կամեցել է յարմարացնել հարցումներին, իբրեւ յառաջաբան։ Լինելով յետագայ ժամանակների յաւելուած, այս քաղուածքը չի կարող, ուրեմն, ներածութեան թարգմանման ժամանակի համար ունենալ որեւէ նշանակութիւն։

Պորփիւրի ներածութեան նոյն հատուածից, թւում է ինձ, որ օգտուած պիտի լինի Դաւիթ Հարքացին դաւանաբանական փոքրիկ իր գրութիւններից մէկում, որը հրատարակել էր “Արարատ„ ամսագրում Գարեգին վրդ. Յովսէփեանը (1906, մարտ, էջ 261—272)։

Այս գրութիւնը, ինչպէս երեւում է նրա վերնագրից, գրուած է Անաստաս կաթողիկոսի (661—666 թ.) հրամանով եւ ունի սկզբում հետեւեալ հատուածը՝ “Բայց նախ արդէն իսկ համառօտ ընձեռութիւն առնելով, զի ոչինչ իմ նախ քան զմիշտ էակն իմացեալ„ եւն (էջ 269)։ Ներածական բնորոշ այս դարձուածքը յիշեցնում է Պորփիւրի ներածութեան յատուկ յառաջաբանը եւ կարծում եմ, որ նմանութիւնը կարող է պատահական չլինել, այլ վերագրուելու է ներածութեան բնագրի ազդեցութեանը։ Եթէ այս ենթադրութիւնն ընդունելի համարուի, այդ դէպքում՝ Պորփիւրի ներածութեան բնագրի ծագման ամենավերջին սահմանը գրուելու է եօթերորդ դարի վաթսնական թուականներին։

Պորփիւրի ներածութիւնը կարող է լինել, ինչպէս տեսանք, յունաբան հնագոյն շրջանի թարգմանութիւն։ Հետեւաբար՝ նրա թարգմանման ժամանակի որոշումը չի պարզում նոյն խնդիրը նաեւ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի մեկնութիւնների նկատմամբ։ Եւ այս վերջին խնդիրը մնում է նորից ուսումնասիրութեան ու լուսաբանութեան կարօտ։

Խոսրովիկ Թարգմանչի երկասիրութիւնները եւս, ինչպէս գիտենք (տե՛ս վերեւ § 35), ունեն արիստոտելեան երկերի ազդեցութեան բազմաթիւ հետքեր։ Այդ ազդեցութիւնը լուսաբանող վերոյիշեալ օրինակներին կարելի է աւելացնել նաեւ հետեւեալ ընդարձակ հատուածը, որ, ըստ երեւոյթին, Խոսրովիկը քաղել է Պորփիւրի Ներածութեան հայերէն բնագրից.

*Խոսրովիկ, էջ 19.*

«Զի բնութիւն պարունակող է պարունակելոյն ի նմանէ եւ ոչ ի նոցանէ պարունակեալ. զի թէ ի բաց բարձցես զյատուկն, հանուրն ոչ լինի բաց բարձեալ, իսկ հանուրն շարաբառնալով, բառնանի ընդ նմին եւ ամէնն» եւն։

*Ներած. Պորփ., 242[1].*

«Իսկ տեսակքն պարունակին եւ ոչ պարունակեն զսեռն. քանզի յոլով սեռն քան զտեսակն է… եւ յառաջագոյնք բնութեամբք սեռքն. եւ շարաբառնան, այլ ոչ շարաբառնին» եւն։

Խոսրովիկի թէ այս եւ թէ միւս հատուածներում պարզ նկատելի են, գլխաւորապէս, Պորփիւրի Ներածութեան ու յամբղիկեան խմբի թարգմանութիւնների ազդեցութեան հետքերը, իսկ ինչ վերաբերում է Դաւիթ-Ալիպիոդորոսի խմբի մեկնութիւններին, նրանց հետքերը Խոսրովիկի երկասիրութիւններում շատ անորոշ են ու վիճելի։

Ինչպէս տեսնում ենք, Դաւիթ-Ալիմպիոդորոսի խմբի թարգմանութիւնների համար դեռ-

---

[1] Համեմատէ նաեւ Ներած. 243, 24—28, 241, 25—32, 246, 11—12. Դ-Պորփ. 299, 3—19։

եւս չի յաջողուել գտնել հաստատուն մի կռուան, որով կարելի լինէր որոշել նրանց ծագման ճշգրիտ ժամանակաշրջանը։ Առ այժմ պարզ է միայն այսքանը, որ նրանք թարգմանուած են ոչ աւելի վաղ, քան վեցերորդ դարի վերջերում, բայց, անկասկած, Վաչագանի հարցումներից առաջ, որոնք, Գալուստ Տէր-Մկրտչեանի կարծիքով, յօրինուած պիտի լինեն 8—10րդ դարում։ Այս սահմանները շատ են ընդարձակ ու անորոշ։ Սակայն մի խիստ կարեւոր հանգամանք, որ սերտ առընչութիւն ունի մեկնութիւնների այս խմբի ծագման հետ, թւում է ինձ, որ մօտաւոր կերպով որոշում է նրանց թարգմանման ժամանակաշրջանը։

§ 50. Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի մեկնութիւնները թարգմանուած են, ըստ երեւոյթին, երկաբնակ հայերէն միջավայրում եւ, ամենայն հաւանականութեամբ, ութերորդ դարից առաջ։ — Վերեւ թռուցիկ կերպով շօշափուած էր խիստ կարեւոր մի խնդիր (տե՛ս § 42 ե), որ յամբղիքեան խմբի իմաստասիրական երկերը թարգմանուած պիտի լինեն Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան թարգմանման ժամանակաշրջանում, հաւանաբար, միաբնակ կուսակցութեան միջավայրում։ Իսկ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի մեկնութիւնները, լինելով իմաստասիրական մի այլ դպրոցի եւ ուրիշ հեղինակների գրուածքներ, կարող են թարգմանուած լինել երկաբնակ կուսակցութեան միջավայրում։ Այս խնդրի վրայ արժէ մի փոքր երկար կանգ առնել, որովհետեւ, եթէ այս

ենթադրութիւնը հաստատուի, մատենագրական մի շարք հարցերի համար կը բացուեն բոլորովին նոր հեռանկարներ։ Կ՚որոշուի մօտաւոր կերպով Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի թարգմանութիւնների դարաշրջանը, Դաւիթ Անյաղթի մասին յօրինուած առասպելական պատմութիւնը կը ստանայ բոլորովին նոր լուսաբանութիւն, վերջապէս՝ այս նոր ենթադրութիւնը կարող է որեւէ կերպ առընչութիւն ունենալ եւ Խորենացու խնդրի հետ։

Արդ՝ կա՞յ արդեօք Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերում որեւէ մի նշան, որով հաստատուէր նրանց ծագումը երկաբնակ հայերի միջավայրում։ Ինձ թւում է, որ այդպիսի մի նշան կարող է համարուել Դաւթին վերագրուած “Առածք հինգ„ գրութիւնը (տե՛ս Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք, Վենետիկ 1833, էջ 217—222)։ Այս գրութիւնը, թէ իմաստասիրական գաղափարների իր սահմանումներով եւ թէ յունաբան ամբողջ իր բառապաշարով, այնքան մօտ է ու համապատասխան Դաւթի Սահմանք իմաստասիրութեան եւ Վերլուծութիւն Պորփիւրի թարգմանութիւններին, որ ո՛չ մի կասկած չի կարող լինել, որ նա խմբակից է այս վերջին թարգմանութիւններին։ Կարող է միայն հարց լինել, թէ արդեօ՞ք սրա հեղինակը նորպղատոնական Դաւիթ մեկնիչն է, թէ մի այլ հեղինակ։ Բայց այդ հարցը որեւէ նշանակութիւն չունի այն խնդրի նկատմամբ, որ այժմ քննուելու է։

Վերոյիշեալ գրութիւնը նպատակ ունի ըստ իս բացատրելու արիստոտելեան իմաստասիրութեան տեսակէտից "բնութեանց" այն չարաբաստիկ խնդիրը, որ մոլեռանդ թշնամութեան եւ քրիստոնէական եկեղեցու պառակտման գլխաւոր պատճառը դառաւ։ Առաջին երեք առածները, ըստ երեւոյթին, նախապատրաստական տեսութիւններ են, որպէս զի հասկանալի լինեն վերջին գլուխները, որոնց վերնագրերից իսկ պարզ երեւում է գրութեան բուն նպատակը։ Այս վերջին, չորրորդ ու հինգերորդ գլուխների վերնագրերն են. "Զի՞նչ մի իցէ գոյացութեան եւ բնութեանն, եւ ո՞յք այնոքիկ, որք միոյ ասին գոյացութեան եւ բնութեան" (էջ 220—221) եւ "Թէ կարող գո՞յ իւրաքանչիւր ոք յանհատից մի բնութիւն գոլ եւ ասիլ" (էջ 222)։

Չորրորդ գլխում՝ մի բնութիւն է վերագրւում ընդհանուր բնաւորական սահմանին, թէ այն դէպքում՝ երբ այս վերջինը պարզ իրի սահման է, եւ թէ այն՝ երբ նա զօրութեամբ շարադրական է։ Այս բացատրութիւնը, որ յատուկ է արիստոտելեան իմաստասիրութեան, "բնութեանց" դաւանաբանական վէճերի տեսակէտից այնքան էլ կարեւոր չէ։ Սակայն նոյն գրութեան վերջին գլուխը վերաբերում է ամբողջովին "բնութեանց" կրօնադաւանական բուն հարցին։ Այդ չափազանց նշանաւոր հատուածը, որ ուշադրութեան չէ առնուել հայ բանասէրների կողմից, անհրաժեշտ եմ համարում առաջ բերել առանց կրճատումների.

“Թէ կարող գո՞յ իւրաքանչիւր ոք յանհատից մի բնութիւն գոլ եւ ասիլ.

Արդ անհատիցն ըստ նմանութեան միաբանութեան, ոմանք պարզականք բնաւորեցան գոլ, եւ ոմանք շարադրականք։ Արդ պարզականացն անհատից յապաղումն կալցի բանս, զի ոչ է առաջիկայիս դիտաւորութեան. իսկ վասն շարադրականացն ասասցուք, եթէ ոչ արարողք գոն մի բնութիւն ասիլ եւ գոլ։ Նախ զի մի բնութիւն ասացաք զընդհանուր բնաւորական սահման. իսկ անհատն՝ ոչ ընդհանուր, այլ մասնական։

Երկրորդ՝ ո՞չ ապաքէն ցուցաք յառաջագոյն զանհատսն միոյ ասիլ բնութեան հանդերձ այլովք անհատիւք, նոյն եւ մի գոլ ասի բնութիւն։ Իսկ երրորդ զայն ասասցուք զամենայն շարադրական մի բնութիւն, նոյն արարող գոլ բնաւորիլ. իսկ զանհատն ոչ նոյն արարող, այլ նոյն եղեալ հանդերձ այլովք անհատիւք. արդ զիա՞րդ ասի գոլ մի բնութիւն։ Չորրորդ՝ առ այսոքիւք ամենայն շարադրական մի բնութիւն զօրութեամբ ունել բնաւորեցաւ զանազանութիւնս տեսակաց, իսկ անհատն արդեամբք, որպէս Պաւղոս անհատ գոլով զհոգին եւ զմարմին։ Հինգերորդ՝ ամենայն մի բնութիւն տեսակ բնաւորեցաւ գոլ, եւ ըստ յոլովից բերիլ թուով զանազանեցելոց. իսկ անհատն զիա՞րդ արդեօք լինիցի տեսակ, եւ ըստ յոլովից բերիցի։ Արդ ոչ գոյ կարող մի բնութիւն ասիլ եւ գոլ. զի ասացաւ իսկ վաղ ուրեմն, թէ որք միանգամ ոչ ունին զմի սահման, այնպիսիքն եւ ոչ նոյնք ասին գոլ երբէք ուրեք„ (էջ 222)։

Բովանդակութիւնն այս հատուածի, կարծում եմ, որ շատ պարզ է։ Մի բնութիւն կարելի է ասել ընդհանուր գաղափարների վերաբերմամբ՝ սեռի, տեսակի, նաեւ բնաւորական սահմանի, երբ նա շաքադրական է զօրութեամբ, ինչպէս մարդ ընդհանուր գաղափարը. բայց անհատների նկատմամբ՝ Պաւղոս, Պետրոս եւն, մի բնութիւն չի կարելի ասել։

Նոյն այս խնդիրը քննութեան է առնուած ութերորդ դարում հակաքաղկեդոնական հայ իմաստասէրների գրուածքներում, սակայն եզրակացութիւնն այնտեղ ուրիշ է։ Օրինակ՝ Ստեփանոս Սիւնեցին «Առ Տ. Գերմանոս» գրած իր թղթում նոյն հարցի առթիւ ասում է[1]. «Զի թէ զթիւ բնութեանցդ առցես ի վերայ Քրիստոսի, հարկաւորապէս մղեք յայսոսիկ, կամ երկուս ասել բնութիւնս, կամ ի ներքոյ անկանել յառաջասացելոցդ աստուածամարտից, եւ կամ փոփոխելի ասել. ապա թէ ոչ հաւանել պարտիք ձերոց ճարտարաց, զի ի կենդանւոյն զայլութեամբ զանապանելոյն տարբերապէս՝ սեռս եւ տեսակս անուանեցին, եւ զսեռն հասարակ մի բնութիւն. եւ անհատքն թուով ի բազումս կտորեալ։ Իսկ ումն յերկուց անճնաւորեալ, մի ասացաւ բնութիւն, որպէս մեկնէ Ցիւրիպիդէս Աթենացի, զպարղսն անուանսն զսերմանեալսն յԱրիստոտէլէ,

---

[1] Տես նաեւ Խասրովիկ Թարգմանիչ եւ երկասիրութիւնք նորին, էջ 38—40 եւ Գիրք Թղթոց, Սահակայ Հայոց կաթողիկոսի ընդդէմ երկաբնակաց նեստորականացն, էջ 434։

ասացեալ եղջերուաքաղս ի Ստորոգութիւնսն, ոչ միայն ի վերայ պարզիցն ասէ, այլ եւ զշաղաշաբաբար կապակցեալսն մի աւելի բնութիւն„ եւն (Գիրք Թղթոց, Թիֆլիս 1901, էջ 383—384)։

Այս հատուածում, “Առածք հնգի„ հակառակ, “յոմն յերկուց անձնաւորեալ„, այսինքն՝ ոմն մարդիկ կամ անհատները, Պաւղոս, Պետրոս են, որ ազգմամբ շարադրական են, համարում են մի բնութիւն ունեցող։ “Առածք հնգի„ հեղինակը եւ Ստեփանոս Սիւնեցին, ինչպէս տեսնում ենք, “բնութեանց„ միեւնոյն խնդիրը մեկնում են բոլորովին այլ կերպ. առաջինը՝ համապատասխան քաղկեդոնական երկաբնակ դաւանութեան, իսկ երկրորդը՝ հակաքաղկեդոնական միաբնակ ուսման համաձայն։

“Առածք հինգ„ գրութեան այդ բնոյթն այնքան պարզ է, որ կարօտ չէ երկար լուսաբանութեան. պէտք է միայն զարմանալ, որ նա յետագայ դարերում վրիպել է հակաքաղկեդոնական հայ եկեղեցականների ուշադրութիւնից եւ պահպանուել, դրեթէ անաղարտ, Դաւիթ Անյաղթի բազմաթիւ ձեռագիրներում։ Ըստ երեւոյթին, հայ եկեղեցականները չեն հասկացել նրա բուն իմաստը, որովհետեւ գրուածքն արտաքուստ փիլիսոփայական է եւ ոչ դաւանաբանական։

Վերոյիշեալ նոր լուսաբանութիւնն արժանի է ամենալուրջ ուշադրութեան, որովհետեւ, ինչպէս տեսանք, նոր այս փաստի հետ սերտ կապուած են մատենագրական մի շարք ուրիշ հարցեր։

Ի նկատի առնելով այս նոր բացատրութիւնը, թւում է ինձ, կարելի է ենթադրել, որ “Հինգ առածքը„, ինչպէս եւ նրան խմբակից Դաւիթ-Ոլիմպիոդորոսի մեկնութիւնները, թարգմանուած կարող են լինել 6—7րդ դարում, կրօնա-դաւանական մեծ կռիւների ու պառակտումների ժամանակ, վեցերորդ դարի վերջերից ոչ առաջ. եւ, ամենայն հաւանականութեամբ, մինչեւ եօթերորդ դարի վերջերը։

Ընդգծուած այդ ժամանակաշրջանում նրանք թարգմանուած պիտի լինեն, ինչպէս տեսանք, տարբեր ժամանակ եւ վերագրուելու են տարբեր թարգմանիչների։ Յունաբան թարգմանութիւնների այս երրորդ շերտի մէջ հնագոյն են, ըստ երեւոյթին, Դաւթի Սահմանքը եւ Ներածութեան Վերլուծութիւնը, իսկ նորագոյն՝ Եղիասի Ստորոգութեանց մեկնութիւնը։ Աւրեմն՝ մօտաւոր կերպով որոշւում է եւ այս խմբի թարգմանման ժամանակաշրջանը, թէ եւ ոչ այնքան հաստատ, որքան միւս խմբերինը, բայց անհամեմատ աւելի հիմնաւորուած, քան մինչեւ այժմ։ Բացի թարգմանման դարաշրջանի մօտաւոր այս որոշման, կարծում եմ, որ պարզւում է այժմ, թէ ինչու սրանց ծագման ու հեղինակի մասին ստեղծուել են հետզհետէ մտացածին զանազան աւանդութիւններ, որոնք հաւաքուած ու ամփոփուած են “Սրբոց վարդապետացն հայոց Մովսէսի եւ Դաւթի հարցմունք ընդ երկաբնակ չարափառսն„ յայտնի գրուածքում։ Ծագած լինելով երկաբնակ հայերի միջավայրում, շատ բնական

է, որ նրանք չէին կարող ընդունելի ու հանդուրժելի լինել հակաքաղկեդոնական հայերի շրջաններում։ Հարկաւոր էր անհաճոյ այդ փաստը մոռացութեան տալ, եւ յետագայում, գիտակցաբար կամ թերեւս անգիտակցաբար, հնարւում է հէքիաթանման մի նոր աւանդութիւն, որը բոլոր այդ երկերը վերագրում է Սահակ-Մաշտոցի աշակերտ՝ Դաւիթ Անյաղթ հայ փիլիսոփային։ Կրօնական տեսակէտից այդ թարգմանութիւնները չէին կարող այլեւս անհանդուրժելի համարուել, որովհետեւ վերոյիշեալ Հարցմունքներում Դաւիթ Անյաղթը եւ նրա ընկերակից Մովսէս Քերթողահայրը, լինելով պաշտպան ու ջատագով հակաքաղկեդոնական դաւանութեան, բանակռիւ են մղում հեղինակաւոր երկաբնակ եկեղեցականների հետ եւ նրանց բոլոր ասածները յաղթողութեամբ հերքում։ Շեշտելով առանձին Դաւիթ Անյաղթի ուղղափառ ու հակաքաղկեդոնական լինելը, Հարցմունքները կարծես թէ յատուկ նպատակ ունեն ժխտելու ի սպառ թարգմանութիւնների ծագման իրական փաստը։

Առասպելական պատմութիւնը Դաւիթ Անյաղթի մասին, ինչպէս տեսնում ենք, ստանում է ուշագրաւ մի նոր բացատրութիւն եւ լուծւում հայոց մատենագրութեան բազմադարեան գաղտնիքներից մէկը, որի հետ սերտ կապուած է եւ Մովսէս Քերթողահօր խնդիրը։ Յոյս ունեմ, որ այս ուղղութեամբ կը լինեն նոր ուսումնասիրութիւններ, որոնք, թւում է ինձ, վերջնականապէս պիտի հաստատեն կարեւոր այս եզրակացութիւնը։

§ 51. Թրակացու քերականութեան Դաւթի ու Անանունի մեկնութիւնները, նրանց հեղինակները եւ ծագման պարագաները: — Թրակացու քերականութեան հնագոյն մեկնութիւններն են Դաւթի ու Անանունի երկերը, որ գիտական ամենամեծ խնամքով ու հմտութեամբ ուսումնասիրել ու հրատարակել էր Նիկ. Ադոնցը իր "Արուեստ Դիոնիսեայ քերականի եւ հայ մեկնութիւնք նորին" աշխատութեան մէջ: Այս մեկնութիւններն ուսումնասիրելիս՝ Նիկ. Ադոնցը հարց էր յարուցել, թէ արդեօք այս գրուածքներից Դաւթի մեկնութիւնը թարգմանուած չէ՞ յունարէնից, ինչպէս արիստոտէլեան մեկնութիւնները: Իր դիտողութիւնների ամփոփման մէջ նա տրամադիր է ենթադրելու[1], որ սրա հեղինակը, հաւանաբար, հայ է եղել, որը մեծ չափով օգտուել է Թրակացու քերականութեան յունական մեկնութիւններից: Այդ ենթադրութիւնը թւում է ինձ հիմնաւոր: Բացի Ն. Ադոնցի նկատած նշաններից կան ուրիշ եւս ուշագրաւ տուեալներ, որոնք ցոյց են տալիս, որ Դաւթի մեկնութիւնը հայ հեղինակի գրուածք է եւ ոչ թարգմանութիւն: Թրակացու քերականութեան յունարէն բնագիրը, ինչպէս յայտնի է, հայերէնի մէջ մի քանի տեղ սխալ է թարգմանուած, այսպէս՝ χατάληψις, որ նշանակում է "հասողութիւն", թարգմանուած է "թողումն" (Թր. էջ 42, 16), ποιότης "որակութիւն" թարգմանուած է "քերդութիւն"

---

[1] Տես "Արուեստ Դիոնիսեայ", էջ CLXXXIII:

(Թր. էջ 31, 22)։ Այդ՝ այս սխալները տեղ են գտել Դաւթի քերականութեան մէջ եւ առիթ գտել նաեւ հետեւեալ սխալ մեկնութիւնների. Դաւ. փիլ. մեկն. քերականին, էջ 81, 3—5՝ «Իսկ ի թողմանէ նախակրթեալն՝ որպիսի ինչ. զի զոր ինչ եգիտ ոք կրթելով, եւ յայլմէն եւս մնացելովք, զկնի իւր եթող ապագայիցն», Դաւ. մեկն. քերակ., էջ 119, 21—120, 3՝ «Եւ քերդութեանն, որպիսի մուրցածի, ծղացի, աքացիդ՝ յայտնի է. իսկ ողկուզաւրէնդ եւ տարմաբար՝ զոր քերդեալ ի խտութենէ պատերազմիկ զաւրուն երթալոյ, իբր թէ տարմաբար երթային եւ ողկուզաւրէն»։ Եթէ Դաւթի փիլիսոփայի քերականութեան մեկնութիւնը թարգմանուած լինէր յունարէնից, պարզ է, որ Թրակացու բնագրի թարգմանութեան սխալները չէին կարող կրկնուած լինել այդ մեկնութեան մէջ։

Ընդունելով այս գրուածքը Հայ հեղինակի աշխատութիւն, կարող ենք եզրակացնել, որ Դաւիթ փիլիսոփան, որը գրել է քերականի այդ մեկնութիւնը, ամենայն հաւանականութեամբ, Հայ հեղինակ է։ Ուրեմն՝ որոշւում է յունաբան դպրոցի Հայ մատենագիրներից գոնեա մէկը, որը, ըստ երեւոյթին, այդ դպրոցի յայտնի դէմքերից է, ձեռագրերում էլ անուանւում է յաճախ «Եռամեծն Դաւիթ փիլիսոփայ» (տես «Արուեստ Դիոնիսեայ», էջ 79, ծանօթ.)։

Անանուն հեղինակի մեկնութիւնը եւս, ինչպէս երեւում է նրա բովանդակութիւնից, Հայերէն գրուած աշխատութիւն է եւ ոչ թարգմա-

նութիւն յունարէնից։ Նիկ. Ադոնցը տրամադիր է կարծելու, որ այս մեկնութիւնը կարելի է վերագրել Մամբրէ վերծանողին, որին մատենագրական աւանդութիւնը յիշում է, որպէս ընկերակից Դաւթի ու Մովսէսի (տե՛ս “Արուեստ Դիոնիսեայ„, էջ CXIII—CXIV)։ Սակայն առասպելեալ աւանդութեան մէջ Դաւթի ու Մովսէսի ընկերակից են համարուել բացի Մամբրէից նաեւ “Հռետորն Աբրահամ եւ սոցին նմանակիցն Պօղոս[1]„, ուրեմն՝ Անանունի մեկնութիւնը հնարաւոր է վերագրել նաեւ սրանց։ Այս խնդիրը, ինչպէս տեսնում ենք, մնում է անորոշ եւ չէ կարող, ի հարկէ, լուծուել առանց որեւէ գրական վկայութեան։

Այդպիսի մի վկայութիւն, աւելի ճիշտ մի ակնարկ, կարծես թէ կայ Համամ Արեւելցու քերականի մեկնութեան հետեւեալ հատուածում. “Նախագիրս ծննդագործէ բան եւ զծնելոցն չափսն ներառնու եւ ինքնագիր առածութեամբ զարգարեալ ունի զկամաւղսն խոկաց։ Այսոքիկ եղեցի ի մեզ առոգմանս գործի եւ քննութեանց զէն եւ քերդողութեանց զգեստք եւ նախակրթութեանցն սեղան եւ խոկացն բաժակ եւ կարողացն ճոխութիւն եւ ճեմականացն իմացական սանձք եւ սիոփնականացն հետեւումն ազնիւ եւ եկեղեցականաց վանդ լիաբոլոր սեղանականաւք եւ աստուածաբանականացն մեկնոց փոքր եւ համբակացն վայելուչ զարդ եւ մեզ ստորաալայծառ պատմուճանք անգին ի Դաւթէ եւ ի

1 Տե՛ս Գ. Վ. Սրուանձտեանց, Հնոց եւ Նորոց, էջ 45։

Պաւղոսէ հրաշացան եւ որ ի տերունական ի պսակ ի Քրիստոսէ ունիմք զվեցսն յանճառից” (“Արուեստ Դիոնիսեայ”, էջ 270)։ Համամ Արեւելցին իւրայատուկ ձեւով բացատրում է այս հատուածում Նախադրութիւնների կարեւորութիւնը։ Հատուածի վերջում Նախադրութիւնները նա անուանում է “ստորապայծառ պատմուճանք անգին”, որ “ի Դաւթէ եւ ի Պաւղոսէ հրաշացան”։ Արդ՝ ո՞ւմ է վերաբերում Համամ Արեւելցու այս ակնարկը, Դաւիթ մարգարէին ու Պօղոս առաքեալի՞ն, թէ քերականութեան հնագոյն մեկնիչներին։ Երկրորդ ենթադրութիւնը կարծես թէ աւելի մօտ է հատուածի իմաստին, որովհետեւ դժուար է հասկանալ, թէ ի՞նչ կապ կարող են ունենալ Նախադրութիւնների հետ Դաւիթ մարգարէն եւ Պօղոս առաքեալը։ Նոր այս լուսաբանութեամբ՝ վերեւ յիշատակուած Դաւիթը, ըստ երեւոյթին, քերականի մեկնութեան հեղինակ “Եռամեծն Դաւիթ փիլիսոփան” է, իսկ Պօղոսը, ամենայն հաւանականութեամբ, հեղինակն է միւս հնագոյն մեկնութեան։ Եթէ այս ենթադրութիւնն ուղիղ համարուի, Անանունի մեկնութիւնը հաւանական կը լինի վերագրել ո՛չ թէ Մամբրէ վերծանողին, այլ Պօղոս մեկնիչին, որը Մովսէսի ու Դաւթի Հարցմունքներում յիշւում է. իբրեւ “Նմանակից” Դաւիթ փիլիսոփայի, Մովսէս քերթողահօր, Աբրահամ հռետորի եւ Մամբրէ իմաստասիրի։

Նիկ. Ադոնցն իր ուսումնասիրութեան մէջ աշխատել է որոշել այս մեկնութիւնների ծագ-

*ման ժամանակը եւ իր եղրակացութիւնների ընդհանուր ամփոփման մէջ կարծում է, որ Դաւթի ու Անանունի մեկնութիւնները, լինելով աւելի հին քան Ստեփանոս Սիւնեցու եւ Մովսէս քերթողի համապատասխան մեկնութիւնները, գրուած պիտի լինեն, ըստ երեւոյթին, եօթերորդ դարում (տե՛ս "Արուեստ Դիոնիսեայ" էջ CXCIII)։ Ցունաբան դպրոցի զարգացման ընթացքը եւ յունաբան երկերի երեք տարբեր շերտերը պարզելուց յետոյ, թւում է ինձ, որ Դաւիթ փիլիսոփայի ու Անանունի ժամանակը հնարաւոր է այժմ որոշել աւելի հիմնաւոր ու հաստատուն կերպով, քան այդ արուած էր բանասիրական՝ նախորդ ուսումնասիրութիւններում։*

*Դաւիթ փիլիսոփայի քերականի մեկնութեան մէջ կան հետեւեալ հատուածները, որոնք քաղուած են յամբղիկեան խմբի երկերից.*

| | |
|---|---|
| *Դաւիթ փիլ., էջ 102, 8—10.* | *Արիստ. Պէրիարմ., էջ 461.* |
| "Իսկ Արիստոտէլէս զստորասութիւն եւ զբացասութիւն եւ զբացերեւութիւն ընդ անուան եւ ընդ բայի առաջ հիմն գոլ"։ | "Նախ արժան է գնել, զի՞նչ է անուն, եւ զի՞նչ է բայ. ապա զի՞նչ է բացասութիւն, եւ ստորասութիւն, եւ բացերեւութիւն, եւ բան"։ |
| *Դաւիթ փիլ., 109, 11—16.* | *Ցամն. Ստոր. 1.* |
| "Եւ համանուն լինի ըստ պատահման եւ ըստ մտա- | "Համանունութիւն լինի ըստ երկուս յեղանակս՝ ըստ |

---

¹ Տե՛ս Ջեռ. Էջմ. մատեն. թ. 1894 — Մայր Ցուցակ. թ. 1852։

ծութեան. պատահմամբ՝ յորժամ երկուց իրաց նոյն դիպեսցի անուն տիրական եւ առասական, որպէս՝ թռչուն եւ որպէս՝ շինուած փայտից. իսկ մտածութեամբ՝ ըստ պատուոյ, ըստ յուսոյ, ըստ աղաւթից եւ այլոցն եւս»։

պատահման կամ մտածութեան ըստ պատուոյ, ըստ յիշատակի, ըստ աղաւթից, ըստ կերպարանի ըստ նմանութեան»։

*Դաւիթ փիլ., 80, 10—12*

*ՅՍտոր., Ձեռ. Թ. 1894.*

«Բայց է հարցման ուրուք զահման տրուեսցի, զոր աւրինակ եթէ ոք հարցցէ ոք. զինչ է մարդ, լաւ պատասխանել ասէ. «կենդանի բանաւոր մահկանացու»։

«Իբր թէ ոք հարցցէ զմարդ. կենդանի բանաւոր մահկանացու» (գլ. գ). Նաեւ յաղ. գոյաց. ժ. «մարդ գոյացութիւն իմն նշանակէ ոչ վայրապար, այլ գոյացութիւն՝ կենդանի բանաւոր մահկանացու[1]»։

Համարելով այս հատուածներից առաջինը քաղուած Արիստոտէլի Յաղագս մեկնութեան թարգմանութիւնից, Նիկ. Ադոնցը կարծում է, որ Դաւիթ փիլիսոփայի մեկնութեան մէջ այդ հատուածը կարող է լինել ընդմիջարկութիւն[2]։ Սակայն, ինչպէս տեսնում ենք, կան եւ ուրիշ հատուածներ, որոնք կապ ունեն Յամբլիքոսի Ստորոգութեանց մեկնութեան հետ։ Ուստի՝ անհաւանական է ինձ թւում, որ վերոյիշեալ հա-

---

1 Դաւիթ - Ոլիմպիոդորոսի խմբի երկերում մարդու սահմանումը աւելի մանրամասն է՝ «կենդանի բանաւոր մահկանացու մտաց եւ հանճարոյ ընդունակ» (Սահմ. իմ., էջ 136։ Առածք հինգ., էջ 217 եւն)։

2 Տե՛ս «Արուեստ Դիոնիսեայ», էջ CLXIII։

*տուածը Դաւթի մեկնութեան մէջ լինի ընդմիջարկութիւն, այլ պէտք է ենթադրել, որ Դաւիթ փիլիսոփան, ծանօթ լինելով յամբղիքեան խմբի թարգմանութիւններին, օգտուել է նրանցից իր մեկնութեան այն մասերում, որոնք որոշ առընչութիւն են ունեցել արիստոտէլեան իմաստասիրութեան հետ։*

*Այս ենթադրութիւնը խիստ կարեւոր է Դաւիթ փիլիսոփայի ժամանակի որոշման համար։ Յամբղիքեան խմբի երկերը, ինչպէս գիտենք, յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններ են եւ թարգմանուած են* 576 *թուին։ Եթէ ընդունենք, որ քերականի մեկնիչ Դաւիթ փիլիսոփան օգտուել է այդ թարգմանութիւններից, կարող ենք վստահօրէն եզրակացնել, որ նրա մեկնութեան ժամանակը պէտք է դնել յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններից եւ այդ թուից յետոյ։ Թրակացու քերականութիւնը, ինչպէս տեսանք, պատկանում է յունաբան թարգմանութիւնների առաջին խմբին եւ թարգմանուած պիտի լինի Պիտոյից գրքից ու Փիլոնի երկերից առաջ, ուրեմն՝ ամենաուշը վեցերորդ դարի առաջին կիսում։ Դաւիթ փիլիսոփայի մեկնութիւնը եւ Թրակացու քերականութեան թարգմանութիւնը, ինչպէս տեսնում ենք, ծագել են յունաբան դպրոցի զարգացման տարբեր շրջաններում։ Իսկ այս փաստից բխում է ինքնին, որ քերականի մեկնիչ Դաւիթ փիլիսոփան չի կարող լինել Թրակացու քերականութեան թարգմանիչ։ Նիկ. Ադոնցի ուսումնասիրութիւնից եւս երեւում է,*

որ այս եզրակացութիւնը հաստատւում է նաեւ Դաւթի մեկնութեան բովանդակութեան քննութեամբ (տես «Արուեստ Դիոնիսեայ», CLVIII, CLXVIII, CLXXVI)։ Այսպէս՝ Թրակացու քերականութեան մէջ վանգ եւ փաղառութիւն բառերը, որ միեւնոյն συλλαβή բառի թարգմանութիւնն են, Դաւիթը հասկացել է, որպէս քերականական տարբեր եզրեր. դերանուն բառը, որ յունարէն, ἀντωνυμία բառի թարգմանութիւնն է, Դաւիթը հնարաւոր է համարել մեկնել, որպէս թերանուն։ Այս օրինակներից իսկ երեւում է, որ նա Թրակացու թարգմանը չէ։ Ընդունելով Թրակացու քերականութիւնը յունաբան դպրոցի հնագոյն թարգմանութիւններից մէկը, հաւանական կը լինի նաեւ ենթադրել, որ այդ թարգմանութեան հետ միասին կարող էին լինել եւ քերականի հնագոյն մեկնութիւններ։ Անհնարին չէ, որ Դաւիթ փիլիսոփան եւ Անանուն կամ Պօղոս մեկնիչը օգտուել են ոչ այնքան քերականութեան յունական մեկնութիւններից, որքան այդ հայերէն մեկնութիւններից, որոնք գոյութիւն են ունեցել նրանց ժամանակ, սակայն մեր ձեռքը չեն հասել։

Նիկ. Ադոնցն իր ուսումնասիրութեան մէջ կանգ է առնում նաեւ մի ուրիշ կարեւոր հարցի վրայ, թէ արդեօք կարող է քերականի մեկնիչ Դաւիթ փիլիսոփան լինել Սահմանք իմաստասիրութեան երկի հեղինակը կամ թարգմանը։ Դաւթի մեկնութեան ու Սահմանքի առընչութիւնը պարզելու համար նա մատնացոյց է անում այդ

երկերում ճարտասանութեան բաժանմանը վերաբերեալ հետեւեալ հատուածը.

| Դաւ. քեր. մեկն., 84, 14–17. | Սահմ., 207, 1–3. |
| --- | --- |
| «Քանզի տեսակք ճարտասանականին երիւք այսուքիւք կատարին եւ վարին ատենականաւն եւ բաղխահականաւն եւ կացրդականաւն, զոր զուգահաւասար հատեալք ի սեռէ»։ | «Դարձեալ ընդդէմ գնելով ասեն, թէ ահա ճարտասանականն սեռ գոլով՝ յերիս բաժանի ի տեսակս՝ յատենականն, ի բաղխահականն, ի կացրդականն»։ |

Սահմանքի մէջ ճարտասանութեան այս բաժանումը համարում է «ոչ բարւոք», մինչդեռ Դաւիթ քերականը կողմնակից է այդ բաժանման։ Կարծիքների սկզբունքային այս տարբերութիւնը Դաւթի մեկնութեան ու Սահմանքի մէջ Նիկ. Ադոնցը համարում է պարզ մի նշան, որ Դաւիթը չի կարող լինել Սահմանքի հեղինակը (տե՛ս «Արուեստ Դիոնիսեայ», էջ CXXXII, CLXXXIII)[1]։ Նիկ. Ադոնցի այս դիտողութեանը պէտք է աւելացնել նաեւ այն, որ Դաւիթ քերականի թէ ամբողջ մեկնութիւնն ըստ իր բովանդակութեան եւ թէ իմաստասիրական առանձին դատողութիւնները չունեն այն հմտութեան ու գիտութեան որականիշները, որոնք առանձնայատուկ են Սահմանքի հեղինակ Դաւիթ մեկնիչին։

[1] Նիկ. Աղբալեանը հիմաւոր չի ընդունում Նիկ. Ադոնցի այս դիտողութիւնը եւ ենթադրում է, որ Դաւիթը ժամանակի ընթացքում կարող էր իր կարծիքը փոխել. տե՛ս «Դիտողութիւններ Ն. Ադոնցի նոր գրքի վրայ», Արարատ 1919, յունվ.-դեկտ., էջ 68։

Եթէ Դաւիթ քերականը լինէր Ոլիմպիոդորոսի դպրոցի Նորպղատոնական Դաւիթ փիլիսոփան, պարզ է, որ Նրա իմաստասիրական դատողութիւնները պէտք է համապատասխանէին այս դպրոցում մշակուած տեսութիւններին, մինչդեռ Նրա մեկնութեան մէջ արիստոտելեան իմաստասիրութեան մուրացածոյ եւ աղքատիկ գաղափարները քաղուած են, ինչպէս տեսանք, յամբղիկեան խմբի հայերէն թարգմանութիւններից:

Եթէ Դաւիթ քերականը Սահմանքի հեղինակը չէ, հարց է ծագում, թէ արդեօք չէ՞ կարելի Նրան վերագրել Սահմանքի թարգմանութիւնը: Այս խնդրի նկատմամբ Նիկ. Ադոնցը մատնացոյց է անում, որ արուեստի սահմանման մէջ (տե՛ս վերեւ § 41, գ) Սահմանքի թարգմանը κατάληψις բառը թարգմանել է “հասողութիւն„, մինչդեռ Դաւիթ քերականն իր մեկնութեան մէջ κατάληψις բառի այդ ուղիղ իմաստը չգիտէ եւ ենթադրում է Նրա իմաստը “թողումն„ καταλείπω բայից: Նիկ. Ադոնցն անհնարին է համարում, որ միեւնոյն անձը կարեւորագոյն այդ եզրը Սահմանքի մէջ թարգմանած լինի ուղիղ, իսկ քերականի մեկնութեան մէջ մեկնած լինի բոլորովին սխալ, ուստի եւ եզրակացնում է, որ Սահմանքի թարգմանը եւ Դաւիթ քերականը պէտք է լինեն տարբեր անձնաւորութիւններ (տե՛ս “Արուեստ Դիոնիսեայ„, էջ CLXXXVIII): կան եւ ուրիշ դէպքեր, երբ ամենասովորական եզրներն իսկ չեն համապատասխանում իրար Դաւիթ քերականի ու

Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերում։ Այդ տեսակէտից ուշադրութեան արժանի է Դաւթի մեկնութեան մէջ հետեւեալ հատուածը. էջ 81, 8–11՝ "Արդ հարկաւորաբար բանական արուեստիս առաջարկութիւն հնգիւքս այսոքիւք կատարի. դիտաւորութեամբ, հարազատութեամբ, վերագրաւն, վարդապետականաւն եւ ըստ մասին բաժանմամբ, յորում եւ աւգտակարն"։ Այս հատուածում "վերագիրն" եւ "աւգտակարն" համապատասխանում են յունարէն ἡ ἐπιγραφή եւ τὸ χρήσιμον եզրերին, իսկ Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերում նոյն եզրերը թարգմանուած են "մակագրութիւն" եւ "պիտանացու" (Դպորփ. էջ 250, Մեկն. ի Վերլ. էջ 560, 562, Էլ. Մտ. էջ 36, 40)։ Սահմանքի թարգմանութիւնը, ինչպէս երեւում է լեզուական այս դիտողութիւններից, դժուար է վերագրել Դաւիթ քերականին։ Հակառակն ապացուցանելու համար անհրաժեշտ են գրական ու որոշ փաստեր։ Պէտք է ասել, որ ժամանակագրական տեսակէտից միանգամայն հնարաւոր է Սահմանքի թարգմանութիւնը վերագրել քերականի մեկնիչ "եռամեծն Դաւիթ փիլիսոփային", որովհետեւ նրանց երկուսի ժամանակն էլ գրուելու է, ինչպէս տեսանք, յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններից յետոյ։

Անանունի մեկնութիւնը, որ վերեւ մենք վերագրեցինք Պօղոս մեկնիչին, գրուած պիտի լինի, ինչպէս երեւում է նրա բովանդակութիւնից, Դաւթի մեկնութիւնից յետոյ եօթերորդ դարում։

Այդ մեկնութեան մէջ յիշւում է Դաւիթ անուանով մի հայ մատենագիր հետեւեալ հատուածներում՝ 1. «Իսկ քաջողորակի տաղ ասի գաւթեան քերթութիւն (եւ) որ յաղագս Տիգրանայ», տես «Արուեստ Դիոնիսեայ», էջ 128, 21—129, 1, 2. «Իսկ բան շարադրութիւն է բառի, յորժամ շարադրէ ոք զԴաւիթն զշարագրեացն եւ զպատերազմն եւ զմարացն եւ զհայոցն եւ ասիցէ յարապէս եթէ Դաւիթ շարագրեաց զպատերազմն մարաց եւ հայոց, որ է բան», տես նոյնը, էջ 138, 4—8[1]։ Արդ՝ հարց է ծագում, թէ ո՛վ է հռչակաւոր այս Դաւիթը, որը շարունակ յիշւում է Անանունի մեկնութեան մէջ։ Որովհետեւ Անանունի ժամանակը գրուելու է, հաւանաբար, անմիջապէս Դաւթից յետոյ եւ նա կարող է լինել այս վերջինի աշակերտը, ո՛չ միայն հնարաւոր, այլ եւ հաւանական է թւում, որ Անանունի յիշատակած Դաւիթ քերթողը լինի քերականի մեկնութեան հեղինակ Դաւիթ փիլիսոփան։ Այս հարցի լուծումն առանձին կարեւորութիւն ունի, որովհետեւ Խորենացին Տիգրան Մեծի պատմութեան համար ունեցել է, որպէս աղբիւր, բանաստեղծական մի գրուածք, որը նա պարզ յիշատակում է եւ անուանում «Զորս հագներգութիւնք, զարգասաւորին ի բանս եւ զիմաստոյն իսկ եւ ի մէջ իմաստոց իմաստնագունին»։[2] Անանունի յիշած «Դաւթեան

---

1 Դաւիթ անունը յիշատակւում է նաեւ յաճախ օրինակների մէջ, էջ 127, 137, 145։

2 Տես Մովսէս Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց, Տփխիս 1913, էջ 65. նաեւ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդական առասպելները, Վաղարշապատ 1901, էջ 413 եւն։

քերթութիւնը որ յաղագս Տիգրանայ„ եւ Դաւթի շարադրութիւնը հայոց ու մարաց պատերազմի մասին թերեւս կապ ունենան "Զօրս հագներգութեանց„ հետ, որի "արգասաւոր„ եւ "ի մէջ իմաստնոց իմաստնագոյն„ հեղինակը եւս գուցէ առընչութիւն ունենայ վերոյիշեալ Դաւիթների հետ։ Ինչպէս տեսնում ենք, եօթերորդ դարի հայոց մատենագրութեան պատմութիւնը պէտք է տուաջին հերթին լուծէ մի շարք Դաւիթ անունով հեղինակների խնդիրը, որոնցից յայտնի են արդէն՝ Դաւիթ Հարքացին, Դաւիթ Տարօնացին, Դաւիթ Բագրեւանդացին, քերականի մեկնիչ Դաւիթ փիլիսոփան եւ, ըստ երեւոյթին, նաեւ Անանունի յիշած հռչակաւոր Դաւիթ քերթողը։ Արանցից մի քանիսը կարող են միեւնոյն հեղինակը լինել, բայց այդ խնդիրը մնում է դեռ անորոշ ու կարօտ յատուկ լուսաբանութեան։

Վերոյիշեալ մեր դիտողութիւնները Թրակացու քերականութեան ու նրա հնագոյն մեկնիչների մասին, ինչպէս եւ նրանց ծագման ժամանակաշրջանների որոշումը, կարծում եմ, որ բաւականնպաստելու են այս խնդիրների պարզաբանման, եւ բանասէրների հաւաքական ջանքերով յունաբան շրջանի մեր մատենագրութեան համար ստեղծուելու են հետզհետէ ամուր ու հաստատուն հիմքեր։

§ 52. Յունաբան դպրոցի զարգացման յառաջ ընթացքը հաստատւում է հայոց մատենագրութեան մի շարք նշանակալի վկայութիւններով։ — Յունաբան դպրոցի իմաստասիրական, ճարտա-

սանական ու քերականական երկերը բաժանւում են, ինչպէս տեսանք, երեք տարբեր խմբերի, որոնք զանազան ժամանակաշրջանների աշխատութիւններ են եւ ծագել են յաջորդաբար, մօտ երկու հարիւր տարուայ ընթացքում, սկսած վեցերորդ դարի սկիզբներից կամ հինգերորդ դարի վերջերից, ուրեմն, գլխաւորապէս, վեցերորդ եւ եօթներորդ դարերում։ Եթէ անտես առնենք Դաւիթ Անյաղթի ու նրա ընկերակիցների մասին յետին դարերում յերիւրուած առասպելանման աւանդութիւնը, որը դարերի ընթացքում խճճել ու մեծապէս դժուարացրել էր այս խնդիրների լուծումը, հայոց մատենագրութեան մէջ կան նաեւ ուրիշ կողմնակի վկայութիւններ ու ակնարկներ, որոնք կատարելապէս հաստատում են յունաբան դպրոցի այն երկարատեւ զարգացման ընթացքը, որ սոյն ուսումնասիրութեան մէջ մանրազննին կերպով քննուած ու լուսաբանուած է։

Հայոց մատենագրութեան մէջ, ինչպէս յայտնի է, յունաբան դպրոցի ականաւոր ներկայացուցիչները, մեծ մասամբ, անուանւում են փիլիսոփայ կամ իմաստասէր, ճարտասան եւ քերթող։ Արդ՝ հինգերորդ դարի վերջերից սկսած հայոց մատենագրութեան մէջ յիշատակուած կան մի շարք հայ մատենագիրներ, որոնք կրում են վերոյիշեալ այս մականունները։ Հնագոյնը սրանից Ղազար Փարպեցու Թղթի մէջ յիշուած “Մովսէս փիլիսոփան„ է, որն ապրած պիտի լինի հինգերորդ դարի վերջերում։ Որ այս

Մովսէսը յունաբան դպրոցի հեղինակ է, այդ կարելի է ենթադրել նրա գրուածքների մասին Փարպեցու ծանօթ վկայութիւնից. նաեւ նրա "փիլիսոփոս„ մականուան յունական վերջաւորութիւնից։ Ասողիկի վկայութեամբ, վեցերորդ դարի առաջին կիսում յաջորդել է Սահակ կաթուղիկոսին "Տէր Քրիստափոր փիլիսոփան ի գաւառէն Բագրեւանդայ եւ գեղջէն Տիրառճայ„ (Պետերբուրգ, 1885, էջ 81)։ Նոյն պատմիչի ասելով, դարձեալ վեցերորդ դարի առաջին կիսում "Եզրաս Անգեղացի, աշակերտ Ճարտասանին Մովսիսի եպիսկոպոսի Բագրեւանդ գաւառի՝ զգասս ճարտասանիցն բազմացուցանէր„ (էջ 82)։ "Քերթող„ եւ "իմաստասէր„ է անուանւում 554 թուին Դուինի Բ. ժողովին մասնակցող Պետրոս Սիւնեաց եպիսկոպոսը[1]։ Մովսէս Կաղանկատուացին եւս վեցերորդ դարի երկրորդ կիսում յիշում է Կարնոյ եպիսկոպոս Թէոդորոսին, որին կոչում էին "փիլիսոփայապետ„. "ընդ երկուանալն Հայրապետութեան Հայոց, — ասում է Կաղանկատուացին, — էր մեծ մարտ ընդ Մովսէս եւ ընդ Թէոդորոս Կարնոյ եպիսկոպոս, զոր փիլիսոփայապետն կոչէին. եւ ուղղափառքն աղարտէին զհոռոմոց զամենայն կրօնն„ (տես Բ, գլուխ ԽԶ)։ Վեցերորդ դարի վերջերում եւ եօթներորդ դարի սկզբում եկեղեցական նշանաւոր գործիչ էր եւ հռչակաւոր

1 Տե՛ս Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ 1885, էջ 88. Նաեւ Գալուստ Տէր-Մկրտչեան, Պետրոս Սիւնեաց եպիսկոպոս, Վաղարշապատ 1902։

մատենագիր Վրթանէս վարդապետը, որի մականունն էր դարձել “քերթող”։ Նոյն այս շրջանում յունաբան դպրոցի մատենագիրներից էր Գրիգոր քերթողը, որի Աբրահամ կաթողիկոսին գրուած թուղթը տպուած է “Գիրք Թղթոցում” (էջ 99—107, տե՛ս նաեւ վերեւ սոյն ուսումնասիրութեան § 37-ը)։ Սեբէոսի վկայութեամբ, Կոստանդ կայսրը հայերի հետ կրօնական միութիւն հաստատելու համար Հայաստան էր ուղարկել “այր մի ի Բագրաւան գեղջէ՝ որ էր ուսեալ զարուեստ փիլիսոփայութեան, եւ անուն նորա Դաւիթ” (Գլուխ ԼԳ)։ Այս Դաւիթը 648—649 թուին ներկայ է եղել Ներսէս կաթուղիկոսի գումարած Դվնի ժողովում։ Ստեփանոս Ասողիկը հաղորդում է նոյնպէս, որ նա “ի Բագրեւանդ գաւառէ ի Բագւան գեղջէ” էր եւ “էր ուսեալ զարուեստ փիլիսոփայութեան” (Պետերբուրգ 1885, էջ 91)։ Վերեւ մենք տեսանք, որ Դաւիթ-Օլիմպիոդորոսի խմբի մեկնութիւնները վերագրուելու են երկաբնակ հայերի միջավայրին։ Միանգամայն հնարաւոր է, ուրեմն, նոյն իսկ հաւանական, որ հենց այս Դաւիթը, իբրեւ ականաւոր պարագլուխ երկաբնակ հայերի, կարող էր որոշ կապ ունենալ Դաւիթ-Օլիմպիոդորոսեան իմաստասիրական դպրոցի հետ։

Մի այլ Դաւիթ, որ թարգմանել է Բարսեղ Կեսարացու “ի ծնունդն փրկչին” ճառը, անուանւում է նոյն ճառի յիշատակարանում “Դաւիթ թարգման Տարաւնացի”։ Գարեգին

եպիսկ. Ցովսէփեանն այս Դաւթին նոյնացնում է Դաւիթ Հարքացի հռչակաւոր փիլիսոփայի հետ, որը ժամանակակից էր Անաստաս կաթողիկոսին (661—665թ.) եւ Աշոտ պատրիկին (685—690թ.)[1]: Էրդ դարում կան եւ ուրիշ յայտնի մատենագիրներ, որ անուանւում են „փիլիսոփայ" կամ „քերթող":

Ինչպէս տեսնում ենք, Զ—Է դարում յայտնի են մի շարք հեղինակներ հայոց մատենագրութեան մէջ, որոնք անուանւում են „փիլիսոփայ", „իմաստասէր", „քերթող", „ճարտասան", „Թարգման" եւ բոլորն էլ, ամենայն հաւանականութեամբ, պատկանում են յունաբան դպրոցի մատենագիրների խմբին:

Մատենագրական վերոյիշեալ վկայութիւնները բոլորովին նման չեն առասպելական աւանդութեան յետնադարեան յերիւրանքներին, ստոյգ ու վաւերական են, եւ պարզ ցոյց են տալիս, որ յունաբան դպրոցն ունեցել է յաջորդական ու յարատեւ զարգացում, սկսած հինգերորդ դարի վերջերից: Ուրեմն՝ իմ եզրակացութիւնները, որ մանրազննին քննութեամբ լուսաբանուած են այս աշխատութեան մէջ, ոչ միայն չեն հակասում, այլ կատարելապէս համապատասխանում են մատենագրական այդ ստոյգ ու հաւաստի ցուցումներին:

Ուշադրութեան արժանի է, որ բացի Պետրոս Սիւնեցուց բոլոր վերոյիշեալ „փիլիսոփայ",

---

1 Տե՛ս "Արարատ", 1907, յունուար եւ մարտ:

“քերթող„ եւ “Ճարտասան„ հեղինակները, որոնց ծննդավայրը կամ գործունէութեան տեղը յիշատակուած են, ծնուել են Բագրեւանդում կամ Տարաւնում, իսկ երկուսը Բագրեւանդի ու Կարնոյ եպիսկոպոսներ են։

Նիկ. Աղբալեանը “Դիտողութիւններ Ն. Ադոնցի նոր գրքի վրայ„ յօդուածում[1] փորձ էր արել որոշելու Թրակացու քերականութեան թարգմանութեան տեղը։ Նրա կարծիքով, քերականութեան թարգմանիչը յոյն բնագրի օրինակների փոխարէն բերում է համարժէք օրինակներ, առնուած իր անմիջական միջավայրից։ Ի նկատի առնելով այդ օրինակները՝ Նիկ. Աղբալեանը գուշակում է, որ Թրակացու թարգմանիչն ապրել է մի երկրում, ուր կայ ձեան հիւս, որթ, ընկուզենիներ, այգիներ։ Օրինակների մէջ յիշւում են նաեւ Տարօնն ու Ցրօնքը, Մամիկոնեան տան անունները։ Այս ամէնը հիմք է ծառայում նրան ենթադրելու, որ Թրակացու քերականութիւնը թարգմանուած պիտի լինի Տարօնում։ Այս սրամիտ ենթադրութիւնը, որ թւում է ինձ բաւականաչափ հիմնաւորուած, կարեւոր ու հետաքրքիր է այն տեսակէտից, որ թարգմանութեան տեղի որոշմամբ որոշւում է նաեւ թարգմանութեան բարբառախօսական բնոյթ կրող լեզուական առանձնայատկութիւնների միջավայրը։ Ի նկատի ունենալով, որ վերոյիշեալ վկայութիւնները եւս յունաբան հնագոյն հե-

[1] “Արարատ„ 1919, յուն.-դեկտ., էջ 70—71։

ղինակների ծննդավայրը կամ գործունէութեան միջավայրը որոշում են Բագրեւանդում, Տարօնում եւ Կարինում, կարելի է թերեւս ենթադրել, որ յունաբան դպրոցի գլխաւոր կենդրոնները եղել են, հաւանաբար, Հայաստանի արեւմտեան կողմերում, որոնք գտնուել են յունական մշակոյթի անմիջական ազդեցութեան տակ։ Ըստ երեւոյթին, արեւմտահայեր պէտք է լինեն նաեւ այն քաղկեդոնականները, որոնց շրջանում թարգմանուած պիտի լինեն, ինչպէս ենթադրեցինք, Դաւիթ-Ոլիմպիոդորոսի խմբի երկերը։

§ 53. Իրենէոսի «Ցոյց առաքելական քարոզութեանն» եւ «Ընդդէմ հերձուածոց» երկերը թարգմանուած են յունաբան թարգմանութիւնների առաջին շրջանում։ — Իրենէոսի «Ընդդէմ հերձուածոց» գրուածքի հրատարակութեան առաջաբանում կարապետ Տէր-Մկրտչեանն ու Երուանդ Տէր-Մինասեանը ենթադրում են, որ Իրենէոսի այս գրուածքն ու Ցոյցը թարգմանուած են հայերէնի 650—750 թուականների միջեւ[1], Ֆր. Կոնիբիրը, «Բուշարձանում» տպուած յօդուածում, հրատարակիչների այդ կարծիքը համարում է բացարձակապէս սխալ եւ Իրենէոսի թարգմանութիւնները դնում է հինգերորդ դարի

---

1 Տե՛ս Irenäus, Gegen die Häretiker, Leipzig 1910. էջ IV—V. Նաեւ Des heiligen Irenäus Schrift zum Erweise der Apostolischen Verkündigung, Leipzig 1907, էջ IV—V.

առաջին կիսում[1]։ Համեմատելով Իրենէոսի եւ Փիլոնի թարգմանութիւնների լեզուն, Պրոֆ. Կոնիբիրը մատնացոյց է անում լեզուական բազմաթիւ նմանութիւններ եւ եզրակացնում, որ այդ թարգմանութիւնները պէտք է համարուեն միեւնոյն թարգմանչի աշխատութիւն։ Թարգմանութեան ժամանակի վերոյիշեալ որոշումը նա հիմնում է հենց թարգմանիչների այդ նոյնութեան վրայ։ Ընդունելով որ Փիլոնի երկերը թարգմանուած են հինգերորդ դարի առաջին կիսում, նա նոյն եզրակացութիւնն է անում նաեւ Իրենէոսի թարգմանութիւնների նկատմամբ։

Պրոֆ. Կոնիբիրի այս վերջին ենթադրութիւնը, որի միակ հիմքը նրա յայտնի եզրակացութիւններն են Խորենացու ժամանակի վերաբերմամբ, աւելի քան անհաւանական է ու կասկածելի։ Սակայն նրա դիտողութիւնը Փիլոնի ու Իրենէոսի թարգմանիչների նոյնութեան մասին, որ նա փաստաբանում է լեզուական մանրաքնին ու կարեւոր համեմատութիւններով, միանգամայն հիմնաւոր է ու համոզիչ։

Նոյն այս խնդրի առթիւ վերջերս լոյս տեսաւ “Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթում Հ. Արիստակէս Վարդանեանի ուշագրաւ մի յօդուածը՝ “Լեզուական նմանութիւններ Փիլոնի եւ Իրենէոսի հայ թարգմանութիւններու մէջ„ (1921 թ., սեպտ.—հոկտ., էջ 450—458)։

---

[1] The age of the old Armenian Version of Irenaeus, “Յուշարձան„ գրական ժողովածոյ։ Վիեննա 1911, էջ 193—202։

Հ. Վարդանեանը, քննութեան առնելով այդ թարգմանութիւնների լեզուական առանձնայատկութիւնները, հաստատում է նոր օրինակներով նրանց բառամթերքի նոյնութիւնը, ցոյց է տալիս այդ թարգմանութիւնների մէջ սովորական բառերի այլիմաստ կիրարկման նմանութիւններ, մատնանշում է Ս. Գրոց թարգմանութեան համանման մի շարք հատուածներ եւ, հիմնուելով լեզուական այս դիտողութիւնների վրայ, Ֆր. Կոնիբիրի ենթադրութիւնը գտնում է հիմնաւոր եւ Փիլոնի ու Իրենէոսի թարգմանիչների նոյնութիւնը համարում է վերջնականապէս ապացուցուած։

Պրոֆ. Կոնիբիրից ու Հ. Ա. Վարդանեանից առաջ Իրենէոսի թարգմանութեան խնդիրը փորձել էր լուսաբանել Հ. Ն. Ակինեանը (տե՛ս “Ս. Իրենէոս հայ մատենագրութեան մէջ„, ՀԱ. 1910, Յուլիս, էջ 200—208)։

Հ. Ակինեանը ցոյց էր տուել իր յօդուածում, որ Իրենէոսի հայերէն թարգմանութիւնները կատարուած են ոչ թէ ասորերէն կամ լատիներէն, այլ յունարէն բնագրից։ Գալով թարգմանութեան ժամանակին, նա ենթադրել էր, որ Իրենէոսի գրուածքները թարգմանուած են հայերէնի 604 թուից առաջ, որովհետեւ թարգմանութեան հետքերը պարզ նկատելի են Վրթանէս Քերթողի թղթերից մէկում, որ վերջինս գրել էր Սուրմէն ստրատելատին։ Նոյն յօդուածում Հ. Ակինեանը մատնացոյց էր արել, որ բացի Վրթանէս Քերթողից “Ընդդէմ հեր-

ձուածոց» հայերէն թարգմանութիւնից օգտուել է նաեւ վեցերորդ դարի հեղինակ «Յոհան Կարնոյ քաղաքացին»։ Հ. Ակինեանի վերոյիշեալ եզրակացութիւնները հիմնաւորուած են փաստական ապացոյցներով եւ խիստ կարեւոր էին այն տեսակէտից, որ Իրենէոսի թարգմանութեան ժամանակն իջեցնում էին վեցերորդ դար։ Սակայն անհաւանական էր Հ. Ակինեանի մի ուրիշ ենթադրութիւնը, իբր թէ Իրենէոսի թարգմանիչն է Վրթանէս քերթողը եւ որ թարգմանութիւնը կատարուած է վեցերորդ դարի վերջին տասնամեակին։ Այս ենթադրութիւնը, աւելի ճիշտ գուշակութիւնը, որ հիմնաւորուած չէ բաւարար ու գոհացուցիչ ապացոյցներով, կարելի է այժմ անտես առնել, որովհետեւ Իրենէոսի թարգմանութեան ժամանակը, ինչպէս կը տեսնենք, դրուելու է վեցերորդ դարի երկրորդ կէսից առաջ։

Վերոյիշեալ յօդուածներում Իրենէոսի թարգմանութեան խնդիրը թւում է ինձ մեծ չափով պարզուած։ Ֆր. Կոնիբիրի ու Հ. Վարդանեանի լեզուական լուրջ ու հիմնաւոր դիտողութիւններից յետոյ՝ պէտք է վերջնականապէս ապացուցուած համարել, որ Իրենէոսի հայերէն թարգմանութիւնները ժամանակակից են Փիլոնի թարգմանութիւններին։ Իրենէոսի «Ընդդէմ հերձուածոց» թարգմանութիւնից օգտուել են, ինչպէս ցոյց է տուել Հ. Ն. Ակինեանը, Վրթանէս քերթողը եւ Յոհան Կարնոյ քաղաքացին։ Կարեւոր այս վկայութիւնը դարձեալ աներկ-

բայելի մի նոր ապացոյց է, որ Իրենէոսի թարգմանութիւնները շատ աւելի հին են, քան կարծել էին հրատարակիչներն իրանց առաջաբանում։

Աչքի առաջ ունենալով այս ակներեւ եզրակացութիւնները, նաեւ յունաբան դպրոցի յաջորդական զարգացման այն ընթացքը, որ լուսաբանուած է սոյն իմ ուսումնասիրութեան մէջ, կարծում եմ, որ Իրենէոսի թարգմանութիւնների ժամանակը հնարաւոր է որոշել աւելի ճշգրիտ կերպով, քան այդ արուած է վերոյիշեալ յօդուածներում։

Փիլոնի երկերը, ինչպէս պարզել էինք վերեւ, կազմում են Թրակացու քերականութեան ու Պիտոյից գրքի հետ միասին յունաբան թարգմանութիւնների հնագոյն շերտը եւ թարգմանուած պիտի լինեն Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնից առաջ, ուրեմն՝ ոչ ուշ քան վեցերորդ դարի առաջին կէսը։ Իրենէոսի երկերի հայերէն թարգմանութիւնները, ժամանակակից լինելով Փիլոնի թարգմանութիւններին, պարզ է որ յետ են տարուելու նոյն ժամանակաշրջանը, ուստի նրանց թարգմանման terminus post quem non կամ վերջին եզրը պէտք է ընդունել ոչ թէ 604 թիւը, ինչպէս կարծել էր Հ. Ն. Ակինեանը, այլ 552—564 տարեթուերը, երբ թարգմանուած էր Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը։ Իրենէոսի եւ Փիլոնի թարգմանիչների նոյնացումը կամ ժամանակակցութիւնը մատենագրական այնքան կարեւոր մի

փաստ է, որ աւելորդ չեմ համարում Ֆր. Կոնիբիրի եւ Հ. Վարդանեանի լեզուական վերոյիշեալ համեմատութիւններին աւելացնել նաեւ լեզուական իմ դիտողութիւնները, որ ունեն բոլորովին տարբեր բնոյթ եւ լուսաբանում են յունաբան լեզուի զարգացման յաջորդական ընթացքը։

Խօսելով վերեւ Փիլոնի, Պիտոյից գրքի եւ Թրակացու քերականութեան լեզուական առանձնայատկութիւնների մասին (տե՛ս § 40բ), ես մատնացոյց էի արել, որ այս հնագոյն թարգմանութիւնները գրեթէ չեն գործածել հակ-, տար- եւ փոխ- նախադրութիւնները, որպէս թարգմանութիւն յունական ἀντι-, δια- եւ μετα- նախադրութիւնների։ Արդ՝ իմ այդ դիտողութիւնը կատարելապէս հաստատում են այժմ եւ Իրենէոսի թարգմանութիւնները։ Այդ թարգմանութիւնները եւս չունեն ամենեւին փոխ- նախադրութիւնը, տար- նախադրութիւնը նրանց մէջ եւ ոչ մի անգամ չի համապատասխանում յունարէն δια- նախադրութեան, այլ գործ է ածուած Ոսկեդարեան գրաբարի հետեւութեամբ, ինչպէս տարալսեմ, տարակարծ, տարաժամ եւն, իսկ հակ- նախդրի փոխարէն գործ է ածուած հակառակ-[1], ինչպէս այդ առանձնայատուկ էր

---

1 Հակառակագծեմ Իր. Հերձ. 87, հակառակագրութիւն Իր. Հերձ. 137, հակառակաբանութիւն Իր. Հերձ. 151, հակառակաճառութիւն Իր. Հերձ. 234, բայց հակաճառութիւն Իր. Հերձ. 151 եւ անհակաճառ Իր. Հերձ. 23։ Նախնական ձեռագիրը, թւում է ինձ, որ ունեցել է՝ «հակառակաճառութիւն» եւ «անհակառակաճառ»։

նաեւ Փիլոնի ու Պիտոյից գրքի թարգմանութիւններին։

Վերեւ մենք տեսանք (§ 42, դ 2), որ մի շարք յունաբան բառեր, ինչպէս "տարբեր, տարբերեմ, տարբերութիւն, ներհակ, ներհակութիւն, մակացու, մակացութիւն", առաջին անգամ գործ են ածուել յունաբան թարգմանութիւնների երկրորդ խմբում։ Լեզուական կարեւոր այդ դիտողութիւնը հաստատւում է այժմ եւ Իրենէոսի բառապաշարի քննութեամբ։ Ինչպէս Փիլոնի, Պիտոյից գրքի եւ Թրակացու քերականութեան մէջ, նոյնպէս եւ Իրենէոսի թարգմանութիւններում, յունաբան այդ բառերից ոչ մէկը գործածուած չէ։

Ինչպէս յայտնի է, յունաբան թարգմանութիւններից մի քանիսում փորձ է արուած ստեղծելու իգական սեռի դերանունական յատուկ ձեւեր՝ Սէ եւ Նէ, որոնք գործ են ածուած հետեւեալ թարգմանութիւններում՝ Փիլ. Այլաբ. 156, Փիլ. Հեսս. 6, Պիտ. 375, 377, 380, 381, 383, 384, Ներա Պիտ. 377, Սէ Տիմ. Հակ. 33, 42, զսէ Տիմ. 26, 236, զնէ Տիմ. 35, 219, Նէրա, Նէրայ Տիմ. 222, 226, 283, 292, Սէրայ 194, Նէմա, Նեմա, Նէմայ, Նեմայ Տիմ. 15, 31, 95, 195, 196, 222, 292, Նէրում 105 եւն։ Թրակացու քերականութիւնը չունի իգական սեռի այդ յատուկ ձեւերը, որովհետեւ իգական սեռի այդ դերանունները չկան նաեւ յունարէն բնագրում։ Սակայն Իրենէոսի երկերում այդ դերանունները հանդիպում են

մի քանի անգամ "Ընդդէմ հերձուածոց" թարգմանութեան մէջ՝ Նէ Իր. Հերձ. 91 եւ Սէ Իր. Հերձ. 140, 85։

Նիկ. Ադոնցն իր "Արուեստ Դիոնիսեայ" աշխատութեան մէջ ենթադրում է, որ յիշեալ երկերը, որոնք գործ են ածում Սէ ու Նէ իգական դերանունները, գուցէ աւելի ուշ ժամանակի թարգմանութիւն լինեն, քան այն թարգմանութիւնները, որոնց մէջ այդ դերանունները գործածուած չեն (էջ CLXXVI—CLXXVII)։ Այս խնդիրը ստանում է այժմ բոլորովին հակառակ լուծում։ Սէ եւ Նէ իգական դերանունները գործ են ածուած, ինչպէս տեսնում ենք, յունաբան առաջին շերտի թարգմանութիւններում, նաեւ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ, որ յունաբան երկրորդ շերտի հնագոյն թարգմանութիւնն է։ Իսկ յետագայ թարգմանիչները խորթ ու անսովոր այդ ձեւերը, ըստ երեւոյթին, անընդունելի են համարել եւ այլեւս չեն գործածել։ Այն հանգամանքը, որ այդ դերանունները, բացի հնագոյն շրջանի որոշ թարգմանութիւններից, խիստ յաճախ ու բազմազան ձեւերով գործ են ածուած նաեւ Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ, կարող է թերեւս մի նշան համարուել, որ այս վերջին թարգմանութեան ժամանակը բաւական մօտ եղած պիտի լինէր հնագոյն թարգմանութիւնների ժամանակաշրջանին։ Եթէ յետագայում հնարաւոր լինի իմ այս դիտողութեանն աւելացնել եւ ուրիշ նման փաստեր, այդ դէպքում՝ Փիլոնի խմբի

*թարգմանութիւնները դժուար պիտի լինի յետ տանել հինգերորդ դար, այլ նրանց ժամանակը որոշուելու է վեցերորդ դարի առաջին կիսի սահմաններում։*

*Ինչ վերաբերում է Իրենէոսի թարգմանութիւններին, նրանց հնութիւնը կարծում եմ որ կարելի է համարել վերջնականապէս ապացուցուած։ Եթէ անգամ Փիլոնի ու Իրենէոսի թարգմանիչների նոյնացման դէմ լինեն որեւէ առարկութիւններ, յամենայն դէպս՝ այդ թարգմանութիւնների խմբակցութիւնն ու ժամանակակցութիւնն այնքան պարզ է ու անվիճելի, որ այլեւս ոչ մի կասկած չի կարող լինել, որ Իրենէոսի թարգմանութիւնների ժամանակը պէտք է դնել Տիմոթէոս կուզի հակաճառութիւնից առաջ, հաւանաբար, վեցերորդ դարի առաջին կիսում։*

§ 54. **Նոննոսի մեկնութիւնների հայերէն թարգմանութեան ժամանակագրութիւնը։** — *Նոննոսին վերագրուած մեկնութիւնների նկատմամբ նախ կարեւոր եմ համարում այստեղ յիշատակել, որ* 1904 *թուին, Նոննոսի հայերէն բնագիրը հրատարակելուց յետոյ*[1], *յաջողուել էր ինձ գտնել Էջմիածնի մատենադարանում մեկնութիւնների մի նոր ընտիր օրինակ, որ մինչեւ այժմ մնացած է անյայտ։ Այդ նոր ձեռագրի այժմեան համարն է թ.* 579 (= *Մայր Ցուցակ թ.* 565)։ Յ. *Կարե-*

---

[1] Nonnos, Die Scholien zu fünf Reden des Gregor von Nazianz. Marburg 1903։

նեանցի ցուցակում՝ այդ ձեռագիրը մանրամասն նկարագրուած չէ, այլ նշանակուած է միայն, որ ձեռագիրը ժողովածու է «ութածալ բոլորագիր ի Ստեփան վարդապետէ ի թուին Հայոց ՌԾԲ, ունի յիշատակարան»։ Սակայն այս համառօտ տեղեկութիւնն անգամ սխալ է՝ ՌԾԲ թուականի փոխարէն պէտք է լինի ՉԾԲ (1303 թ.)։ Ինչպէս տեսնում ենք, Նոր ձեռագիրը բաւական պատկառելի է իր հնութեամբ եւ, որքան յիշում եմ, ունի մեծ թուով ընտիր ու նոր ընթերցուածներ։

Նոննոսի մեկնութիւնների հայերէն թարգմանութեան ժամանակը մինչեւ այժմ մնում է դեռ անորոշ։ Հայկազեան Բառգրքի աշխատակիցները համարում են նրա լեզուն «հին եւ ընտիր»։ Այնուհետեւ, թէ այս եւ թէ յունաբան դպրոցի միւս երկերը վերագրուել են, սովորաբար, հինգերորդ դարի Կրտսեր Թարգմանչաց խմբին[1]։ Խորենացու խնդրի հետ միասին աւանդական այս տեսակէտը ենթարկուեց, բնականաբար, խիստ քննադատութեան։ 1904 թուին «Հանդէս Ամսօրեայ» ուսումնաթերթում լոյս տեսաւ Հ. Ն. Ակինեանի ընդարձակ մի յօդուածը, որի մէջ հեղինակը, նորից քննելով այս խնդիրը, ենթադրում է, որ մեկնութիւնները թարգմանուած պիտի լինեն 490 թուից յետոյ եւ եօթե-

1 P. Sukias Somal, Quadro delle opere di vari autori, Venezia 1825, էջ 18. Հ. Գար. Զարբհանալեան, Մատենագարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ 1889, էջ ԻԵ, եւն.

րորդ դարից առաջ[1]։ «Մեկնութեանցս լեզուն, — ասում է Հ. Ակինեանը, — շատ կը նմանի Փիլոնի, կալիսթենեայ գրոց թարգմանութեանց լեզուին եւ ոճին. եւ այս կը դրդէ զմեզ ընդունելու թէ կամ նոյն անձը, որ զանոնք յեզած է ի Հայ — եւ որ դժուարին է — եւ կամ անոր ընկերակիցներէն մին թարգմանած է միեւնոյն ատեն[2]»։ Ն. Ակինեանի դիտողութիւնն ուղիղ է միայն այն չափով, որ Նոննոսի թարգմանութեան մէջ հանդիպում են յաճախ Փիլոնեան խմբի յատուկ բառեր, սակայն այս ընդհանուր նմանութիւնները չեն կարող հիմք ծառայել Փիլոնի ու Նոննոսի թարգմանիչների նոյնացման կամ ընկերակցման։ Նոյն կարգի լեզուական նմանութիւններ նկատելի են, ինչպէս տեսանք, յունաբան նաեւ միւս թարգմանութիւններում (տես վերեւ § 42 եւ § 44) եւ բացատրւում են նրանով, որ յունաբան թարգմանութիւնների երկրորդ ու երրորդ շերտերը ենթարկուել են մեծ կամ փոքր չափով հնագոյն թարգմանութիւնների ազդեցութեանը։ Յունաբան թարգմանութիւնների խմբաւորումները որոշելու համար կարեւոր են ո՛չ այնքան նրանց յատուկ բառապաշարի մասնակի նմանութիւնները, այլ նրանց լեզուական ու քերականական առանձնայատկութիւնների այն բնորոշ ու ուշագրաւ

---

[1] Նոննոսի Մեկնութիւնք Գրիգոր Աստուածաբանի Հինգ ճառից. ՀԱ. 1904, Մայիս էջ 139—146 եւ Յունիս էջ 165—173։

[2] Տե՛ս նոյնը, էջ 166։

տարբերութիւնները, որ մատնացոյց են արուած սոյն ուսումնասիրութեան մէջ[1]։

Մօտենալով խնդրին այս տեսակէտից, կարծում եմ, որ դժուար չէ ապացուցանել, որ Նոննոսի մեկնութիւնները թարգմանուած պիտի լինեն կամ յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւնների ժամանակ կամ Նրանցից յետոյ, ուրեմն՝ Նրա թարգմանման terminus ante quem non կը լինի ո՛չ թէ 490 թիւը, ինչպէս կարծել է Հ. Ակինեանը, այլ վեցերորդ դարի երկրորդ կէսը։

Այս եզրակացութիւնը հիմնաւորելու համար կարեւոր են ինձ թւում լեզուական հետեւեալ դիտողութիւնները։ 1. Նոննոսի թարգմանութեան մէջ գործ են ածուած յունաբան բոլոր այն բառերը եւ նախադրութիւնները, որոնք հանդիպում են միայն յունաբան երկրորդ ու երրորդ շերտի թարգմանութիւններում, ինչպէս օրինակ՝ մակացու Նոնն. 11, $_{7}$, ներհակ 64, $_{4}$, տարբերութիւն 24, $_{18}$, արտունանկեալք 49, $_{7}$, փոխակերպիմ 43, $_{23}$, փոխարկեմ 74, $_{10}$, 80, $_{6}$, փոխաբերութիւն 12, $_{21}$, 35, $_{18}$, հակատուփող

---

[1] Իրենէոսի ու Փիլոնի թարգմանութիւններում ոչ միայն աւելի բազմաթիւ էին ու պայծառ նրանց բառապաշարի նմանութիւնները, այլ եւ նմանութիւնները նկատելի էին նաեւ նրանց ոճի, դարձուածքների, բառերի այլ-մաստ գործածութեան, Ս. Գրքից առնուած հատուածների եւ քերականական ձեւերի մէջ։ Բացի այն նրանց մէջ ես չեմ նկատել լեզուական ու քերականական այն յատուկ տարբերութիւնները, որ իսկոյն աչքի են ընկնում, երբ համեմատութեան են առնում յունաբան թարգմանութիւնների տարբեր խմբերը։

26, $_{23}$՝ 78, $_{15}$՝ Հակադարձիմ 46, $_{15}$՝ Հակակայիմ 69, $_{5}$ եւն։

Վերեւ մենք մատնացոյց էինք արել, որ այս բառերը կազմուած պիտի լինեն յունաբան թարգմանութիւնների երկրորդ շրջանում (տես § 42 Դ, 2)։ Թրակացու քերականութեան, Փիլոնի ու Պիտոյից գրքի թարգմանութիւնների ժամանակ, ըստ երեւոյթին, դրանք դեռեւս գոյութիւն չեն ունեցել (տես վերեւ § 40 բ եւ գ)։ Լեզուական այս դիտողութիւնը կատարելապէս ճշտուեց նաեւ Իրենէոսի թարգմանութիւնների քննութեամբ, որոնք, ինչպէս տեսանք, ժամանակակից են Փիլոնի թարգմանութիւններին (տես վերեւ § 53)։ Եթէ Նոննոսի թարգմանութիւնը եւս լինէր խմբակից Հնագոյն թարգմանութիւններին, պարզ է որ նրա մէջ չէին կարող գործածուած լինել վերոյիշեալ նոր բառերն ու նախադրութիւնները։ Իսկ քանի որ այդ բառերը հանդիպում են Նոննոսի թարգմանութեան մէջ, կարծում եմ, որ կարող ենք եզրակացնել, որ այս մեկնութիւնները ժամանակակից չեն Հնագոյն թարգմանութիւններին եւ թարգմանուած են, ամենայն հաւանականութեամբ, աւելի ուշ։

2. Այս ենթադրութիւնն անելուց յետոյ՝ այնուհետեւ հաւանական է դառնում, որ Նոննոսի թարգմանիչը եւս, ինչպէս եւ յունաբան դպրոցի երկրորդ ու երրորդ շրջանի թարգմանիչները, ըստ երեւոյթին, ծանօթ է եղել Թրակացու քերականութեան ու Պիտոյից գրքին, եւ քերականական ու ճարտասանական յատուկ բառերը

մեկնութիւնների մէջ ծագում են, հաւանաբար, հնագոյն այս թարգմանութիւններից։

Այս տեսակէտից հետաքրքիր է Նոննոսի թարգմանութեան մէջ արձանականի վերաբերեալ մեկնութիւնը, որը գրեթէ համապատասխանում է Պիտոյից գրքի "Յաղագս պարսաւի" տեսութեան։

Նոննոս, էջ 24, 14—17.

"Արձանականն բան պարտաւ է Յուլիանոսի գործոյն. այլ կանոնաւորի ի պարտաւ է արձանականն. քանզի է պարսաւն ի ձեռն ներբողական գլխոյն. որգոն՝ յազգէ, ի վարժից, ի գործոց, ի բաղդատութենէ։ Այլ արձանականն ի ձեռն գործոց միայն է, եւ թէ պատէ է՝ ի բաղդատութենէ"։

Պիտ., էջ 445, 10—14[1].

"Պարսաւ եւ արժան է ի պարսաւելին նախայաւիզ անել, որպէս ի ներբողեանն։ Ի վերայ ածել եւ զազգն։ Նմանապէս եւ զսնունդն՝ զվարս թե-ոնց հաւասար։ Եւ ապա զգործսն զնել։ Եւ զբաղդատութիւնն։ Եւ զ'ի վերայ բանին՝ պատճառին ձայնակցեալ"։

Թրակացու քերականութեան ու Պիտոյից գրքի ազդեցութեան հետքեր կարող են համարուել նաեւ քերականական ու ճարտասանական հետեւեալ բառերը.

ա. ἐνεστώς ներկայ Նոն. 10, 16, Թր. 23, 24, 45 եւն, բ. παρεληλυθώ անցեալ Նոն. 10, 16, Թր. 2 ։ եւն, գ. μέλλων ապառնի Նոն. 10, 16, Թր. 23, 24, 46 եւն, դ. ἐτυμολογία ստուգա-

1 Տե՛ս Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ 1843։

*բանութիւն* Թր. 1, *ստուգաբանեմ* Դոն. 51 $_{5}$, ե. ἐπώνυμον *մականուն* Թր. 17, 19, ἐπωνυμία *մականունութիւն* Դոն. 32, $_{18}$, 41, $_{3}$, զ. παράγομαι *ածանցիմ* Թր. 16, 29, Դոն. 51, $_{9}$ տպուած է՝ «աստուած անցեալ է», պէտք է լինի՝ «ածանցեալ է», է. *գովասանութիւն* Դոն. 16, $_{8}$, *գովասանական* Պիտ. 580, $_{17}$, ը. ἐκφωνέω *արտասեմ* Դոն. 23, $_{6}$, Պիտ. 529, $_{15}$ եւն, թ. ἴαμβος *մեծավերջ* Դոն. 36, $_{20}$, Թր. 43, $_{17}$, *մեծավերջական* Պիտ. 369, $_{14}$։ Ըստ Հ. Ակինեանի Դոնոսի «սղավերջ» բառը (էջ 4, $_{3}$) թարգմանութիւն է յունարէն πυρρίχιος բառի (տես ՀԱ. 1904, էջ 171)։ Ուշադրութեան արժանի է, որ յունարէն նոյն բառը Թրակացու քերականութեան մէջ թարգմանուած է «անգայտ» եւ ոչ «սղավերջ»։

3. Նիկ. Ադոնցն իր «Արուեստ Դիոնիսեայ» աշխատութեան մէջ նկատել էր, որ Թրակացու քերականութեան թարգմանը յունարէն δαφνινη բառը հասկացել է իբրեւ «սարդենի» (էջ 4, $_{8}$), իսկ Դոնոսի մեկնութիւնների մէջ նոյն δάφνη բառը թարգմանուած է «մուրտ» (էջ 71, $_{10}$)։ Ն. Ադոնցի կարծիքով, այս բառի տարբեր թարգմանութիւնը ուշագրաւ մի ապացոյց է, որ Թրակացու ու Դոնոսի թարգմանիչները չեն կարող լինել միեւնոյն անձը։ Այս նկատողութիւնը, որ միանգամայն ճիշտ է, հաստատւում է նաեւ իմ վերոյիշեալ լեզուական դիտողութիւններով։ Դոնոսը եւ Թրակացու քերականութիւնը, ինչպէս տեսանք, թարգմանուած են յիրաւի տար-

բեր ժամանակաշրջաններում եւ, բնականաբար, չեն կարող համարուել միեւնոյն թարգմանչի աշխատութիւն։

4. Նոննոսի թարգմանութիւնը լեզուական իր առանձնայատկութիւններով թւում է ինձ ամենից մօտ ոչ թէ Փիլոնի, այլ Արիստոտէլի «Յաղագս աշխարհի» թարգմանութեան։ Այս երկու թարգմանութիւնն էլ գրուած են յունաբան մատչելի ու հասկանալի լեզուով։ Սրանք երկուսն էլ գործ են ածում յաճախ օտար բառեր, մինչդեռ յունաբան միւս թարգմանութիւնները յունարէն բառերը, սովորաբար, աշխատել են փոխադրել հայերէնի։ Օրինակ՝ ա. αἰθήρ եթեր Նոն. 39, $_{23}$, Ար. Աշխ. 606, $_{15}$, 625, $_{19}$, Եթերային Ար. Աշխ. 606, $_{22}$, բայց արփի Փիլ. Նախ. 11, Պիտ., արփային Փիլ. Լին., Եղից Եւն, բ. ἄμπωτις ամպոլտ Նոն. 46, $_{6.\ 8.\ 12}$, 69, $_{4.\ 9}$, Ար. Աշխ. 616, $_{5}$, գ. θέατρον թէատրոն Նոն. 74, $_{1}$, բայց տեսլարան Փիլ. Լիւս. 136, Ցիմ. Հակ. 315, $_{10}$, դ. ῥήτωρ հռետոր Նոն. 14, $_{4}$, 19, $_{22}$, բայց ճարտասան Փիլ. Տես., Պիտ. 356, $_{26}$, ՅՍտ. 422, $_{18}$, ԴՍՀմ. 177, $_{27}$, ԴՊորփ. 254, $_{26}$, Վերլ. 581, $_{26}$, Եւն, ե. σοφιστής սոփեստէս Նոն. 14, $_{4}$, բայց իմաստակ Փիլ. Նախ. էջ 9, Լին. 205, Պիտ. 347, $_{25}$, Իրեն. Ընդդ. Հերձ. 11, 201, σοφιστικός իմաստական Վերլ. 561, $_{21}$, ԵւՍտ. 32, $_{10}$, զ. ἱπποκένταυρος Իպպակենդովրոս Նոնն. 18, $_{8}$, բայց ձիացուլ Փիլ. Ժբան Եւն, է. ἀνδριάς անդրի, անդրիանդ Նոն. 24, $_{9}$, 70, $_{15.\ 18}$, 71, $_{5.\ 6}$, բայց առնապատկեր Փիլ.

նախ. էջ 34, պյրաձեւ Ներ. Պորփ. 238, $_{8}$, Ը. εἱμαρμένη իմարմինէ Ար. Աշխ. 628, $_{10}$, եւ ուրիշ նման բառեր։

Ուշադրութեան արժանի են այս թարգմանութիւնների մէջ նաեւ մի շարք համանման բառեր, որոնք յունաբան միւս թարգմանութիւններում կամ բոլորովին չեն գործածուած կամ խիստ հազուագիւտ են. օրինակ՝ —. ἀνταρκτικός գերհիւսիսային Նոն. 19, $_{18}$, գերհիւսիսական Ար. Աշխ. 605, $_{17}$, Բ. ἀνάδοσις վերատրութիւն Ար. Աշխ. 612, $_{29}$, ἀναδίδωμι վերատրեմ Նոն. 44, $_{7}$, Գ. յառաջախօս Նոն. 72, $_{11-15}$, Ար. Աշխ. 603, $_{26}$, Դ. πυροειδής հրատեսակ Նոն. 44, $_{7}$, Ար. Աշխ. 606, $_{24}$, Ե. Գիւթանալ Նոն. 70, $_{11}$, Ար. Աշխ. 614, $_{33}$, Զ. χρησμῳδία հրամանատրութիւն Նոն. 64. $_{2-8}$ եւն, Ար. Աշխ. 611, $_{35}$, Է. κοίλωμα փորոն Նոն. 69, $_{8}$, Ար. Աշխ. 615, $_{5}$, Ը. գովասանութիւն Նոն. 16, $_{9}$, Ար. Աշխ. 617, $_{3}$, Թ. κεραυνός ամպահարութիւն Նոն. 56, $_{5}$ եւն, Ար. Աշխ. 618, $_{10}$, Ժ. ἐξοχή արտօնութիւն Ար. Աշխ. 621, $_{10}$, արտունանկեալք Նոն. 49, $_{5-7}$, արտունութիւն ὑπεροχή ԴՍՀՄ. 154, $_{6}$, արտունող ԸՍտ. 373, $_{20}$ եւն. ԺԱ. յաւդաւորութիւն Նոն. 48, $_{25}$, Ար. Աշխ. 616, $_{37}$, 617, $_{9}$, 622, $_{35}$, ԺԲ. դիւրափոփոխ Նոն. 69, $_{12}$, Ար. Աշխ. 625, $_{24}$, ԺԳ. գետօրէն Նոն. 44, $_{6-10}$, Ար. Աշխ. 614, $_{26}$, տես նաեւ գլխօրէն Ար. Աշխ. 610, $_{11}$, գծօրէն Ար. Աշխ. 613, $_{21}$։

Վերեւ մենք տեսանք, որ թէ Նոննոսի մեկնութիւնները եւ թէ Արիստոտելի "Յաղագս

աշխարհի„ գրուածքը չեն կարող թարգմանուած լինել յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններից առաջ եւ նրանց թարգմանման terminus ante quem non պէտք է ընդունել վեցերորդ դարի երկրորդ կէսը։ Ժամանակագրական կարեւոր այս եզրակացութիւնը, ինչպէս եւ նոյն թարգմանութիւնների վերեւ մատնանշուած լեզուական նմանութիւնները, կարծում եմ՝ որ ուշագրաւ ու հաւանական նշաններ են, որ Նոննոսի մեկնութիւնները խմբակից ու ժամանակակից են ոչ թէ Փիլոնի, այլ “Յաղագս աշխարհի„ թարգմանութեանը։

Նոննոսի թարգմանութեան terminus post quem non սահմանը որոշելու համար Հ. Ն. Ակինեանը Դաւիթ փիլիսոփայի քերականի մեկնութեան մէջ մատնացոյց էր արել[1] հետեւեալ հատուածը. “Իսկ ողբերգութիւննոխազերգութիւն ասի ըստ յունականին առ ի պաշտաւն առեալ Դիոնիւսեայ ու մեծի տուողի որթոյ, որ է պատմութիւն յայտնի„[2]։ Հ. Ակինեանի կարծիքով, “որ է պատմութիւն յայտնի„ խօսքերով Դաւիթ փիլիսոփան, ըստ երեւոյթին, ակնարկում է Նոննոսի մեկնութիւնների Գ ճառի կա գլուխը (էջ 50)։

Ինձ թւում է, որ անկախ նոյն իսկ Դաւիթ փիլիսոփայի վերոյիշեալ վկայութիւնից, որ կարող է վիճելի համարուել, Նոննոսի մեկնութիւն-

---

1 ՀԱ. 1904, էջ 167։

2 Տե՛ս “Արուեստ Դիոնիսեայ„ էջ 69։

*ները եւ Արիստոտէլի "Յաղագս աշխարհի" գրուածքը Թարգմանուած պիտի լինեն, հաւանաբար, վեցերորդ դարի երկրորդ կիսում կամ ամենաուշը՝ եօթերորդ դարի սկիզբներում։*

§ 55. Մովսէս Խորենացու Թուղթը Ե-Յովհաննու եպիսկոպոսին Ապացոյցը [illegible] են յանձնաբան երկրորդ չեղած Թարգմանութիւններից յետոյ — *"Գիրք Թղթոցում" տպուած են կրօնադաւանաբանական երկու Թուղթ՝ "Երանելի մեծի քերդողահաւրն Մովսէսի Խորենացի եպիսկոպոսի"*[1] (*էջ* 22—28) *եւ "Երանելոյն Յովհաննու հայոց եպիսկոպոսապետի, Ապացոյց յերկուց բնութեանց ասել զփրկիչն եւ կամ մի բնութիւն"* (*էջ* 29—40)։ *Այս Թղթերի հեղինակների ու ժամանակի խնդիրը, Թէեւ յաճախ քննութեան նիւթ է եղել բանասիրական նորագոյն աշխատութիւններում, բայց մինչեւ այժմ դեռ որոշուած ու պարզուած չէ։*

*Հ. Ն. Ակինեանը "Տիմոթէոս կուզ հայ մատենագրութեան մէջ" իր յօդուածում այս երկու Թուղթը համարում է տարբեր դարաշրջանների եւ իրարից անկախ գրութիւններ* (*տե՛ս* ՀԱ. 1908, *սեպտեմբեր, էջ* 261 *եւ հոկտեմբեր, էջ* 302)։ *Յովհաննու եպիսկոպոսապետի Ապացոյցը նա ենթադրում է յունարէնից Թարգմանուած վեցերորդ դարի առաջին քառորդին, իսկ*

---

1 *Տե՛ս նաեւ* Ա. Տէր-Միքայէլեան, *Սամուէլ քահանայի Անեցւոյ հաւաքմունք, Վաղարշապատ* 1893, *էջ* 255—261։ *Նոյն գրութեան վերնագիրն է այստեղ՝ "Երանելոյն մեծի քերթողահօրն Մովսէսի եպիսկոպոսի"* (*էջ* 255)։

Մովսէս Քերդողահօր գրութիւնը, որը Տիմոթէոս Կուզի թարգմանութիւնից ունի Նրեքթէոսի հատուածը, նա համարում է ինքնուրոյն հայերէն աշխատութիւն, գրուած Տիմոթէոս Կուզի թարգմանութիւնից յետոյ. ուստի եւ այս գրութեան terminus ante quem non նա ընդունում է վեցերորդ դարի երկրորդ կէսը։

Ենթադրելով Յովհաննու եպիսկոպոսապետի Ապացոյցը յունարէնից թարգմանուած, Հ. Ակինեանը, ըստ երեւոյթին, այդ գրութիւնը չի համարում հայոց եպիսկոպոսապետի աշխատութիւն։ “Պատճառք Դ. ժողովոյն երկաբնակացն„ գրուածքում, որ նա վերագրում է Վրթանէս Քերդողին, կայ նոյնպէս Յովհաննու եպիսկոպոսապետի ինչ որ մի թղթի յիշատակութիւն եւ Ապացոյցը, նրա կարծիքով, նոյնացուելու է հենց այս թղթի հետ։ Կարեւոր այդ յիշատակութիւնը գտնւում է Պատճառքի հետեւեալ հատուածում՝ “Եւ որ յանդիմանեն եւ նզովեն զժողովն եւ զտումարն՝ թուղթն Զենոնի ուղղափառ թագաւորի, որ կոչի Հենատիկոն եւ թուղթն երանելոյ Անաստասայ թագաւորի, եւ գիրք Տիմոթէոսի Աղեքսանդրացւոյ, եւ թուղթ Յովհաննու եպիսկոպոսապետի, եւ թուղթն Պետրոսի Անտիոքացւոյ, եւ պատճառն իսկ, եւ այլ բազում թուղթք ուղղափառաց„ (տե՛ս “Գիրք թղթոց„ էջ 126)։

Հ. Ակինեանը կարող էր իր կարծիքն աւելի եւս հիմնաւորել, եթէ մատնացոյց անէր Անաստաս կայսեր թղթում հետեւեալ հատուածը՝

“Զայս սահման ընկալան եւ սուրբ Հարքն ՃԾ-քն որ ի Կոստանդինուպօլիս ժողովեցան վասն սրբոյ Հոգւոյն։ Ըստ նմին եւ երանելի ժողովն որ յԵփեսոս ժողովեցան եւ նզովեցին զՆեստորիոս հերձուածող եւ զամենայն որ ըստ նմա խորհին եւ հաւատան, որպէս եւ Թուղթն որ կոչի Հենոտիկոն Զենոնի ուղղափառ Թագաւորի, նոյնպէս եւ Թուղթն երանելոյն Յովհաննու եպիսկոպոսապետին Աղեքսանդրի՝[1] որ ցուցանեն այսպէս. յորում նզովէ զտումարն Լեւոնի եւ զժողովն Քաղկեդոնի, որ անցին ընդ նոյն սահման, եւ երկուս բնութիւնս զկնի միաւորութեանն սահմանեցին վասն Քրիստոսի[2]„ (տե՛ս “Գիրք Թղթոց„ էջ 277)։ Անաստասի այս Թղթում Յովհաննէս եպիսկոպոսապետը, թւում է ինձ, որ նոյն անձն է, որ յիշուած է վերեւ Բթանէս քերդողի պատճառքում։ Բայց այս վերջին վկայութիւնը խիստ կարեւոր է այն տեսակէտից, որ Յովհաննէսն անուանուած է այստեղ “եպիսկոպոսապետ Աղեքսանդրի„։ Եթէ Ապացոյցը վերագրուի “Յովհան-

---

1 “Կնիք Հաւատոյ„ ժողովածուի առաջաբանում Կարապետ եպիսկոպոսը ենթադրում է, որ այս վկայութեան մէջ ակնարկուած է Երեւի Յովհաննէս Բ.-ի Սեւերոսին գրած Թուղթը (513—515 Թ.), էջ LXVII։

2 “Կնիք Հաւատոյ„ ժողովածուի մէջ նոյն այս հատուածն առաջ է բերուած տարբեր խմբագրութեամբ՝ “Որպէս Թուղթն, որ կոչի Հենոտիկոն՝ Զենոնի ուղղափառ Թագաւորի, նոյնպէս եւ Թուղթն Յովհաննու եպիսկոպոսապետին Աղեքսանդրի՝ այն, որ ցուցանէ այսպէս, յորում նզովէ զտումարն Լեւոնի եւ այլ անցին ընդ նոյն սահման եւ երկուս բնութիւնս զկնի միաւորութեանն սահմանեցին ի վերայ միոյն Քրիստոսի, Էջմիածին 1914, էջ 128։

նու եպիսկոպոսապետին Աղեքսանդրի„, պարզ է որ այդ գրութիւնը չի կարող լինել Յովհաննու հայոց եպիսկոպոսապետի աշխատութիւն, այլ պէտք է համարուի թարգմանութիւն, ինչպէս ենթադրել է Հ. Ն. Ակինեանը։ Սակայն Յովհաննու եպիսկոպոսապետի խնդիրը շատ աւելի բարդ է, քան կարելի էր ենթադրել։ Հ. Ակինեանի վերոյիշեալ եզրակացութիւնների դէմ եղան մի շարք առարկութիւններ։

1913 թուին "Շողակաթ„ հայագիտական ժողովածուի մէջ լոյս տեսաւ Գ. Տէր-Մկրտչեանի յօդուածը՝ "Հայ մատենագրութեան հնագոյն թուականները„ (տես "Շողակաթ„, Վաղարշապատ 1913, էջ 154—163)։ Այս յօդուածում Գ. Տէր-Մկրտչեանը մատնացոյց է անում, որ "Կնիք հաւատոյ„ ժողովածուի մէջ մի մեծ հատուած է բերուած Յովհաննու եպիսկոպոսապետի Ապացոյցից այսպիսի վերնագրով՝ "Երանելւոյն Յովհաննու Մանդակունւոյ Հայոց կաթուղիկոսի՝ ի հակաճառութենէն քաղկեդոնի ժողովոյն, որ ասի Ապացոյց„ ("Կնիք Հաւ.„, էջ 130, համեմատէ "Գիրք թղթոց„, էջ 33)։ Յենուելով այս վերջին վկայութեան վրայ եւ ընդունելով Տիմոթէոս Կուզի Հակաճառութիւնը թարգմանուած 480—484 քառամեակին, Գ. Տէր-Մկրտչեանը եզրակացնում է, որ Մովսէս քերթողահայրը պիտի լինի Փարպեցուց յայտնի Մովսէս փիլիսոփոսը, իսկ Ապացոյցի հեղինակ Յովհաննէս հայոց եպիսկոպոսապետը պիտի համարուի Բաբգէն կաթուղիկոսի նախորդը՝ Յովհան

Մանդակունին: «Կնիք Հաւատոյ» հրատարակութեան իր առաջաբանում Կարապետ եպիսկոպոսը յամառութեամբ պաշտպանում է Գ. Տէր-Մկրտչեանի այս տեսակէտը եւ աւելացնում նաեւ իր կողմից, «որ Յովհաննէս եպիսկոպոսապետի գրութիւնը գործ է ածում Տիմոթէոսի Հակաճառութեան միայն յատուկ բառեր ու դարձուածներ (այլ ում զՅիսուսն գոլով արտաքրելի, եւ այլ զՔրիստոսն՝ անապակ եւ անչարչարելի, զուգաճանապարհութիւն, ախտակիր, աստուածվայելչաբար, անբաժ, տնտեսութիւն եւայլն.) եւ գաղափարներով էլ պտտւում է նորա դաւանաբանական ըմբռնմանց շրջանակի մէջ» (էջ LIX):

Հ. Գ. Տէր-Մկրտչեանի եւ Կարապետ եպիսկոպոսի վերոյիշեալ եզրակացութիւնը, ինչպէս տեսնում ենք, հիմնուած է, գլխաւորապէս, Տիմոթէոս Կուզի Թարգմանութեան Թուականի վրայ: Նրանց ապացոյցները երկսայրի են այն տեսակէտից, որ, Կուզի Թուականի փոփոխմամբ, այդ ապացոյցներն իսկոյն պիտի դառնան իրանց դէմ, որովհետեւ երկուսն էլ ընդունում են ու պնդում, որ Մովսէս քերդողահայրը օգտուել է Հակաճառութեան հայերէն թարգմանութիւնից, իսկ Կարապետ եպիսկոպոսը մատնացոյց է արել Տիմոթէոսի թարգմանութեան յատուկ բառերը նաեւ Ապացոյցի մէջ: Արդ՝ աչքի առաջ ունենալով վերոյիշեալ մեր լեզուական եւ այլ դիտողութիւնները, կարծում եմ, որ Տիմոթէոսի թարգմանութեան ժամանակը կարելի է համա-

րել վերջնականապէս պարզուած (տե՛ս վերեւ § 38, § 42 եւն)։ Տիմոթէոսի Հակաճառութիւնը թարգմանուած է ոչ թէ 480—484 քառամեակին, այլ 552—564 թուականների ժամանակամիջոցում։ Պարզ է ուրեմն՝ որ Հ. Գ. Տէր-Մկրտչեանի ու Կարապետ եպիսկոպոսի վերոյիշեալ պնդումները պէտք է համարուեն սխալ։ Մովսէս Քերթողահօր եւ Յովհաննու եպիսկոպոսապետի թղթերը, եթէ նրանք օգտուել են Հակաճառութեան թարգմանութիւնից, չեն կարող յետ տարուել ոչ հինգերորդ դար, ոչ էլ անգամ վեցերորդ դարի առաջին կէսը։ Սխալ է նոյնպէս Հ. Ն. Ակինեանի կարծիքը. իբր թէ կրօնա-դաւանական այս թղթերը զանազան ժամանակաշրջանների գրուածքներ են։ Հ. Գալուստ Տէր-Մկրտչեանը վերոյիշեալ իր յօդուածում ցոյց է տուել, որ այդ գրութիւնները դժուար է բաժանել միմեանցից։ Մովսէս Քերթողահօր թուղթը ուղղուած է, նրա կարծիքով, Յովհաննէս եպիսկոպոսապետին եւ այս վերջինս իւր Ապացոյցը գրելիս աչքի առաջ է ունեցել Քերթողահօր գրութիւնը։ Գալուստ Տէր-Մկրտչեանի այս եզրակացութիւնը, որ հիմնուած է փաստական մի շարք դիտողութիւնների վրայ (տե՛ս "Շողակաթ„, էջ 159), հաստատւում է ըստ իս այդ գրութիւնների դաւանաբանական ընդհանուր բովանդակութեան, յատուկ մտքերի, նաեւ լեզուի ու ոճի ակներեւ մերձակցութեամբ։ Շատ ճիշտ է ուրեմն Գ. Տէր-Մկրտչեանի առարկութիւնը, որ չէ կարելի Յովհաննու եպիս-

կոպոսապետի գրութիւնը թարգմանուած համարել վեցերորդ դարի սկզբներին իսկ քերդողահօր թղթի ժամանակը յետ տանել վեցերորդ դարի երկրորդ կէսը կամ եօթերորդ դար։ Այս թղթերը, ինչպէս տեսնում ենք, ժամանակակից երկեր են, բայց ո՛չ Մովսէս փիլիսոփոսի եւ Յովհան Մանդակունու գրուածքներ, ինչպէս ենթադրել է Գ. Տէր-Մկրտչեանը։

Որ այդ երկերը չեն կարող լինել հինգերորդ դարի գրուածքներ, այդ երեւում է ըստ իս նախ նրանց բովանդակութիւնից ու նրանց յունաբան լեզուի առանձնայատկութիւններից։ Ուշադրութեան արժանի է ամենից առաջ, որ Մովսէս քերդողահօր վերագրուած թուղթը դաւանաբանական իր մեկնութիւնները հիմնաւորում է յաճախ արիստոտելեան իմաստութեան գաղափարներով։ Նոյն թղթի մէջ յիշւում է նոյն իսկ "փիլիսոփայական Ստորոգութիւնք" ինչ որ երկ հետեւեալ հատուածում. "Կան որոյ ի դէպ եւ յոյժ ճահողագոյն թուի խոստովանողաց մի բնութիւն ասելով. զի եւ յաջմէ Նստեալ համեմատութեամբ մի Տէր քարոզի։ Ըպ՛թէ հակառակս ինչ վարկանիցին ոմանք ղպատասխանեալդ անկարելի համարելով, որպէս թէ երկուս բնութիւնս պատշաճիցէ ասել՝ գիտասցեն զի զնոյն զանհնարութիւն եւ ի մարդումն գոյ նկատելով ճանաչի[1] ո՛չ միայն ի փի-

---

[1] Սամուէլ Անեցի, էջ 257, ունի՝ "եւ ի մարդուն գոյ հնար նկատելով ճանաչել»."

լիսոփայական ստորոգութիւնն, այլեւ սուրբ գիրք աստուածաշունչք» («Գիրք Թղթոց», էջ 23—24)։ «Փիլիսոփայական Ստորոգութիւնք» երկը եւ «Ստորոգութիւնք» յունարան յատուկ բառը, որ յիշատակուած է այս հատուածում, մի նշան է, որ Քերդողահօրը վերագրուած Թղթի ծագումը պէտք է դնել Արիստոտէլի Ստորոգութեանց Թարգմանութիւնից յետոյ, ուրեմն՝ վեցերորդ դարի վերջին քառորդին կամ աւելի ուշ։ Նմանապէս եւ «Ապացոյցի» հեղինակը, թւում է ինձ, որ ծանօթ է Արիստոտէլի իմաստասիրութեան եւ էակաց քննութեան մասին ունի հետեւեալ ուշագրաւ ակնարկութիւնը. «Բայց կամիմ փոքր ի շատէ անցանել բանիւ յաղագս ճառի բնութեանցն, զոր ոմանք չարաչար ի կիր առեալ վարեցան, զամպաստանութիւնսն ի վայելչապէս ճառաւղսն կամելով թափել։ Բայց նախ ճանաչել պարտ է, զի ոչ յիշատակեցաւ բնութեանցդ անուն՝ ի դէմս Քրիստոսասէր ուղղափառաց, այլ չարաչարն պատառմա՛ք խոստովանողաց. զորս անվրէպ գոյ ասել, քան զընաւես անաւրինագոյնս եւ տարագրեալս յուխտէ աւետեացն, որք ըստ գոյացութեանց իմն բնախաւսելով, զէակս քննել առին ի կիր, զերկրիս խորհելով ընդ նոյն շաղեալք, ի խլրդենի կուրութեան հաղբս» («Գիրք Թղթոց», էջ 31)։

Այս հատուածում «որք ըստ գոյացութեանց իմն բնախաւսելով, զէակս քննել առին ի կիր» խօսքերով ակնարկւում են ըստ

իս Արիստոտէլի իմաստասիրական-տրամաբանական երկերը, որովհետեւ այդ երկերն էին քննում էակաց խնդիրը “ըստ գոյացութեանց բնախաւսելով”։ Հատուածի բովանդակութիւնից երեւում է, որ կրօնա-դաւանական վէճերը Քրիստոսի բնութեանց մասին սերտ կապուած են եղել արիստոտելեան իմաստասիրութեան հետ եւ այդ վէճերը յարուցուած են եղել էակաց քննութեան ազդեցութեամբ։ Ինչպէս վերեւ տեսանք, “էակաց” եւ “գոյացութեանց” խնդիրը քննուած է, գլխաւորապէս, Արիստոտէլի Ստորոգութեանց երկում։

Արդ՝ եթէ “Ապացոյցը” համարուի հայ հեղինակի աշխատութիւն, թւում է ինձ, անհաւանական չի լինի ենթադրել, որ նրա ժամանակը, դրուելու է արիստոտելեան հնագոյն թարգմանութիւններից յետոյ եւ նրա երկը եւս, ինչպէս եւ քերդողահօր վերագրուած թուղթը, յօրինուած պիտի լինի Արիստոտէլի Ստորոգութեանց թարգմանութիւնից յետոյ։

Եթէ վերոյիշեալ թղթերը թարգմանուած համարուեն յունարէնից, նրանց թարգմանման ժամանակը դարձեալ դրուելու է յունաբան երկրորդ շերտի թարգմանութիւններից յետոյ, ուրեմն՝ վեցերորդ դարի վերջերին կամ աւելի ուշ։ “Ստորոգութիւնք” յունաբան բառը, որ հանդիպում է քերդողահօր թղթում, չեմ կարծում, որ գոյութիւն ունենար Արիստոտէլի Ստորոգութեանց թարգմանութիւնից՝ 576 թուից առաջ։ Բացի այդ՝ նոյն թղթերում գործ են

ածուած վերեւ յիշուած այն բառերն նախադրութիւնները, որոնք, ինչպէս տեսանք (§ 40 բ եւ գ, § 42 դ, [3], § 53 եւն), կազմուած պիտի լինեն յունաբան թարգմանութիւնների երկրորդ շրջանում. ինչպէս օրինակ՝ աններհական, էջ 23, 3, տարբերութիւն 24, 6, 30, 33, 35, 21, փոխարկէ 38, 6: Եթէ լեզուական այս դիտողութիւններին աւելացնենք նաեւ այն, որ այս թղթերում, ինչպէս վերեւ ասուեց, հանդիպում են յաճախ Տիմոթէոսի Հակաճառութեան յատուկ բառեր եւ դարձուածներ, կարծում եմ, դժուար չի լինի համոզուել, որ այս թղթերի յօրինման կամ թարգմանման terminus ante quem non որոշուելու է վեցերորդ դարի վերջին քառորդը: Թէեւ չունենք որոշ վկայութիւններ կամ տուեալներ նաեւ սրանց terminus post quem non-ը որոշուելու համար, բայց նրանց բովանդակութիւնը եւ յունաբան լեզուի հնութեան մի քանի նշանները հիմք են տալիս ինձ ենթադրելու, որ այս թղթերի ժամանակը դժուար թէ կարելի լինի տանել մինչեւ ութերորդ դարը, այս նրանց մօտաւոր ժամանակը հաւանական է ընդունել կամ վեցերորդ կամ ամենաուշը՝ եօթերորդ դարի սկզբներում:

## ԷՋՄԻԱԾՆԻ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ՀՆԱԳՈՅՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

**Թ. 1890, 14 Էջմ. Մատ. = Մայր Ցուցակ, Թ. 1848։**

*Թուղթք*՝ 123։ — *Մեծութիւն*՝ 12,5×8,5 *սմ.*։ — *Տողք*՝ 19—20։ — *Նիւթ*՝ *ողորկ հաստ թուղթ*։ — *Գիր*՝ *բոլորգիր*։ — *Կազմ*՝ *կաշեպատ տախտակ, կազմի վրայ կապիչների հետքեր*։ — *Հանգամանք*՝ *Թուղթը խոնաւութիւնից վնասուած. սկիզբէն մի քանի թերթ պակաս է եղել, թերի մասը յետոյ լրացրած բարակ թերթերի վրայ բոլոր գրով* (*Թ.* 2 *եւ* 3)։ — *Թուական*՝ *ՈՂԲ*=1243։ — *Գրիչ*՝ *Յովհաննէս քահանայ*։ — *Ստացող*՝ *Պետրոս՝ սպասաւոր սուրբ Նշանի Հաղբատայ*։ — *Տեղ*՝ *«ընդ հովանեաւ սուրբ Նշանիս Հաղբատայ»*։

Բովանդակութիւն.

1. *Դաւթի փիլիսոփայի Ներգինացոյ առաջաբանութի սհմնց իմաստասիրութեն* (*էջ* 2*ա*—119*բ*, *պրակք Ա—ԻԳ*)։

*Էջ* 119*բ վերջք. Արդ այսոցիկ այսպէս եղոց շնորհեաց Ած ղիմաստասիրութի վն*

*զարդարելո զմարդկայինս հոգի։ Այդ զգիտական զաւրութիւս զարդարէ ի ձեռն տեսականին իսկ զկենդանականսն ի ձեռն գործականին որպէս զի մի զսուտ գիտութի ի կարծեաց ընկալցուք եւ մի չար ինչ գործեսցուք։*

*Ընդ այսոսիկ եւ առաջիկա բանք իմաստասիրութե։*

*Դաւթի մեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ առարկութեցն չորից Պիհռոնի իմաստակի եւ սահմանք եւ տրամատութիւք իմաստասիրութե։*

*Հնագոյն այս ձեռագրում՝ թէ գլուխների բաժանումը եւ թէ բնագիրը տեղ տեղ տարբեր են* 1833 *թուին Վենետիկում հրատարակածից։*

2· *էջ* 119 *բ*—121 *ա· Ամենայն չար տանջելի· ոչ ոք տանջեալ անապական...*

*Վերջ· Եւ ընդ բամբասանաւք է սատանա ապա ուրեմն ոչ է անեղ։*

*Այս գծածք հանդիսադիր խմբի յառաջագոյն տաւից տրամախոհ իմաստասէր մակացու արանց ի Դաւթէ եռամեծէ ենթադրեցաւ։*

Յիշատակագրութիւնք·

1· *էջ* 48 *բ Ներքեւի լուսանցքի վրայ նոյն գրչէ·*

*Զածաչնորհ եւ զպատուական վարդապետն Պետրոս յիշեցէք յաղաւթս ընդ...*

2. Էջ 121ա—122բ ձեռագրի գլխաւոր յիշատակարան նոյն գրչէ.

*Փառք ամենասբ երրորդութեն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:*

*ԶՍահմանաց զգիրս զոր արարեալ է մեծ փիլիսոփայն Դաւիթ ընդդէմ հակառակադացն որք կամեցան բառնալ զիմաստասիրութին Ակադեմեանցն Պղատոնի եւ Ճեմականացն խաղաղացոյց զնոսա ի խռովութենէն եւ ասաց եթէ գոյ իմաստասիրութի եւ է եւ ճշմարիտ է եւ զաւրինակս առ մեզ հաստատեաց Հայաստանեայս:*

*Որոյ ես ծեր ոմն Պետրոս սպասաւոր սբ Նշանիս Հաղբատայ բաղձանաւք սիրոյ ետու գրել Յոհաննիսի կրաւնաւոր քահանաի իմով արդեամբք առ ի յուսումն մակացողաց:*

*Արդ որք աւգաիք ի սմանէ յիշեցէք ի սրբամատոյց յաղաւթս ձեր զիս զմեղաւորս Պետրոս եւ Ած զձեզ յիշեսցէ ի բարի եւ ի կատարման սորա ասացէք զերանի ում թողութի եգեւ մեղաց եւ զՔս որդի Այ:*

*Գրեցաւ գիրքս ընդ հովանեաւ սբ Նշանիս Հաղբատայ, ի Թուիս ՈՂԲ եւ աւանդեցաւ սմա. մի ոք իշխեսցէ հանել զսա աստի:*

*Կազմեցաւ եւ ձեռամբ իմով Պետրոսի:*

Թ. 1943, ն Էջմ. Մատ. = Մայր Ցուցակ, Թ. 1901։

*Թուղթք՝* 251։ — *Գրութիւն՝* 13×8 *սմ.*։ — *Տողք՝* 21։ — *Նիւթ՝ ողորկ հաստ թուղթ*։ — *Գիր՝ բոլորգիր. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր թանաքով*։ — *Լուսանցազարդք՝ էջ* 1 *ա՝ խորան ու զարդանկար, էջ* 141 *ա՝ զարդանկար*։ — *Կազմ՝ կաշեպատ տախտակ. կոպիճներից մնացել են միայն հետքեր կազմի վրայ*։ — *Մագաղաթեայ պահպանակ՝ սկիզբէն եւ վերջէն երկ-երկու թերթ. մագաղաթեայ երկաթագիր Աւետարանի մնացորդ*։ — *Հանգամանք՝ լաւ*։ — *Թուական՝* ՋԴ=1255։

**Բովանդակութիւն.**

1. *էջ* 1 *ա*—139 *բ. Ստորոգութի Արիստոտէլի որ կոչի յունարէն կատիղորիս*։

*Արիստոտէլի Ստորոգութեանց բնագրի ամէն մի հատուածին կամ պրակին հետեւում է նոյն հատուածի կամ պրակի մեկնութիւնը «մեկնիչ» վերնագրի տակ*։

1833 *թուի Վենետկեան հրատարակութեան մէջ Ստորոգութեանց մեկնութեան սկիզբը պակաս է*։ *Տես էջ* 409 *ծանօթութիւն՝ «Զկիսամասնեայ մնացուած մեկնութեան Ստորոգուեցն Արիստոտելի ի միոյ եւեթ թերակատար օրինակէ, որ առձեռն գտաւ,*

*յարեմք աստանօր կարօտք անթերի օրինակաց»: Սոյն հնագոյն անթերի օրինակում Վէնետիկի տպագիր հրատարակութեան բաց թողած մասը կազմում է էջ 1 ա—89 ա:*

*Սկիզբ էջ 1 ա. Համանունք ասին՝ որոց անուանք միայն հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյացութեանն այլ. որգան՝ կենդանի՝ մարդն եւ գրեալն: Քանզի սոցա անուն միայն հասարակ, իսկ ըստ անուանն բան գոյացութեանն այլ: Քանզի եթէ բացատրեսցէ ոք՝ զինչ է նոցա իւրաքանչիւր ուրուք կենդանին գոլ, յատուկ իւրաքանչիւր ումեք բան բացատրեսցէ: — Մեկնիչ:*

*Համանունութիւն լինի ըստ երկուս յեղանակս՝ ըստ պատահման կամ մտածութեան. մտածութիւնն ըստ պատուոյ, ըստ յեղինակի, ըստ յուսոյ, ըստ աղաւթից, ըստ կերպարանի, ըստ նմանութեան. իսկ միայն երբեւ զարեգակն միանձն. կամ ըստ լծորդին պակասութեան որպէս միաձորձ կամ որպէս նահատակ:*

*Վերջ՝ էջ 139 բ. Եւ այսուիկ եղիցի գյոլովից եւ զտորբերեցելոց ի միմեանց տեսակաց ստորագեալ ունելս. որպէս զի եղիցի սեւ՝ ընդունելով զսահման սեւի. քանզի էր սահման սեւին որպէս ասացաւ. գյոլովիցն եւ զտարբերեցելոց տեսակաւ ի ներում զինչէին ստորոգեալ:*

*Կատարեցաւ գիրք Ստորոգութեանցն ասացեալ եռամեծին Արիստոտէլի հաւատա-*

րեմ վարդապետի եւ ուղղափառ իմաստասիրի, զոր փցուն մատամբ գրեցի:

2. էջ 141 ա—251 ա. Ցաղագս մեկնութեան, որ կոչի Պերիարմէնիաս, ասացեալ Արիստոտէլի:

Այս վերնագրի վրայ նօտր գրով եւ ուրիշ թանաքով գրուած կայ մի այլ վերնագիր, որը սովորական է նորագոյն ժամանակների օրինակներում.

Սկիզբն եւ նախադասութի (՞) գրոցն որ ասի ըստ յունաց Պերիարմէնիաս եւ հայերէն՝ յղգս մեկնութ: Արտադրեալ ի մեծ իմաստնոյն Արիստոտելէ, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթայ ներգինացւոյ:

Սկիզբ էջ 141ա. Նախ արժան է գնել, զի՞նչ է անուն եւ զի՞նչ բայ, ապա զի՞նչ է բացասութիւն, եւ ստորասութիւն, եւ բացերեւութիւն, եւ բան:

Ծառեցաւ մեզ երբեմն, եթէ է ամենայն բանական իրողութեանս այսորիկ ակնկալութիւն առ ապացուցական շարաբանութիւնսն հասանել. այլ վս զի բազում պաարանք ըն շարաբանութիւնսն լինի, հարկաւոր է զիւրաքանչիւր ոք նոցա գիտել:

«Ցաղագս մեկնութեան» բնագրի ամէն մի պրակին հետեւում է նոյն պրակի մեկնութիւնը:

Վենետիկի տպագիր հրատարակութեան մէջ պակաս է 15 գլուխ: Տես էջ 512 ծանօթութիւն. «Ցօրինակին պակասեն թուղթք

*քսան եւ երեք»։ Անթերի այս ձեռագրում Վենետկեան տպագրի բաց թողած մասը բռնում է էջ* 165 *ա*—205 *բ*։

Յիշատակագրութիւնք·

1· *էջ* 251 *ա ձեռագրիս վերջում յիշատակարան նոյն գրչէ·*

*Փառք սբ Երրորդութեան կատարելոյ եւ միոյ· ՋԴ գրեցաւ ի Թուականիս։*

2· *Հետեւեալ դատարկ երեսի վրայ նոտր գրով այլ գրչէ·*

*Ի վայելումն Մելքիսէդ վդպին ի դառն եւ ի նեղ ժմն Բեյլին։*
*Կնիք՝ Քի Ծռ Գրիգոր վրդպտ ՌՄԼԳ։*
*Ի վայելումն Ղազար վրդպին եւ ի յիշատակ իմոյ անձին ի ՌՄԽԶ Թուին եւ յնվրի ԺԵ–ին ի Կարին։*

**Թ. 1889, 18 ԷՋՄ. Մատեն. = Մայր Ցուցակ, Թ. 1847։**

*Թուղթք՝* 345։ — *Գրութիւն՝* 14×10 *սմ*·։ — *Տողք՝* 25։ — *Նիւթ՝ ողորկ հաստ թուղթ*։ — *Գիր՝ բոլորգիր· լուսանցքների վրայ մեկնութիւններ նոտր գրով· Նորոգուած թերթերը* 73 *եւ* 74 *նոյնպէս նոտր գրով։ Վերնագրերը, սկզբնատողերն ու սկզբնատառերը կարմիր թանաքով։* — *Լուսանցազարդք՝ խորաններն էջ* 1 *ա*, 75 *ա*, 181 *ա խունացած*։ — *Կազմ՝ կաշեպատ տախտակ*

*առանց կապիճների ։ — Մագաղաթեայ պահպանակ՝ սկիզբէն եւ վերջէն մէկ մէկ թերթ · Մամբրէ վերծանողի ճառից Ի մեծի աւուր գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յԵրուսաղէմ ։ — Հանգամանք՝ տեղ տեղ գրերն աւրուած · 73 եւ 74 թերթերը կցուած են ձեռագրին 1410 թուականին · Նորոգուած թերթերի վրայ Յակոբ Ղրիմեցու ձեռքով գրուած են Ներսէս Շնորհալու «Ամենայն չար տանջելի» հատուածի մեկնութեան թերի մասերը ։ — Թուական՝ ՉԻԵ = 1276 ։ — Գրիչ՝ Ստեփաննոս քահանայ ։*

Բովանդակութիւն ·

1· *Դաւթի փիլիսոփա Ներգինացոյ, Յառաջաբանք Սահմանաց իմաստասիրութեան* (էջ 1ա—65ա, *պրակք* Ա–ԻԱ) ։

*Սկիզբն է* (էջ 1ա)· *Որք միանգամ իմաստասիրութեան տենչան բանից եւ առ ի նմանէն [հեշտ]ութեանց ծայրիւ միայն մատին հանգիպին ճաշակեալք, ամենայն կենցաղական հող[ոց] բարեաւ մնալ ասացեալք, ողջախոհ իմն [մոլու]թեամբ առ այսոսիկ վարեալք բերին ։*

*Վերջ* (էջ 65ա)· *Արդ զգիտական զաւրութիւն զարդարէ ի ձեռն տեսականին, իսկ զկենդանականն ի ձեռն գործականին, որպէս զի զսուտ դիտութիւն ի կարեաց ընկալցուք, զի մի չար ինչ գործեսցուք ։*

*Ընդ այսոսիկ եւ առաջաբանք իմաստասիրութեան։ Դաւթի մեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ առարկութեանցն չորից Պիւռհոնի իմաստակի եւ սահմանք եւ տրամատութիւնք իմաստասիրութեան։*

2· էջ 65 ա—65 բ· *Ամենայն չար տանջելի, ոչ ոք տանջեալ անապական, ոչ ոք ապականացու անեղ· է չար ապականացու· չար ուրեմն ոչ է անեղ եւն։ Վերջ* (65 բ)· *Եւ ընդ բամբասանաւք է սատանայ, ապա ուրեմն՝ ոչ է անեղ։*

*Այս գծածք հանդիսադիր խմբոց առաջնոցն տառից տրամախոհ իմաստասէր մակացու արանց ներբողեալ ի Դաւթէ Եռամեծէ ենթադրեցաւ։*

3· էջ 65 բ—74 բ· *Մեկնութիւն բանից Դաւթի փիլիսոփայի, որ է ի կատարումն նորին տառի որ վերին սահմանացն իմաստութեան, ասացեալ Ներսէսի եղբայր կաթ· Հայոց Գրիգորիսի ուրումն՝ սիրողի իմաստութեան։*

*Սկիզբ* (*էջ* 65 *բ*)· *Զխնդիր հոգեւորական հաւատով եւ սիրով հայցողաց պարտ է տալ յաւժարութեամբ ըստ հրամանին Տն՝ թէ որ խնդրէ ի քէն տուր։ Վերջ* (*էջ* 74 *բ*)· *Այլ մեք զի ունիմք զայսորիկ շնորհեալ յԱյ գերագոյն քան զանմարմնոցն յառնել ի մեռելուենէ հոգւոց խոստովանութ եւ ապաշխարութ եւ Քի Այ յուսոյն մերոյ եւ Երկրպագւի յաւիտեանս ամէն։*

4· 75 ա—89 ա· — Ներածութիւն Պորփիւրի իմաստասիրի·

Լուսանցքների վրայ· ծանօթութիւններ բոլոր գրով բայց այլ գրչէ։ Սկիզբն է (էջ 75 ա)· Ելոյր հարկաւորի, Քրիսաւորիէ, եւ յառս Արիստոտէլի Ստորոգութեցն վարդապետաւթի, գիտել՝ զի՞նչ սեռ եւ զի՞նչ տարբերութի, զի՞նչ տեսակ, զի՞նչ յատուկ եւ զի՞նչ պատահումն եւ ի սահմանացն բացատրութի...

Վերջ (էջ 89 ա)· բայց են եւ այլք հասարակութիւք եւ յատկութիւք ասացելոցն· այլ շատ են եւ սոքայ ի մեկնութի նոցայ եւ ի հասարակութե յանդիմակացութի,

5· էջ 98 ա—157 բ· Դաւթի փիլիսոփայի Ներգինեցոյ, Վերլուծթի ի Ներածութի Պորփիւրի (պրակք ա—իթ + Յաղագս հանրականաց սեռից եւ տարբերութց)։

Լուսանցքների վրայ նօտր գրով մեկնութիւններ եւ նկատողութիւններ։

Սկիզբն է (էջ 89 ա)· Հանդերձեալք հանդերձ Ավ սկիզբն առնել առաջիկայ շարադրութես, զսովորականն պատմողաց խնդրել զգլուխս ը գոլ թուով խնդրեսցուք։

Վերջ (էջ 157 բ)· Եթէ յատուկն հակադարձի տեսակի, իսկ պատահումն ոչ երբեք։

6· էջ 158 բ—175 բ· Արիստոտելի իմաստասիրի թուղթ առ Աղէքսանդրոս թգր, Պատմութիւն յաղագս աշխարհի։

Սկիզբն է (էջ 158 բ)· Իսկ բազում ան-

զամ ինձ ածային ինչ եւ բարեբախտեալ ճշմարտապէս իր, ո՞վ Աղեքսանդրէ, դու թուեցաւ իմաստասիրութիւն: Վերջ (էջ 175 բ). Ստկս իրաւացն պակասելոյ՝ յԱյ պատուհասին, նոյնպէս եւ որ հանդերձեալն է բարեբաստիկ լինել եւ երանելի՝ ի նմանէ ընդունի զշնորհս:

7. էջ 175 բ. Ստագիրացի էր Արիա ի Թիւրակայ ի Քաղկիթ գաւառէ մերձ ի Յուշինթոս, որդի հաւր Նիկոմաքոսի եւ մաւրն Պեոխսդիտդայ[1]: Եւ ամբառնա ազգ նորա ի հաւրէ եւ ի մաւրէ յԱսկղեպիայ: Քսան ամս աշակերտեալ Պղատոնի ըստ որում թէ դէպ ուրեք լինէր չգալ նմա ի լսարանն՝ զայսպիսիս աղաղակ[էր] բանս Պղատոն. միտն չեկն այսր, ի բացեայ է սի-րողն ճմարտութե, խուլ է լսարանս: Վաղ-ճանի ի Քաղկիթ ամաց կ եւ երց. առաս-պելաբանի եթէ յոսկերս նորայ գտաւ պարս մեղուաց: Հանեալ զոսկերս նորա Ստագի-րացւոցն ի Քաղկիթայ՝ տարան թաղեցին ի տեղւոջն Արիստոտէլիկոսի:

Շարունակութիւնը էջ 18* բ. Սայ սկիզբն աշխարհի՝ տեսակ, նիւթ, պակասութի, տարերք դ եւ ե երրորդ արփի: Պղատոն ասէ՝ աշխարհս է յերկնէ եւ յերկրէ եւ որ ի նոսա բնութիք բաղկացեալ, ի հրոյ եւ յերկրէ, յաւդոյ եւ ի ջրոյ եւ յասծոց եւ ի դիւաց եւ

---

[1] Լուսանցքում՝ Փեոխսգիտգայ:

ի մարդկանէ եւ ի կենդանեաց եւ ի տնկոց եւ ի նիւթոյ: Մովսէս մարգարէ՝ զանդունդս եւ զխաւար եւ զջուր դոլ սկիզբն աշխարհի: Պիթագորաս Մնեսարքայ որդին՝ զթիւս եւ զչափաբերութիւս եւ զյարմարութիւս: Ցաղադըս մարդասիրութե ասաց Հոմերոս. Ածքն աւտարաց նմանեալ այլաքաղաքացեաց շըրջին ի մէջ մրդկն տեսանել զմդկան զբարի եւ զչար եւ յանկանել զաշխարհիս գործն:

Պիթագոր ասաց. իցէ՞ արդեաւք սիրելոյ այլ ոք ես (՞), քան թէ ինքն:

8. էջ 176 ա.—180 բ. Արիստոտէլի Ցաղագս առաքինութեց առ Աղեկս թղ:

Սկիզբն է (էջ 176 ա). Գովելի են գեղեցիկքն եւ պարսաւելի գարշելիքն. քանզի բարեացն յառաջնեալ լինին առաքինութիւքն եւ գարշելեացն չարութիւքն:

Վերջ (էջ 180 բ). իսկ ընթհանուր չարութեան գործ եւ յատուկ եւ հետեւութի՝ ա ասացելոցդ ներհակքն՝ որք են ի պարսաւելեացն:

էջ 180 բ եւ 181 ա — Ներքեւի լուսանցքների վրայ. Ստորոգութիւք—կատալօրիաս: Ցաղագս մեկնութեան — ի պեռի էռմէնիաս: Վերլուծական — անալուտիկի: Ապացուցական — ապուդիկտիկի: Ճարաբանութի — դիալեկտիկի: Ստորասութի — կատաֆռասիս: Բացասութի — ապաֆասիս: Բացերեւական — ապաֆանսէս:

9․ էջ 181 ա—275 բ․ Ստորթիւնք Արիտ ժ, որ կոչի յունարէն Կատիլօիա։

Անթերի օրինակ Արիստոտէլի Ստորոգութեանցն մեկնութեան։ Լուսանցքների վրայ բացատրութիւններ նոտր գրով։

Սկիզբն է (էջ 181 ա)․ Հոմանունութի լինի ըստ յերկուս յեղանակս՝ ըստ պատուոյ, ըստ յեղանակի, ըստ յուսոյ, ըստ աղաւթից, ըստ կերպարանի, ըստ նմանութե եւն։

Վերջ (էջ 275 բ)․ Քանզի էր սահման սեռին, որպէս ասացաւ ղյոլովից եւ զաարբերեցելոց տեսակաւ ի ներում զինչէն ստորոգեալ։

10․ էջ 276 ա—344 բ․ Սկիզբն եւ նախադրութի գրցն որ ասի ըստ Յունաց՝ Պերիարմէնիաս եւ հայերէն՝ Յաղագս մեկնութե։ Արտագրեալ ի մեծ Հելենացոց իմաստասիրէն Արիստոտէլէ, թարքմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ Փիլիսոփայէ Ներգինացո։

Ձեռագիրս պարունակում է նաեւ 1833 թուի Վենետիկի տպագիր հրատարակութեան մէջ բաց թողած մասերը։ Լուսանցքների վրայ բացատրութիւններ նոտր գրով եւ այլ գրչէ։

Սկիզբն է մեկնութեան (էջ 276 ա)․ Ծառեցաւ մեզ երբեմն, եթէ է ա բանական իրաւղութես այսորիկ ակնկալութի առ ապացուցական չարաբանութիւնս հասանել։ Վերջ (էջ 344 բ)․ Քնգի ա ուրեք սովորեաց

*իմաստասէրս յաղագս պիտանացուին գիտութի սերմանել իւրոց լսողացն:*

11· *էջ* 345 *ա—բ· Ազիւսակ անկիւնաւոր թուերի:*

Յիշատակագրութիւնք·

1· *էջ* 88 *ա*, 175 *բ*, 188 *բ*, 190 *ա*. 260 *ա*. 332 *ա նոյն գրչէ·*

88 *ա· զստ գծ յիշ [=զՍտեփանոս գծող յիշեցէք]:*

175 *բ*, 260 *ա· զգծ ստ յիշ [=զգծող Ստեփանոս յիշեցէք]:*

188 բ· *զստ գր յիշ [=զՍտեփանոս գրիչ յիշեցէք]:*

190 *ա· զծառ ստ յիշ [=զծառայ Ստեփանոս յիշեցէք]:*

332· *զգծ ստ յիշ ի տր [=զգծող Ստեփանոս յիշեցէք ի Տէր]:*

2· *Ներսէս Շնորհալու «Ամենայն շար տանջելի» հատուածի մեկնութեան վերջում, նորոգուած* 74 *բ թերթի վրայ, նոտր գրով տարբեր գրչէ·*

*Զմեղուցլ Յակոբ վգպտս Ղրիմեցի աղաչեմ յիշել ի Տէր, ի թվիս ՊԾԹ* [=1410]:

3· *էջ* 157 *բ, Պորփիւրի Ներածութեան մեկնութեան վերջում, Սաեփանոս գրչէ·*

*Փառք ամենազաւր էին Այ որ ետ զօրութի յանգ հանել զսա:*

4· *Ներքեւում նոյն էջի վրայ Ստեփանոս գրչէ· Բնական կարգն արտաքին գրենացս*

այս է. նախ Քերականն եւ ապա՝ Սահմանքն եւ Ամ չար տանջելին, ապա՝ Պորփիւրն եւ զկնի՝ Ստորոգութիքն եւ ապա՝ Պերիարմէնիասն եւ ապա՝ Աշխարհացն եւ զկնի՝ Առաքինութեցն: Իսկ աստ որ զհետ Պորփիւրիս Աշխարհացս է եւ Առաքինութեցս կամ ի տգիտութենէ է կամ յաւրինակէն եւ կամ յերկուցն:

5. էջ 175 բ, «Սաագիրացէ էր եւն» հատուածից յետոյ, նոյն գրչէ.

Զմոլորեալս յամենայնի եւ ղանպիտանս բնաւից յերեսս անկեալ աղաչեմ յիշել ի մաքուր յաղաւթս ձեր եւ...

6. էջ 275 բ— 276 ա, ներքեւի լուսանցքների վրայ, նոյն գրչէ.

Ցայսմաւուր զփախուստ առեալ Դսղա երկիրս Կիլիկեցոց յանաւրէն բռնակալէն Իսմաէլոց, թւ ի ՉԻԵ:

7. էջ 275 բ, Ստորոգութեանց մեկնութեան վերջում, նոյն գրչէ՝ ՉՍաեփ...վ.ին որ կորուսի զհայրենին ո... քի նոյն փառս ...ին հայցեմ ժտել թաղծեալս անծին... մաքրել զմեղաց (ս)պին դառնալ յեդեմ մեզ վերսաին... ընդ ձեզ իր...ակ անձին զփառս յանվախճան յաւիտեան. թւ ՉԻԵ:

Գրերը տեղ տեղ աւրուած. խոշորացոյցի օգնութեամբ անգամ չյաջողուեց ինձ վերականգնել բնագիրը:

8. էջ 322 ա, ներքեւի լուսանցքի վրայ, նոտր գրով օտար դրչէ. Ո՞վ եղբայր, աստից

ի հետ բանքս նուրբ են եւ տեսութիւքս դժուարք եւ խրթինք· ի լուսանց գրոցս ոչ կարացի գրել լուծումն. դու լաւ հասկացողութբ կարդա:

Լուսանցքների վրայ ծանօթութիւններն ու մեկնութիւնները գրուած են նոյն գրչէ:

9· էջ 344 բ, Περὶ ἑρμηνείας երկի մեկնութեան վերջում, Ստեփանոս գրչէ·

Աւրհնեալ է Քս լոյսն հայրական եւ փառաւորեալ է սբ գալուստ նորայ որ իւրով գալստեամբ երաց մեզ դուռն կենաց եւ առաջնորդեաց մեզ քաղցրուսոյց վդթբ իւրով զճանապարհն փրկութե ոգոց մերոց որ թէպէտ քրտամբք եւ վաստակաւք հրամաեաց Տրն մեր մեզ ջանալ յայսմ աշխարհի, այլ վս առաւել փառացն է այն եւ ի պսակացն է զի ի մարմնեղէն եւ ի ծովածուփ հոգոց վերացուսցէ զմիտս մեր. մի՛ եւս բեւեռել ի սայ եւ մի՛ ի սէր սորայ եւ մի՛ յուսումն սորայ մա...կենս ինքն լինելով մեզ աւրինակ բարի յամենայնի զի (°):

11· էջ 345 բ, Ձեռագրի վերջում, նոյն գրչէ գլխաւոր յիշատակարան· Յիշատակարան գրոցս. Մշտապայծառ եռաջահեան համաբնութե եւ եզական լոյսոյն անսկիզբն եւ անկատարած գերաբնաբար բարոյն, այնմ որ ի բնաւից եղելութե առ յինքենէ յանմարմին իմանալեաց հոգեղինացն եւ նիւթական մահկանացու հոգեղինաց միշտ եւ յարաժամ նորա աւրհնութի վերառաքի փառք եւ պա–

տիւ եւ գոհութի եւ երկրպագութի այժմ եւ....:

Արդ ես սուտանուն քհ ըստ մանկական անհաստատ յածման խորհրդոց ըմբռնեցա ի սէր այսմ անպէտ եւ պիտանի դրոցս: Ապա թէ ըստ տեսութեց իւրոց անաւգուտ թուի այլ յածայինսնս աւգտակար: Այլ աղաչեմ զձեզ ոբ հարք եւ եղբարք, որք աւգտէք ինչ ի սմանէ կարդալով կ յաւրինակ՝ մի' ի դերեւ համարել բազում աշխատութս իմ ի սմայ: Այլ ըստ ընդարձակ բարի բարուց ձերոց յիշատակի առնել արժանի զբիւր պարտուց պարտականս տէրունի:

Գրքի վերջում[1]՝

էջ ա. 1. [մի]ւսովն կանգնեցին: Եւ որք ի հաւ

2. [ատ]ոց ցրտացեալք՝ զայս երկուս աւան

3. [դ]ութիւնս մտաւք վերարկեցեն, եթե

---

[1] Հմմտ. Մամբրէի վերծանողի ճառք, Վենետիկ 1894. ի մէջ առաջ. ք գոյատեան Ցետան Մրոյ Թէոդորի Քռթենաւորի յիշատակարանէն. էջ 81. «Իւ գործեալ՝ եթէ միայն գայթակղեցի զք. մի. ոտքն կանգնեցի. եւ ի Հաւատոյ ցուցեալքն զայս երկուս աւանդութիւնս մտաք վերարկեցին. եւ առաւածայինն քեռնեան սիրոյն. Իսկ յաշակերտաւն երկուս. փառն զի բազում ունելով Թէոդորի զաշակերտն, զվերջին ոււթաշտիճաննեայ երկնադաւոր զառաքելն՝ զոր մեծն Պաւղոս յառաջադրէ. Հրեշտակք. Հրեշտակապետք. աթոռք. տէրութիւնք. պետութիւնք. իշխանութիւնք. սերովբէք. քերովբէք.»

4· [ա]ծեղէն սիրովն ջեռնուն:
5· [ի]սկ աշակերտացն երկուս, վասն զի
6· [բ]ազում ունելով Յի զաշակերտսըն, զվերին
7· [ա]շտիճանեան երկնագուպար պարսն՝
8· զոր մեծն Պաւղոս չարադասէ. հրեշտակք
9· եւ հրեշտակապետք, աթոռք եւ տրուԹիւնք
10· պետուԹիւնք եւ իշխանուԹիւնք, սե
11· րովբէք եւ քերովբէք:

էջ բ.[1] 1· Նից ի սքովբեական ի կառս:
2· Զորձս իմանալի է զմաքուր վարդապ[ետ]
3· ուԹիւնս առաքելոցն. զի անդ ի սրո[վբ]
4· եական սրբաբանուԹիւնսն նստի
ե[ւ]

---

[1] Հմմտ. Նոյնը, էջ 63. «Իսկ ձործոցն վերաբերեցելոց ի նոյն կենդանատեսակացն՝ յորոց վերայ նստի Նստեալն մարգարէս յերկինս երկնից ի քրովբէական կառսն: Զորձս իմանալի է զառաքելական վարդապետութիւնն. զի անդ ի սրովբէական սրբութեանն նստի եւ Հանգչի. իսկ աստ յառաքելական քարոզութեանն նստի եւ բազում Հրաշակերտէ. եւ զերամանակ վարդապետութեանն աւգնէ յերկինս երկնից տիրապետէ: Արդ Հասարակաբար նստաւ Աթոռն յերկինս ի վերայ քերովբէից. եւ յերկրի ի նոյն կենդանեաց:»

5. *հանգչի, իսկ աստ յառաքելական քար[ոզ]*
6. *ութեան Նստի եւ բազում հրաշս կատա[րէ],*
7. *եւ զերասանակ վարդապետութեան ու[ղղէ]*
8. *յերկին երկնից տիրապէս։*
9. *Արդ. հասարակաբար Նստի միածին*
10. *յերկին ի վերայ քերովբեից, եւ ի յերկ։*

Թ. 1884, 8 Էջմ. *մատեն.* = Մայր Ցուցակ, Թ. 1842։

*Թուղթք*՝ 116։ — *Գրութիւն*՝ 13×8,5 *սմ.*։ — *Տողք*՝ 19—24։ — *Նիւթ*՝ *ողորկ հաստ թուղթ*։ — *Գիր*՝ *հին բոլորգիր վերնագրերն ու սկզբնատողերը կարմիր թանաքով*։ — *Լուսանցազարդք*՝ *լուսանցապատկերներ սկզբնատառերին կից*։ — *Կազմ*՝ *կաշեպատ տախտակ*։ — *Հանգամանք*՝ *ձեռագիրս խիստ վնասուած է եղել. ԺԸ դարում նորոգած Մեսրոպ սարկաւագի ձեռքով։ Նորոգուած թերթեր* 1—6 *եւ* 13—19, *որոնց վրայ Մեսրոպ սարկաւագը լրացրել է ձեռագրիս թերակատար մասերը։ Սկիզբէն եւ վերջէն դատարկ թերթեր*։ — *Նորոգման թուականը*՝ ՌՃՁԲ = 1733։ — *Նորոգման տեղը*՝ *Էջմիածին*։ — *Գրիչ*՝ *Յովհաննէս*։ —

*Ստացաւղ՝ Ստեփաննոս քահանայ։ — Թուական՝ չունի, ըստ երեւոյթին՝ ԺԴ—ԺԵ դար։*

Բովանդակութիւն.

1. *Հին Ջուղայեցի Ստեփաննոս վրդպտի յաշակերտէն առ Դաւիթ անյաղթ փիլիսոփայն Հայոց (տաղ)։ Ձեռագրի սկզբում. էջերը չեն դրուած։*

*Սկիզբն է. Ի յարմատոց բղխետլ ուշէղ գեղաղարդ.*

*Հարանց մեծաց եւ երջանկաց մաքրազարդ։*

*Վերջ.*

*Սուրբ երջանիկ հայրդ աղաչեմք բարձրաձայն,*
*Բարեխաւսեա՛ առ մարմնացեալ մեծ արքայն,*
*Ցորժամ հընչէ փողն ահագին մեծաձայն,*
*Դասել ըզմեզ ուղղափառացն ամենայն։*

2. *էջ* 1*ա*—109*բ. Դաւթի փիլիսոփայի Ներքինացւոյ, Ցաղագս սահմանց* [*պրակք Ա—ԻԱ*]։

*Լուսանցքների վրայ մեկնութիւններ յետնադոյն ժամանակի։ Սկիզբն է (էջ* 1*ա*)*. Որք միանգամ իմաստութեան տենչան բանից՝ առ ի նմանէն հեշտութեանց* ևլն։

*Վերջ. Արդ՝ զգիտական զաւրութիւնսն զարդարէ ի ձեռն տեսականին, իսկ զկենդանականսն ի ձեռն գործականին, որպէս զի մի՛ զսուտ գիտութիւն ի կարծեաց ընկալցուք եւ մի՛ չար ինչ գործեսցուք։*

*Մի տող քերուած եւ ապա՝*

*Դաւթի մեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ առարկութեանցն չորից Պիհռոնի իմաստակի եւ սահմանք եւ տրամաաութիք իմաստասիրութեան։*

3․ էջ 109 բ—110 բ․ *Ամենայն չար տանջելի․ ոչ ոք տանջեալ անապական․ ոչ ոք ապականացու անեղ․ է չարն ապականացու, չար ուրեմն ոչ է անեղ* ևն։

*Վերջ* (110բ)․ *Եւ ընդ բամբասանաւք է սատանայ․ ապա ուրեմն՝ ոչ է անեղ։*

Յիշատակագրութիւնք․

1․ էջ 110 բ․ *Սահմանք իմաստասիրութեան երկի վերջում, հին բոլորգիր նոյն գրչէ․*

*Փառք ամենասբ երրորդութեանն որոց մի լ ածութիւնն եւ բնութին յաւիտեանս։*

*Զտէր Ստփոս զստացաւղ գրոցս մի մոռանայք որք վայելէք եւ արդիւնիք ի սմանէ․ զի վն այդմ յուսոյ էր ստացեալ զսա։ Ընդ նմին եւ զանպիտանս Յոհէս, զի բզում աշխատեցայ ի յուղղութի սր։*

2․ էջ 111 ա, *ձեռագրի վերջում, նոտր գրով Մեսրոպ սարկաւագի յիշատակագրութիւնը․*

*Ես նուաստ եւ անպիտանս ամենայնի, Մեսրոպ սուտ անուամբ սարկաւագ, որ ոչ առնեն արժանի զխս մեղօք մածեալս աշտ-*

կերտութի այսպիսի իմաստից, այլ ակնկալութիւնն իմ ոչ եթէ երկաւորիս էր, բայց միայն բանն տէրունեան թէ «Մի կոչէք երկրի ձեզ ուսուցիչս, այլ ուսուցիչն ձեր Քս է»։ Քանզի իմ նայելով զայս գիրքս սամանացն Դաւթի՝ ցրուեալ կայր իբր անպիտան, եւ ես բազում աշխատանօք իբար ձգեցի եւ պակասն գրեցի սակս վայելման անձին իմոյ։

Արդ՝ աղաչեմ զձեզ, ո՛վ սիրազուն եղբարք իմ, որք հանդիպիք սմա թէ ընթեռնլով, թէ օրինակելով՝ միոյ Հայր մերոյիւ վերոյ գրեցեալ զանտոհմս եւ հեղս յիշեցէք. եւ դուք յիշեալ լինիք ի Քէ կրկնակի գալստեանն եւ աշխարհական ատեանն, ամէն։ Գրեցաւ ՌՃՁԲ թւին Հայոց, ապրիլի ամսոյ ը ի Դրան մեծի վեհարանիս սբ Էջմիածնի։

3. Ձեռագրի սկզբում, դատարկ երեսներից մէկի վրայ ներքեւում, նօտր գրով օտար գրչէ.

Ցամի Տն 1761, Հայոց ՌՄԺ, պգիրս զայս ըստացյ ի վայելումն յարեւելցի Ղազար անիմաստ վրդպտիս, ամէն։ Որքան հանդիպիք եւ ընգեռնուք՝ ասասջիք Տր ողորմի։ Նոյեմբերի Ժ գրեցաւ, պատրաստական ծառայ եմ ամենից։

Թ. 1825, 6 էջմ. մատեն. = Մայր Ցուցակ, Թ. 1782։

*Թուղթք՝* 292։ — *Գրութիւն՝* 14 × 10 *սմ։.* — *Տողք՝* 26։ — *Նիւթ՝ հաստ ողորկ թուղթ։* — *Գիր՝ բոլորգիր. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր թանաքով։* — *Լուսանցազարդք՝ էջ* 2*ա*, 55*ա*, 67*ա*, 129*ա*, 212*ա*, 247*բ*, 289*բ խորաններ, լուսանցքների վրայ զարդանկարներ։* — *Կազմ՝ կաշեպատ տախտակ. կազմի վրայ կապիչների հետքեր։* — *Մագաղաթեայ պահպանակ՝ սկզբէն ու վերջէն երկ-երկու թերթ։ Ձեռագրի վերջում մագաղաթեայ թերթերը պարունակում են երկաթագիր մի հատուած՝ «Երանելոյն Յովհաննու Ոսկեբերանի Կոստանդնուպաւղսի Եպիսկոպոսի ի Մատթէոսի աւետարանէն»։* — *Հանգամանք՝ լաւ։* — *Թուական՝ չունի, ըստ երեւոյթին՝ ԺԴ—ԺԵ դար։* — *Տեղ՝ «ընդ հովանեաւ մօրս լուսոյ Ածածնիս որ կոչի Աւագ անապատ եւ սքանչելագործ սբ Նշանիս»։* — *Գրիչ՝ Ստեփանոս։*

Բովանդակութիւն.

1. *էջ* 1*ա. Դաւիթ ազգաւ հայ էր եւ Հայոց աշխարհէն եւ ուսաւ գիրս Յունաց եւ վարժեցաւ. ապա անդ սիրեցաւ ի թագաւորէն իւր ընկերաւքն եւ առաքեցան յԱթէնս ի մայրն իմաստութեան եւ ուսան*

զամենայն իմաստասիրութիւնս։ Եւ եկն յաշխարհն իւր նա զէտ ի ժամանակս մարգարէիցն յարեան սուտ մարգարէքն նմանապէս ի ժամանակս առաքելոցն սուտ առաքեալքն նաեւ ի ժամանակս իմստասիրացն սուտ իմաստունքն յարեան եւ հակառակէին ընդ ճշմարիտ իմաստասիրութիւնն։ Յորոց եւ մի էր Պիհռոն որ իւրաեաւքն հակառակէր եւ ասէր թէ ոչ է իմաստութիւն։ Յաղագս այսորիկ հանդիստնա մեծ իմաստասէրն Դաւիթ եւ ցուցանէ իմաստասիրական յեղանակաւ թէ է իմաստասիրութիւն եւ որպէս ամենայն էքս որ էացեալ են յԱստուծոյ թէ կենդանի թէ անկենդան թէ բանական թէ անբան ամենեքեան սահման ունեն եւ առանց սահմանի ոչ գտանի էութիւն նա ցուցանէ եւ իմաստութեանն սահման ապա յառաջագոյն զայն կամի ուսուցանել։

2. էջ 2ա—54ա. Սահմանք իմաստասիրութեան (պրակք Ա—ԻԱ)։

Վերջ (էջ 54ա). Դաւթի նուամեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ չորից առարկութեցն Պիհռոնի իմաստակի եւ սահմանք եւ տրամատութի իմաստասիրութե մինչեւ ցայս վայր։

3. էջ 54ա—բ. Ընդ այսոսիկ եւ առաջիկա բան իմաստնոյս։ Ամենայն չար տանջելի ոչ ոք տանջեալ անապական...։

Վերջ (54բ). Եւ ընդ բամբասանաւք է սատանայ ապա ուրեմն ոչ է անեղ։

*Այս դծածք հանդիսադիր խմբից առաջնոցն տառից տրամախոհ իմաստասէր մակացու արանց ներբողեալ ի Դաւթէ եռամեծէ ենթադրեցաւ.*

*Ապա հետեւեալ ծանօթութիւնը.*

*ԶՊորփիւրի նախերգանն ի մեկընչին ի դ. ճառն տես:*

4. էջ 55 *ա*—66 *բ*. *Ներածութի Պորփիւրի:*

5. էջ 67 *ա*—128 *ա*. *Դաւթի փիլիսոփայի Ներդինացւոյ, Վերլուծութի Ներածութեանն Պորփիւրի (պրակք Ա—ԻԹ + Ցաղագս հանրականաց սեռից եւ տարբերութեց...):*

6. էջ 128 *ա*. — ա. *Կատադօրիաս*, բ. *Իպեռիամենիաս*, գ. *Անալօտիկի*, դ. *Ապօդիկդիկի*, ե. *Դիալիֆտիկի*. ա. *Ստորասութի* (՞), բ. *Ցղգս մեկնութե*, գ. *Վերլուծական*, դ. *Ապացուցական*, ե. *Շարաբանութի*, զ. *Կատաֆասիս*, է. *Ապաւֆանսէն*, ը. *Ապօֆասիս*, թ. *Պրոֆասիս*, զ. *Ստորասութի*, է. *Բացասութի*, ը. *Բացերեւական*, թ. *Նախադասութիւն:*

7. էջ 129 *ա*—211 *բ*. — *Ստորոգութիք Արիստոտէլի ժ բան*[1]:

*Լուսանցքների վրայ ծանօթութիւններ ու բացատրութիւններ, մեծ մասամբ, տարբեր գրչէ:*

---

[1] «Ժ բան» այլ գրչէ:

Վերջ (էջ 211 բ)· — Կատարեցաւ. սկսեալս ի մէնջ գրել ժ ստորոգութեան ասացեալ յԵռամեծէն յԱրիստոտելէ որ ասի ըստ յունարէն ձայնի Կատիգորիաս, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ Ներգինացւոյ։

8· էջ 212 ա—274 ա· — Սկիզբն եւ նախադրութի գրոցն որ ասի ըստ յունաց Պերիարմենիաս եւ հայերէն Յղգս մեկնութե արտադրեալ ի մեծ իմաստնոյն Արիստոտէլէ եւ թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ։

9· էջ 274 բ—289 ա· — Արիստոտելի իմաստասիրի թուղթ առ Աղեկսանդր թագաւոր, Պատմութի յաղագս աշխարհի։

10· էջ 289 բ—292 ա· — Արիստոտէլի, Յաղագս առաքինութեց առ Աղեկսանդրոս Թագաւոր։

Յիշատակագրութիւնք·

1· էջ 128 ա· Պորփիւրի Ներածութեան մեկնութեան վերջում, նոյն գրչէ·

Փառք երրեակ անձին եւ միակ բնութեն յընդհանուր սեռից եւ տեսակաց, ստորնայնոց եւ գերակայից, անտեսակին տեսակաց եւ բարձրակատար տեսակին, որ ետ կարողութիւն հասանել յաւարտ իմաստասիրական տառիս այժմ եւ յանհուն յաւիտեանս ամէն։

2· էջ 173 բ, նոյն գրչէ·

Զգծողս յիշեա՛։

3. էջ 211 բ. Ստորոգութեանց մեկնութեան վերջում, նոյն գրչէ.

Որ ոք հանդիպիք սմա ով ղիարդ եւ իցէ Թողութի մեղաց եւ ողորմութի ի Քէ հայցեցէք աւրինակի աւողին եւ գրողին եւ տկար գրչի մեղապարտի Ստեփի եւ բուն Թարգմանողի սորա եւ մեկնողի եւ առատատուրն պարգեւաց Քս լի սրաիւ յիշողացդ եւ յիշելոցս ողորմեսցի եւ որ ամէն ասէ եւ Քի Այ մերոյ փառք ընդ Հօր եւ սբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից ամէն։

4. էջ 274 ա. Περὶ ἑρμηνείας երկի մեկնութեան վերջում, նոյն գրչէ.

Խիստ նեղացա՝ աղաչեմ չմեղադրել յուն ու ճանճն լափէ։

5. էջ 292 ա—բ, ձեռագրի վերջում, գլխաւոր յիշատակարան նոյն գրչէ.

Փառք ամենասբ Երրորդութեն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։ Փառք Հաւրն անեղի, անհասի, անբաւի եւ էացուցչի ամի։ Փառք որդւոյ ծնելոյ եւ երեւոյ (*) եւ ընդ իւր յարուցանելոյ զիւրայինսն ա։ Փառք եւ պատիւ ելողի եւ աղաաարար, աննիազ, անուշաբուրիչ սբ Հոգւոյն։ Փառք երեքերեւան երրորդական Անութեն եւ անբաժանելի միութեն այժմ եւ միշտ զի յորմէ եւ նովաւ եւ ի նոյն ա նմա փառք յաւիտ. ամէն։

Արդ ես մեղաւոր հողս փծուն գբիչ Ստեփա. առ ոտս ձեր անկեալ աղաչեմ որք

հանդիպիք սմա թողութի արարէք ինձ վս սղալանացս որ ի սմա զի այսչափ էր կար մեր։ Բայց գրեցի զսա յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ ա զարմից ի լաւ եւ յընտիր աւրինակէ։

Արդ որք աւգտեալ ի սմանէ շահեսցին յիշատակեսցեն առաջի զենլոյն Քի... եւ զրաբունապետն Գրիգոր որ զաւրինակն շնորհեաց եւ զամբարեալ իմաստութի մտաց իւրոց քաղցրութբ եւ հեղաւրէն արբուցանէ սպասաւորացն բանի զոր տացէ Նմա Աստուած զտրիտուր փոխարինին Նա եւ ըզԳէորգ վանական քհնայ որ զօրինակն վդն իւր հոյն (*) երետ. յիշեսջիք եւ զկուսակրաւն քհն Հայրապետ որ աւգնական եղեւ մեզ ի թղթիս կոկելն։ Այլ եւ զհամաւրէն համշիրակ եղբարքս, որք կան յընթերցումն Ածեղէն տառից եւ իմաստութե առ ոտս պատուական հանճարայեղց րաբունապետիս Գրիգորի եւ աւգնական եղեն մեզ ի յուղղելն զսա։ Եւ զտառապեալ անձն իմ զմեղսաներկ զնախասեալ գրողս եւ ծնօղսն իմ աղաչեմ յիշել եւ զամենեսեան որ աւգնական եղեն մեզ ի գրելն սորա նաեւ զառաջին իմաստասէր վարդապետս որ բազում աշխատեցան ի սա։

Արդ գրեցաւ սա ընդ հովանեաւ մօրս լուսոյ Ածածնիս որ կոչի Աւագ անապատ եւ սքանչելագործ սբ Նշանիս։

### Թ. 1894, 18 Էջմ. մատեն. = Մայր ցուցակ Թ. 1852.

*Թուղթք՝* 326։ — *Գրութիւն՝* 12×8 *եւ* 13×9 *սմ.*։ — *Տողք՝* 24—29։ — *Նիւթ՝ հաստ ողորկ թուղթ*։ — *Գիր՝ բոլորգիր. վերնագրերն ու սկզբնատառերը կարմիր թանաքով*։ — *Կազմ՝ կաշեպատ տախտակ*։ — *Հանգամանք՝ բաւարար*։ — *Թուական՝ չունի, ըստ երեւոյթին ԺԵ—ԺԶ դար*։ — *Գրիչ՝ Գրիգոր եւ Տրխտուր*։

Բովանդակութիւն.

1. *էջ* 2*բ*. — *Ցանկն է վասն այս արտաքին գրքիս այսմիկ*։

*Նօտր գրով օտար գրչէ*։

2. *էջ* 3*ա*—51*բ*. — *Սահմանք իմաստասիրութե*։ *Սոյն վերնագիրը յետոյ ուղղուած է օտար գրչէ այսպէս. Գաւթի փիլիսոփայի Ներգինացւոյ յղգս Սահմանց իմաստասիրութե* (*պրակք Ա—ԽԱ*)։

*Սկիզբն է* (*էջ* 3*ա*). — *Որք միանգամ իմաստասիրութե աենչան բանից եւ առ ի նմանէ հեշտութեց ծայրիւ միայն մատին հանդիպլին ճաշակեալք*...։ *Վերջ* (*էջ* 51*բ*). — *Որպ զի մի՛ զսուտ գիտութի ի կարծեաց ընկալցուք զի մի չար ինչ գործեսցուք*։ *Գաւթի եռամեծի եւ անյաղթ փիլիսոփայի ընդդէմ չորից առարկութեցն Պիհռոնի*

իմաստակի եւ սահմանք եւ տրամատութի իմաստասիրութե մինչեւ ցայս վայր։

3. էջ 51 բ—52 ա. Ընդ այսոսիկ եւ առաջիկա բան իմաստնոյ։ Ամ չար տանջելի. ոչ ոք տանջեալ անապական. ոչ ոք ապականացու անեղ...։

Վերջ (էջ 52 ա). — Եւ ը բամբասանաւք է ստոյ, ապ ուր ո՛չ է անեղ։

4. էջ 53 ա—63 բ. — Ներածութի Պորփիւրի։

5. էջ 63 բ—120 բ. — Դաւթի փիլիսոփայի Ներգինացւոյ, Վերլուծութի Ներածութեն Պորփիւրի։ (Պրակք Ա—ԻԹ + Ցղղս հասարակաց սեռից եւ տարբերութեց առջկ տեսութի)։

6. էջ 121 ա—130 բ. — Մեկնութի բանից Դաւթի փիլիսոփայի, որ ի կատարումն նորին տառի որ վս սհմնաց իմաստասութե, ասացեալ Տն Ներսիսի Կթկի Հայոց ի խնդրոյ ումեմն Ստեփաննոսի սիրողի իմաստութե։

Սկիզբն է (էջ 63 բ). — Զխնդիր հոգեւորական հաւատով եւ սիրով հայցողաց պարտիմք տալ յօժարութբ ըստ հրամանի Տն...։

Վերջ (էջ 130 բ). — Այլ մեք ղի ունիմք զայսոսիկ շնորհեալ յԱյ յառնել ի մեռելութենէ հոգւոյ խոստովանութբ եւ արտասուօք՝ գոհութի շնորհողին մատուցուք եւ

փառք այժմ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն։

7. էջ 131 բ. — Ցուցարէն իմաստասիրական κατηγορία եւ այլ բառերի թարգմանութիւնք օտար գրչէ եւ մի հատուած՝ «Զի՞նչ է պատճառ ուղղաձեւ գոլոյ մդոյս...։

ա. Կատալօրիաս. Իպեաւիամէնիաս. Անալօտիկի. Ապօդիկտիկի. Դիալիֆաւիկի։ Կատալօրիաս. Իպեռիամէնիաս. Անալօտիկի. Ապօղիկաիկի. Սառրսգութիք. Ցադմեկնութե. Վերլուծական. Ասացուցական. Դիալիֆաւիկի. Կասաֆասիս. Ապովասէս. Ապոֆանսէս. Գրոտա[սիս]. Շարաբանութի. Սառրասութի. Բացասութի. Բացերեւական. Նխդութի.։

բ. Զի՞նչ է պատճառ ուղղաձեւ գոլոյ մդոյս. ըստ տարակոյս երիւք լուծանի՝ կմ գրոց վկութբ կմ բնական քննութբ կ մտաց տեսութբ։ Գիրք ասէ թէ ուղիղ է Տր Ած մեր եւս եւ թէ արար Ած զմդն ի պատկեր իւր՝ այսինքն ուղիղ. եւ ըստ բնականին զի ըստ կենդանիքդ անհաւասար ունին զտարերքդ որպ թռչունք զօդոյ մասն առաւել եւ ձկունք՝ զջուր եւ այլք զերկիր, իսկ մդ հաւասար ըստ Նիւսացոյն եւ զհրոյ մասն հոլով քան զայլոցդ զի նոքա պակաս ունին եւ հուրն վերաշարժ է որ միշտ ի վեր կու ձգըտեցնէ եւ ուղիղ կազմէ ընդ իւր զայլ տարերսդ։ Իսկ ըստ տեսութե զի որպ կաղպար

*որ զինչեւէ նիւթ ի վր իւր ձեւոյն կու կերպացնէ որպ եւ ինքն է նմանապ հոգին բանական որպ կաղպար է եւ զնիւթ մրինն ի յարգանդ մօրն ի վր իւր կու անձնաւորէ ու տպացնէ որպ տեսանեսդ ուղղակի եւ ի վրհայեաց. եւ օրինակ քեզ որ զինչ ախտ որ կրէ հոգին որ է կաղպար նա կու ցուցանէ ի մրմինն որպ տրտմութի, բկութի, հպարթի, ցանկութի:*

8. *էջ* 132 *ա*—217 *ա*. — *Ստորոգութիք Արիստոտէլէ* (մեկնութիւն):

*Սկիզբն մեկնութեան (էջ* 132 *ա*).— *Հոմանունութի լինի ըստ երկուս յեղանակս ըստ պատահման կամ մտածութի. մտածութի ըստ պատուոյ, ըստ յիշատակի, ըստ յուսոյ, ըստ աղօթից, ըստ կերպարանի, ըստ նմանութե:*

*Վերջ (էջ* 217 *ա*). — *Քզի էր սահման սեռին որպ ասացաւ գյոլովից եւ զտարբերեցելոց տեսակաւ ի ներումզինչէն ստորոգեալ: Կատարեցաւ սկսեալս ի մէնջ գրել տասն ստորոգութիսն ասացեալ յեռամեծէն Արիստոտէլէ, որ ասի ըստ յունարէն ձայնի Կատիլօրիաս, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ Ներգինացւոյ:*

9. *էջ* 217 *ա*—280 *ա*. — *Սկիզբն եւ նախադրութի դրոցն որ ասի ըստ Յունաց Պերիարմէնիաս եւ Հայերէն Յզգս մեկնութե: Արտադրեալ ի մեծ իմաստնոյն Արիստոտէլէ, թարգմանեալ եւ մեկնեալ ի Դաւթէ:*

*Սկիզբն մեկնութեան* (էջ 217 ա)․ — *Ճառեցաւ մեզ երբեմն, եթէ է ամենայն բանական իրողութես այսօրինակ ակնկալութի առ ապացուցական շարաբանութիւն հասանել։*

*Վերջ* (էջ 280 ա)․ — *Քզի ամենայն ուրեք սովորեց իմաստասէրս յղգս պիտանացին գիտութի սերմանել իւրոց լսողացն։*

10․ *էջ* 281 *ա*—297 *բ*․ — *Արիստոտէլի իմաստասիրի Թուղթ առ Աղէքսանդրոս Թագաւոր, Պատմութի յղգս աշխարհաց․*

11․ *էջ* 297 *բ*—301 *բ*․ — *Արիստոտէլի, Յղգս առաքինութեց առ Աղէքսանդրոս Թագաւոր։*

12․ *էջ* 302 *ա*․ — *Արիստոտէլէս արագիրացի էր ի Քամշկիթ գաւառէ եւն (հմմտ․ Թ․* 1889) ։

13․ *էջ* 303 *բ*․ — *Որք յանդիմանեսցէ ի ձէնջ վս մեղաց․ գ մեղք են․ ա․ բնական․ բ․ մահուչափ․ գ․ եկական* (՞)․․․։

*Վերջ*․ — *Որպ սա մգէն թէ կամիմ զի ամ մդ կեցցէ եւ ի դիտութի ճշմարտութե եկեսցէ։*

14․ *էջ* 305 *ա*—312 *բ*․ — *Գիրք ի վեր բնութե հանրական եւ մասնական, քհի ուժեմն աշխատել Իշաւխ անուն Ցէ[սու]։*

*Սկիզբն է* (էջ 305 *ա*)․ — *Խնդիր վս բնութե այսպիսի արասցուք։ Յորժամ զոյացոյց Աձ զէսս յոչէից՝ տեղի բնակութե կազմեաց զաշխարհ ձեղուամբ երկնից յօրինել։*

Վերջ (էջ 312 բ)․ — Եւ խելքն ի լ ամէն մինչեւ ի կ–ն, եւ անտի յառաջ պակասիլ սկսանի․ եւ քի այ որ առնէ այս ի (՞) կարդամք փառք եւ։

էջ 312 բ․ — Նոյնպ եւ այլոց կենդանեաց ետ բնութիւն զպէտս պատչաճաւորս՝ գազանաց եւ թռչնոց, անասնոց եւ սողնոց։

Վերջ (էջ 313 ա)․ — Եւ ինչ ոչ գտանի յարարածս՝ զոր ոչ խնամէ բնութիւն, ըստ իւրչ իւր պիտոյից եւ զգուշութե։

15․ էջ 313 ա․ — Նորին ասացեալ վս համոց։

Սկիզբն (էջ 313 ա)․ — Յայտնի են է․ ա․ փոթոթն, բ․ թթուն, գ․ քաղցրն, դ․ դառն, ե․ աղին, զ․ կծուն, է․ անլին եւ անհամն եւ գէրն։

Վերջ (էջ 313 ա)․ — Խարտեաչ մաղձն պտրզմողս տեսանէ եւ հեծեալս։

16․ էջ 313 բ—322 բ․ — Դաւթի փիլիսոփայի, Գիրք էակաց։

Սկիզբն է (էջ 313 բ)․ — Ի քանիս բաժանի էակն կամ յո՞րս։ — Երկակի․ ի գոյացութի եւ ի պատահումն։

Վերջ (էջ 322 բ)․ — Եւ այլք այսպիսիք դնելի է բան անսահմանի ենթադատելով ճշդակչիւ։

17․ էջ 322 բ—324 բ․ — Նկատումն Արիստոտէլի։

Սկիզբ (էջ 322 բ)․ — Ուսուցանէ մեզ ի

*բանալսութեցն այնոցիկ, որ հասարակաց բնականաց գոյանան են:*

Վերջ (էջ 324 բ)· — *Եւ այսք ըողք որք ոչ ումեք այլոց արարածոց բնաւորեցաւ պատշաճիլ, ըց միայն միայնում Այ, եւ Նմա միայն տալ է պաշտօն Քի, եւ Նմա փառք յաւիտեանս ամէն:*

18· էջ 324 բ—326 ա· — *Բնութի է զօրութի հրամանատուի յընթանուր հոգւոյն...:*

Վերջ (էջ 326 ա)· — *Զի պատ հանճ ընդ բանականութիւնն է, որ է յէութէնէ մդոյն:*

19· էջ 326 բ· — *Հարցեր ու պատասխաններ իմաստասիրական բովանդակութիւնով: Գրերն աւրուած ու դժուար ընթեռնլի:*

## Յիշատակագրութիւնք

1· էջ 58 բ· *բնագրի գրչէ·*

*Յիչէ զԳրիգոր գրող սորայ:*

2· էջ 120 բ· *Պորփիւրի Ներածութեան մեկնութեան վերջում, նոյն գրչէ·*

*Յիշեսցիք զմեզ յաղօթս ձեր:*

3· էջ 131 բ· *Ներսէս Շնորհալու՝ «Ամենայն չար տանջելի» հատուածի մեկնութեան վերջում, նոյն գրչէ·*

*Յիշ յաղօթս ձեր զմեղուցեալ անձ իմ զՏրխտուրն· Տրն տա որ չափով որ չափէք յոլովիւք առնուցուք զփոխարէնն ամէն:*

4. էջ 131 բ. մի քանի տող ներքեւ, տարբեր գրչէ.

Զ... սարկաւագ յաղօթս յիշէ:

5. էջ 326 բ. ձեռագրի վերջում օտար գրչէ.

Քս Ած ողորմի սբ գրողին եւ գնօղին եւ կրդացողին եւ ամենայն հւտցելոց կենդանեաց եւ մեռելոց ամէն:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## Ա. Ներածութիւն:



## Բ. Դաւիթ Անյաղթին ու Էլիասին վերագրուած մեկնութիւնների հեղինակները:

Էջ

էջ



### Գ. Յունաբան հնագոյն թարգմանութիւնների երեք շրջանները։

Դ. Յաւելուած: